ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ ● 1966

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ · 1966

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ - ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание








## ԱՌԱՏՈՒԹՅԱՆ ՀՈՒՍԱԼԻ ԵՐԱՇԽԻՔԸ

Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը ինդուստրիալ-ագրարային հզոր տերություն է: Այն հզոր է իր պետական-հասարակական կարգով, ժամանակակից կարգացած արդյունաբերությամբ, առաջավոր գյուղատնտեսությամբ, հզոր է հերոսական, միաձույլ ժողովրդով, որը մեր կուսակցության ղեկավարությամբ կերտում է իր փայլուն ապագան՝ կոմունիստական հասարակությունը:

Սովետական երկիրն ունի անսպառ բնական հարստություններ, աշխարհում ամենաշատ հողերը, որոնք պիտանի են գյուղատնտեսական կուլտուրաների աճեցման համար: Իսկ հողը, գյուղատնտեսական արտադրության հիմնական միջոցն է, երկրի ազգային հարստությունը, և ինչպես ամեն մի հարստություն, այնպես էլ հողը պահանջում է խնամք: Հողի բերքատվության բարձրացումը կախված է նրա մշակողից, նրա մեջ կենսական ուժի պահպանումից: Բնությունն այնքան առատաձեռն չէ, որ մարդիկ հեշտությամբ օգտվեն նրա բարիքներից: Լավ բերք ստանալու համար չորային գոտու հողը պետք է ջրել, ճահճոտ վայրերում՝ չորացնել, աղազրկել: Մարդը պարտավոր է միշտ տիրաբար վերաբերվել հողին, այն մաքրել քարերից, թփերից, պարարտացնել:

Վատ խնամքի, բարձիթողության հետևանքով հողը հաճախ դառնում է ուժասպառ, ոչ պիտանի: Այն չի հատուցում հողագործի ներդրած աշխատանքը: Անհրաժեշտ է անել ամեն ինչ, որպեսզի հողը մարդուն տրամադրի այն բոլոր բարիքները, որոնք անհրաժեշտ են մարդկային կյանքի համար:

Նման մտքեր է հարուցում ՍՄԿԿ Կենտկոմի վերջին պլենումի նյութերի ընթերցումը: Հայտնի է, որ մայիսի 25—27-ին կայացած այդ պլենումը քննարկեց հացահատիկային և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր ու կայուն բերքի աճեցման համար հողերի մելիորացիայի լայնորեն կարգացման հարցը և ընդունեց համապատասխան որոշում: Մայիսյան պլենումը շարունակեց և կարգացրեց մարտյան (1965) պլենումի գիծը, որին հավանություն է տվել ՍՄԿԿ XXIII համագումարը: Իսկ համագումարը, ինչպես հայտնի է, գյուղատնտեսության նոր վերելքի խնդիրը համարել է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի համար մղվող կուսակցության և ժողովրդի պայքարի կարևոր, բաղկացուցիչ մասը:

Լենինյան կուսակցությունը երկրի գյուղատնտեսության կարգացման խնդիրները դնում է իր տնտեսական քաղաքականության կենտրոնում: Կենտկոմի մարտյան պլենումից հետո, կարճ ժամանակամիջոցում մեր երկրում իրականաց-

վել են մի շարք տնտեսական և կազմակերպչական կարևոր միջոցառումներ, որոնք ուղղված են կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական հագեցվածությանը, հողագործության և անասնապահության ինտենսիվացմանը, գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածության և բարեկեցության բարձրացմանը: Այդ միջոցառումների իրականացումը նոր պայմաններ ստեղծեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ու գնումների աճի, իրենց աշխատանքի արդյունքներով կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության բարձրացման համար:

Մայիսյան պլենումի նախօրեին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը ընդունեցին հատուկ որոշում, որով գյուղատնտեսական արտելներին հանձնարարվում է 1966 թվականի հուլիսի մեկից կիրառել կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրություն (դրամով և բնամթերքով), ելնելով սովխոզների աշխատողների համապատասխան կատեգորիաների տարիֆային դրույքից: Կենսականորեն անհրաժեշտ այս միջոցառումը բացառիկ նշանակություն ունի հանրային արտադրության հետագա վերելքի և, ընդհանրապես, կոլտնտեսային կարգերի ե՛լ ավելի ամրապնդման համար:

Կուսակցության այդ հաստատուն կուրսի ճանապարհին Կենտկոմի մայիսյան պլենումի որոշումն արմատական նշանակություն ունի: Այն կուսակցության և ժողովրդի ուշադրությունը սրում է հացահատիկային և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր և կայուն բերքի ստացման համար՝ հողերի մելիորացիան լայնորեն կարգացնելու, գյուղում արտադրողական ուժերի կարգացման արմատական պրոբլեմը լուծելու վրա: Անհրաժեշտ է գործադրել բոլոր հնարավոր միջոցները, որպեսզի հողի յուրաքանչյուր հեկտարն օգտագործվի ավելի ինտենսիվ և լավագույն հատուցմամբ: «Հողի յուրաքանչյուր հեկտարի բերքատվության ըստ ամենայնի բարձրացումը,— ասված է կուսակցության Կենտկոմի մայիսյան պլենումի որոշման մեջ,— ընդհանրապես գյուղատնտեսության, և հատկապես հացահատիկի արտադրության, ավելի արագ կարգացման հիմքն է»:

Առաջին պլանի վրա դնելով երկրի բոլոր գոտիներում հողերի օգտագործման բարելավումը, նրանց բերրիությունը և հողագործության կուլտուրայի կարգացումը, կուսակցությունը գյուղատնտեսության աշխատողներին և բոլոր մասնագետներին նպատակամղում է աշխատանքային նոր սխրագործությունների: Նախատեսում է առաջիկա հնգամյակում լայնորեն կարգացնել հողերի ջրարբիացումը, մելիորացված տարածությունների արդյունավետության բարձրացումը, ամենուրեք հանդակները մաքրել քարերից, մացառներից, թփերից, բարելավել մարգագետիններն ու արոտավայրերը, հետևողական պայքար մղել հողմահարությունների դեմ:

Մելիորատիվ միջոցառումների ընդհանուր կոմպլեքսում մեծ նշանակություն կունենա դաշտապաշտպան անտառների տնկումը, լճակների և ջրավազանների ստեղծումը, ցանքաշրջանառությունների կիրառումը:

Պլենումը հատուկ նշանակություն է տալիս քիմիական մելիորացմանը՝ թթու հողերի կրայնացմանը և աղուտների գիպսացմանը, օրգանական և հանքային պարարտանյութերի առավել արդյունավետ օգտագործմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը դատապարտեց այն սխալ պրակտիկան, երբ առանձին տեղերում լավագույն հողերը հատկացվում են արտադրական և կենցաղային օբյեկտների կառուցման համար, մինչդեռ այդ նպատակով



կարելի է օգտագործել պակաս արժեքավոր գյուղատնտեսական հողատարածություններ: Բացի դրանից, ավելորդություններ են թույլ տրվում օտարման չերտերի համար հողեր հատկացնելիս, իսկ առանձին տնտեսություններ հաճախ անմշակ են թողնում բերրի հողերի տարածությունները: Հիդրոկայաններ, ջրամբարներ և այլ օբյեկտներ կառուցելիս պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում գյուղատնտեսական հողատարածությունները ջրածածկումից պաշտպանելու համար: Անհրաժեշտ է վերջ տալ նման վերաբերմունքին:

Սովետական պետությունը հողերի մելիորացման նպատակով առանձնացնում է խոշոր գումարներ, գյուղին ցույց է տալիս համակողմանի օգնություն: Միայն ընթացիկ հնգամյակում մելիորացիոն աշխատանքների իրականացման համար կառանձնացվի ավելի քան 10 միլիարդ ռուբլի, այն դեպքում, երբ 1946—1965 թվականներին պետությունը ջրատնտեսական շինարարությունում ներդրել էր 5,6 միլիարդ ռուբլի: Երկրի չորային շրջաններում ոռոգվելու է 2,5—3 միլիոն հեկտար հող:

Հողերի բարելավումը միայն ջրային և գյուղատնտեսության աշխատողների գործը չէ: Կենտկոմի մայիսյան պլենումի որոշման կատարմանը ակտիվորեն պետք է մասնակցեն նաև արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, էներգետիկները և գիտնականները: Չէ՛ որ քաղաքն է գյուղատնտեսությանը մատակարարում անհրաժեշտ մեքենաներ և տեխնիկա: Ներկա հնգամյակում, օրինակ, երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան 1.790 հազար տրակտոր, 1.100 հազար բեռնատար ավտոմեքենա և այլ տեխնիկա: Երկու անգամ կավելանա հանքային պարարտանյութերի մատակարարումը, երեք անգամ կաճի էլեկտրաէներգիայի սպառումը գյուղում: 1966—70 թվականներին արտադրական շինարարության (ներառյալ չորացման ու ոռոգման սիստեմները) և տեխնիկա ձեռք բերելու համար գյուղատնտեսության մեջ պետական կապիտալ ներդրումները կկազմեն 41 միլիարդ ռուբլի:

Վերը բերված թվերն ու փաստերը ցույց են տալիս, թե կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ինչպիսի հոգատարություն են ցուցաբերում գյուղատնտեսության կարգացման և նրա տեխնիկական հագեցվածության նկատմամբ:

Սակայն սխալ կլիներ ենթադրել, որ հողերի մելիորացիայի կարգացման համար գյուղատնտեսությանը պետության ցույց տված օգնությունը, հատուկ կայանների և կազմակերպությունների ստեղծումը, այդ հոգսից լիովին ազատում է կոլտնտեսություններին և սովխոզներին: Ընդհակառակը, Կենտկոմի մայիսյան պլենումը նշեց, որ կոլտնտեսություններն ու սովխոզները պարտավոր են ավելի մեծ չափերով զբաղվել իրենց դաշտերը խնամելու, հողերը մշակելու, հողօգտագործման մեջ պատշաճ կարգ ու կանոն սահմանելու գործով: Յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի պարտականությունն է այդ, որը պետք է կատարվի առաջին հերթին սեփական միջոցների, մեքենայացման, աշխատանքային ռեսուրսների հաշվին:

Մայիսյան պլենումի որոշումը կուսակցության և ամբողջ սովետական ժողովրդի երկարամյա գործունեության ծրագիր է: Պլենումի նշած միջոցների իրականացումը ոչ միայն մեծ բեկում կառաջացնի գյուղատնտեսության կարգացման գործում, այլև բարերար ազդեցություն կունենա արդյունաբերության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի կարգացման վրա: Հողերի մելիորացման մշակված ծրագրի իրականացումը կբարձրացնի գյուղատնտեսական բոլոր կուլ-

տուրաների բերքը: Մեծապես կավելանա հացահատիկի, մասնավորապես ցորենի, բրնձի, եգիպտացորենի արտադրությունը, կբարելավվի անասնապահության գործը: Երկիրը կապահովվի հացով և այլ գյուղատնտեսական մթերքներով, իսկ թեթև և սննդի արդյունաբերությունը՝ հումքով:

Պլենումի նախագծումների անշեղ կենսագործման համար նախ պետք է ապահովել հատկացվող կապիտալ ներդրումների առավել արդյունավետ օգտագործումը, ճիշտ որոշել կատարվող աշխատանքի հերթականությունը, ավարտել կառուցվող օբյեկտները, ստեղծել հզոր ինդուստրիալ բազա: Պահանջվում է հոգ տանել շինարարների և մելիորատորների նկատմամբ, բոլոր աշխատանքները կազմակերպել հողերի միասնական յուրացման տնտեսական կոմպլեքսով:

Անհրաժեշտ է երկրի ոչ սևահողային և ոռոգելի հողատարածության գոտու մասնագիտացված կազմակերպությունները, կոլտնտեսություններն ու սովխոզները զինել ժամանակակից տեխնիկայով, հետևել, որպեսզի այն օգտագործվի լրիվ կարողությամբ և նպատակին: Չպետք է մոռանալ նաև ոռոգելի և չորացված հողերի մասին: Պետք է վերջ տալ առանձին շրջաններում և տնտեսություններում դրանց օգտագործման ասպարեզում գոյություն ունեցող դիմազրկությանը: Վերջապես, պահանջվում է ամենուրեք, յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովխոզում ապահովել հողագործության կուլտուրայի բարձրացումը, կարգ ու կանոն մտցնել այդ կարևոր գործում:

Նախատեսված միջոցառումների իրականացման համար «Մենք պետք է ուժեղացնենք քաղաքական աշխատանքը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը պլենումում արտասանած իր ճառում,— բարձրացնենք յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր ղեկավարի, բոլոր կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, մասնագետների պատասխանատվության կզացումը հողի վիճակի, նրա բերրիության համար»: Մելիորատիվ աշխատանքի վիթխարի պլանի կենսագործումը պահանջում է, որպեսզի հենց այժմվանից մտահոգվենք մասնագետների՝ ինժեներների, հիդրոտեխնիկների, գյուղատնտեսների, մարգաբույծների, շինարարների պատրաստման և վերապատրաստման հարցով:

Այդ գործում կպահանջվեն ավելի մեծ թվով միջին որակի կադրեր՝ մեխանիկատորներ, ջրվորներ և այլ աշխատողներ: Այստեղ է, որ գյուղական կուսակցական կազմակերպությունները պետք է կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների մոտ հետաքրքրություն առաջացնեն մելիորացիայի հանդեպ, նրանց զինեն պատշաճ գիտելիքներով:

ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումը կուսակցական կոմիտեներին և սկզբնական կուսկազմակերպություններին պարտավորեցրեց անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել, որպեսզի արդյունաբերական ձեռնարկություններն ու շինարարական կազմակերպությունները անպայման կատարեն գյուղի պատվերները:

Գյուղատնտեսության բնագավառում իրականացվող նոր միջոցառումների կապակցությամբ կոնկրետ շատ բան ունեն կատարելու, հատկապես, նախագծային, գիտա-հետազոտական և կոնստրուկտորական համապատասխան ինստիտուտների, հիմնարկների կոլեկտիվներն ու կուսակցական կազմակերպությունները: Նրանց հստակ աշխատանքից է կախված գյուղատնտեսության բնագավառում կատարվող կապիտալ ներդրումների առավել արդյունավետ օգտագործման հիմնավորումը, կանխավ նախագծային և գիտա-տեխնիկական առաջադրանքների հաջող և ժամանակին կատարումը:

Կենտկոմի մայիսյան պլենումի որոշման կենսագործման ուղղությամբ մեծ



անելիքներ ունեն հանրապետության կուսակցական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները: Կենսագործելով Վ. Ի. Լենինի՝ կովկասի կոմունիստներին ուղղված նշանավոր նամակի ցուցումները, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը սովետական իշխանության տարիներին իրավամբ խոշոր աշխատանք է կատարել նոր ջրանցքներ կառուցելու, ոռոգման և հիդրոշինարարական գործի զարգացման ասպարեզում: Օգտագործելով անցած տարիների կուտակած փորձը, ավելի մեծ եռանդով պետք է ձեռնամուխ լինել ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումի նախագծած միջոցառումների իրականացմանը: Իսկ այդ գործում անելիքները շատ են:

ՀԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը անհրաժեշտ համարեց հնգամյակի ընթացքում հանրապետության ոռոգելի հողատարածություններն ավելացնել 65 հազար, 1971—1975 թթ.՝ 70—80 հազար հեկտարով: Այն խնդիր դրեց ժամանակին կատարել ջրատնտեսական շինարարության պլանները և նոր ոռոգելի հողերը պիտանի դարձնել գյուղատնտեսական արտադրության համար: Բացի դրանից, հանրապետությունում պետք է իրականացվեն կոնկրետ միջոցառումներ՝ բարելավելու իռիգացիոն կառուցվածքների և ոռոգման ցանցի տեխնիկական վիճակը, ապահովելու ջրային ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը և ջրման առաջավոր տեխնիկայի արմատավորումը:

Հանրապետությունում ջրարբի հողերը եղել և շարունակում են մնալ գյուղատնտեսական կուլտուրաների երաշխավորված ու կայուն բերքատվության աղբյուրը: Ջրարբի հողատարածության ընդարձակումն ու ռացիոնալ մշակումը մեր պայմաններում (որտեղ յուրաքանչյուր շնչին չորս անգամ պակաս վարելահող է ընկնում, քան Սովետական Միության մասշտաբով) կենսական պահանջ է: Մեր հանրապետությունում ևս ամեն տարի հսկայական միջոցներ են ծախսվում ոռոգելի տարածությունների ընդլայնման, իռիգացիոն ցանցի վերակառուցման, աղուտների, խոպանների, ավազուտների և դռերի յուրացման վրա:

Տարեցտարի ընդլայնվում են ջրաշինարարական աշխատանքները, աճում ոռոգելի վարելահողի և բազմամյա տնկարքների տակ օգտագործվող հողատարածությունները: Այս տեսակետից ուշադրության արժանի է Թալինի, Ագարակի, Էջմիածնի և մի շարք այլ սովխոզների բանվորների հայրենանվեր աշխատանքը: Սակայն մեզ մոտ ջրի օգտագործման ասպարեզում դեռևս լուրջ թերություններ կան: 1965 թվականի տվյալներով հանրապետությունում մշտական ոռոգման ցանց ունեցող ընդհանուր հողատարածությունը կազմում է 253,8 հազար հեկտար, որից իռիգացիոն եղանակով նախապատրաստված է 245,5 հազար հեկտարը: Բայց այդ հողատարածություններից ամռանը ջրով ապահովված է ընդամենը 165 հազար հեկտարը, իսկ մնացածը՝ պայմանական ոռոգելի տարածություններ են:

Իռիգացիոն եղանակով նախապատրաստված 245,5 հազար հեկտար հողատարածությունից 1965 թվականին օգտագործվել է 237,3 հազար հեկտարը: Բայց, միաժամանակ, ոռոգման ցանցի և հիդրոտեխնիկական կառուցվածքների անսարքության պատճառով դրանից 16,6 հազար հեկտարը չի ոռոգվել: Զգալի տարածությամբ ջրարբի հողեր գյուղատնտեսական արտադրության մեջ չեն օգտագործվում (Աբովյանի, Աշտարակի և այլ շրջաններում):

Եթե այս ամենին ավելացնենք նաև այն, որ հանրապետության բնակլիմայական պայմանները սովորաբար չորային են, պակաս են ոռոգվող հողերի ռեսուրսները, շատ դաշտեր քարքարոտ են և առանձին տնտեսությունների ղեկա-

վարներ վատ են զբաղվում դրանց մշակման հարցերով, ապա պարզ կլինի, թե ինչպիսի մեծ խնդիրներ են ծառացած կուսակցական կազմակերպությունների առջև մայիսյան պլենումի որոշումների կենսագործման առումով:

Կենտկոմի մայիսյան պլենումի փաստաթղթերում շարադրված է սոցիալիստական գյուղատնտեսության նոր վերելքի՝ գիտականորեն հիմնավորված ծրագիրը: Սովետական ժողովուրդը սրտանց հավանություն տվեց այդ ծրագրին:

Կուսակցության կենտկոմի մայիսյան պլենումի որոշումը քաղաքական և արտադրական աննախընթաց վերելքով դիմավորեցին մեր հանրապետության կոլտնտեսականները, սովխոզների բանվորները, գյուղատնտեսության մասնագետները: Ուսումնասիրելով պլենումի նյութերը, նրանք հայտաբերում են յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի ներքին ռեզերվները, նշում դրանց օգտագործման պրակտիկ ուղիները:

Գյուղատնտեսության աշխատողների այդ հայրենասիրական նախաձեռնությունն արժանի է ամենայն խրախուսանքի և պաշտպանության: Առանց սխալվելու կարելի է ասել, որ մեր հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզներն ունեն զարգացման մեծ հնարավորություններ: Մելիորացիայի հետևողական իրականացմամբ նրանք կարող են շեշտակիորեն բարձրացնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը և, դրա հետ միասին, կգալիորեն ընդարձակել օգտագործվող հողատարածությունները:

Կուսակցության քաղկոմները, շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները կոչված են կոլտնտեսականներին, սովխոզների բանվորներին, գյուղատնտեսության մասնագետներին, բոլոր աշխատավորներին լուսաբանելու Կենտկոմի պլենումի առաջադրած մեծ խնդիրները, կազմակերպական և քաղաքական անհրաժեշտ գործունեություն ծավալելու նրանց շրջանում: Պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքի ընթացքում պետք է ցույց տալ, որ ներկայումս հողի մելիորացումը դարձել է կայուն գյուղատնտեսական արտադրություն ստեղծելու հրատապ խնդիր, որի լուծումը մեծապես կախված է հանձնարարված գործի նկատմամբ մեր յուրաքանչյուր աշխատողի բարեխիղճ վերաբերմունքից:

Միաժամանակ կուսակցական կազմակերպությունները ուշադրությամբ պետք է ունկնդրեն մասսաների ձայնին, օգտագործեն մայիսյան պլենումի որոշման կապակցությամբ նրանց շրջանում առաջացած արտադրական և քաղաքական աննախընթաց ակտիվությունը՝ գյուղատնտեսական ընթացիկ աշխատանքները ժամանակին և բարձր որակով կատարելու, նոր հնգամյակում սկսված սոցիալիստական մրցությունն էլ ավելի լայն ծավալելու համար:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

Գյուղատնտեսության բնագավառի գլխավոր խնդիրն է՝ կգալիորեն ավելացնել հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունը բնակչության սննդամթերքների և արդյունաբերության գյուղատնտեսական հումքի պահանջմունքներն ավելի լավ բավարարելու նպատակով: Այդ խնդրի լուծման հիմքը պետք է լինի ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թվականի) պլենումի մշակած տնտեսական միջոցառումների սիստեմի հետևողական իրագործումը:

*ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներից*

*Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում խոշոր դեր է վերապահված գյուղատնտեսությանը, որը պայմանավորում է ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի աճը և աշխատավորության նյութական բարեկեցության վերելքը: Հենց դրա համար էլ կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում գյուղատնտեսության զարգացմանը և այն համարում իրենց ամենաառաջնահերթ ու ամենակենսական խնդիրներից մեկը: Նրանք ձգտում են, որպեսզի մեր էկոնոմիկայի այդ կարևոր ճյուղն առաջ ընթանա առավել բարձր տեմպերով և անհրաժեշտ համամասնություն ստեղծվի արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման միջև:*

*Չնայած մի շարք դժվարություններին, երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները վերջին տարիներում և, առանձնապես, ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի մշակած արմատական միջոցառումներից հետո, անշեղորեն աճել ու զարգացել են: Անցած տնտեսական տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքը համադրելի գներով կազմեց 55,3 միլիարդ ռուբլի, որը գերազանցում է նախորդ որևէ տարվա արդյունքի արժեքը: Ընդհանրապես անցած հինգ տարում, նախորդ համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է գյուղատնտեսական մթերքների կարևո-*

րագույն տեսակների արտադրությունը: Սակայն, ինչպես նշվեց պարտիայի XXIII համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ, վերջին հինգ տարում դրանց արտադրության աճի տեմպերը ավելի դանդաղ էին, քան նախորդ հինգ տարիներին (1956—1960 թվականներին), որի հետևանքով գյուղատնտեսության բնագավառում յոթնամյա պլանի առաջադրանքները չկատարվեցին:

Բացահայտելով գյուղատնտեսության ետ մնալու հիմնական պատճառները, կուսակցության Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումը համապատասխան միջոցառումներ մշակեց սովխոզների ու կոլտնտեսությունների էկոնոմիկան համակողմանիորեն բարձրացնելու, գյուղատնտեսության զարգացման արագ ու կայուն տեմպեր ապահովելու համար: Լիովին հավանություն տալով Կենտկոմի մարտյան պլենումի մշակած տնտեսական միջոցառումների ողջ սիստեմին, ՍՄԿԿ XXIII համագումարը դրա հիման վրա սահմանեց նոր հնգամյակում գյուղատնտեսության աշխատողների առջև դրված խնդիրները, որոնք միանգամայն ռեալ են ու գիտականորեն հիմնավորված: Այդ խնդիրներն ամենայն պարզությամբ շարադրված են ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում, որոնք միահամուռ հավանության արժանացան կուսակցության և սովետական ողջ ժողովրդի կողմից:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում ձեռք բերված հաջողությունները հնարավորություն ընձեռեցին նոր հնգամյակում նախատեսել գյուղատնտեսության արտադրանքի այնպիսի աճ, որը նրան մերձեցնում է արդյունաբերության զարգացման տեմպերին: Այդ են ցույց տալիս սահմանված այն բնագծերը, որոնց մեր գյուղատնտեսությունը պետք է հասնի ընթացիկ հնգամյակում:

Հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է 1966—1970 թվականներին, նախորդ հնգամյակի արտադրության միջին տարեկան ծավալի համեմատությամբ, գյուղատնտեսական մթերքների արտադրության միջին տարեկան ծավալը մեծացնել 25 տոկոսով: Այդ նույն ժամանակաշրջանում մեր հանրապետությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության միջին տարեկան ծավալը կաճի 35 տոկոսով:

Դրան հասնելու համար կոլտնտեսությունները, սովխոզները, կուսակցական կազմակերպությունները, սովետական, պլանային ու գյուղատնտեսական օրգաններն իրենց գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացնեն փոխադարձաբար կապված կարևորագույն երկու խնդրի լուծման վրա՝ հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրության մեծացման վրա:

Այդ խնդիրներից առանձնապես վճռական նշանակություն ունի հացահատիկի արտադրության ավելացումը, որը կարևոր դեր է խաղում ինչպես գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վերելքի, այնպես էլ ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում: Այդ նպատակով էլ նախատեսվում է հացահատիկի արտադրության առավել բարձր տեմպ: Հնգամյակում հացահատիկի միջին տարեկան արտադրությունը ամբողջ երկրում, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանալու է 30 տոկոսով և 1970 թվականին հասնելու է 167 միլիոն տոննայի: Հացահատիկի արտադրությունը նշանակալից զարգանում է ստանալու Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի, կենտրոնական սևահողային



մարզերի, Պովոլժիեի, Ղազախստանի, Սիբիրի շրջաններում, ուր հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման մեծ ռեզերվներ կան:

Հացահատիկի արտադրության պրոբլեմը նախկինում «...լուծվել է հիմնականում ցանքատարածությունն ընդլայնելու հաշվին: Կոլտնտեսություններն ու սովխոզները ինչ-որ չափով այսուհետև նույնպես հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը կընդլայնեն գյուղատնտեսական հողատարածությունները և, ամենից առաջ, վարելահողերն ավելի ռացիոնալ օգտագործելու միջոցով: Բայց գլխավորն այն է, որ ըստ ամենայնի բարձրացվի հողի յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը: Այժմ սա է ընդհանրապես գյուղատնտեսության և հատկապես հացահատիկի արտադրության զարգացման տեմպերն արագացնելու վճռական պայմանը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարին, «Հայաստան» հրատարակչություն, Երևան, 1966 թ. էջ 78—79):

Ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության տեխնիկական զինվածության աճի, հանքային պարարտանյութերի օգտագործման, մելիորացիայի և ոռոգման միջոցների իրագործման, հողագործության կուլտուրայի, ինչպես նաև գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման շնորհիվ երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները հնարավորություն կունենան տարեցտարի ավելացնելու հացահատիկի համախառն արտադրանքը, նրանք ոչ միայն կկատարեն, այլև կգերակատարեն պետությանը հացահատիկի վաճառքի պլանը: Սահմանված պլանից ավելի հանձնված հացահատիկը պետությունն ընդունելու է բարձր գներով, որից կոլտնտեսությունները և սովխոզները մեծապես կշահեն:

1966—1970 թվականներին զգալի չափով կընդլայնվի նաև բամբակի, վուշի, արևածաղկի, բանջարեղենի, մրգի, խաղողի, թեյի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը: Բավական է միայն նշել, որ շաքարի ճակնդեղի տարեկան միջին արտադրությունը կհասնի 80, բամբակինը՝ 5,6—6, կարտոֆիլինը՝ 100 միլիոն տոննայի: Այդ նույն ժամանակաշրջանում մեր հանրապետության գյուղատնտեսական մթերքների հիմնական տեսակների տարեկան միջին արտադրությունը, նախորդ հինգ տարիների համեմատությամբ, կաճի հետևյալ չափերով՝ խաղողինը՝ 73,1, պտուղներինը՝ 45,6, բանջարեղենինը՝ 71, ծխախոտինը՝ 41,6 տոկոսով, խորդենունը՝ 4,2 անգամ: Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում ոռոգելի նոր հողերի բազայի վրա խաղողի այգիները կընդարձակվեն 6 հազար հեկտարով, պտղատու այգիները՝ 14 հազար հեկտարով: Խաղողի և պտղատու այգիների ընդհանուր տարածությունը կհասնի 88 հազար հեկտարի:

Հողագործական մթերքների արտադրության ավելացման գլխավոր ուղին, ինչպես նշված է ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվության բարձրացումն է: Այդ նպատակով նոր հնգամյակում մի շարք կարևոր միջոցառումներ կիրագործվեն հողագործության կուլտուրան բարձրացնելու համար: Իրագործվող միջոցառումների թվին են պատկանում հողատարածությունների ռացիոնալ օգտագործումը, ճիշտ ցանքաշրջանառության կատարումը, հացահատիկային և մյուս կուլտուրաների լավագույն սորտերի արմատավորումը, հանքային և օրգանական պա-

պարտանյութերի արդյունավետ օգտագործումը, հողմահարության դեմ մղվող պայքարը, դաշտապաշտպան անտառատնկումները և այլն։

Նկատի ունենալով բերքատվության բարձրացման ասպարեզում հանքային պարարտանյութերի խաղացած էական դերը, երկրի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների կողմից գյուղատնտեսությանը մատակարարվող հանքային պարարտանյութերը 1970 թվականին կհասնեն 55 միլիոն տոննայի։ Զգալիորեն կավելանա խտացված և բարդ հանքային պարարտանյութերի արտադրությունը։ Հնգամյակի վերջերին գյուղատնտեսությանը հանքային պարարտանյութեր կմատակարարվեն միայն գրանուլացված և չքարացող ձևերով, որոնց առավել արդյունավետությունն ակնհայտ է։ Դրա հետ միասին կընդլայնվի բույսերը հիվանդություններից և գյուղատնտեսական վնասատուներից պաշտպանելու քիմիական միջոցների ասորտիմենտը, կբարելավվի դրանց որակը։

ՍՍՀՄ-ն ունի հսկայական հողատարածություններ, որոնց արդյունավետ օգտագործումն ու բերրիության բարձրացումը խոշոր դեր կխաղան մեր հասարակության հարստությունն ավելացնելու և ժողովրդի պահանջմունքները բավարարելու գործում։ Նկատի ունենալով այդ, ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է հնգամյակում իրագործել մելիորատիվ աշխատանքների լայն ծրագիր, որը հնարավորություն կտա որոշ տեղերում պարբերաբար կրկնվող երաշտի կործանարար ազդեցությունից, որոշ գոտիներում էլ գերխոնավությունից ցանքերը փրկել և կայուն ու բարձր բերք ապահովել։

Մելիորատիվ աշխատանքների ծրագրի համաձայն հնգամյակի տարիներին չորացվելու են 6—6,5 միլիոն հեկտար ճահճուտ ու գերխոնավ հողեր. կուլտուրտեխնիկական աշխատանքներ են կատարվելու 9 միլիոն հեկտար հողատարածության վրա և կրայնացվելու են առնվազն 28 միլիոն հեկտար թթվակալած հողեր։ Այդ բոլորից բացի, չորային շրջաններում 2,5—3 միլիոն հեկտար հողեր դարձվելու են ոռոգելի։

Առանձնահատուկ նշանակություն տալով հողերի մելիորացմանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը մայիսի վերջերին (25—27-ը) քննության առավ այդ հարցը ու համապատասխան որոշում ընդունեց հացահատիկային և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր ու կայուն բերքի ստացման համար հողերի մելիորացիան լայնորեն զարգացնելու մասին։ Դա գյուղատնտեսության բնագավառի տևական ժամանակաշրջանի ծրագիր է, որը պահանջում է հսկայական ջանքեր, խոշոր կապիտալ ներդրումներ ու նյութատեխնիկական միջոցներ։ Այն հիմնված է գիտության ու պրակտիկայի տվյալների, մեր էկոնոմիկայի ներկայիս ռեալ հնարավորությունների վրա։ Այդ ծրագրի իրագործումը նոր, խոշոր քայլ կլինի կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրողական ուժերի հետագա զարգացման ուղղությամբ և մեծ չափով կնպաստի կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը։

Հողերի մելիորացիան մեծ նշանակություն ունի նաև մեր հանրապետության համար։ Քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1966 թ.) պլենումի արդյունքները, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի օրերս տեղի ունեցած պլենումը համապատասխան որոշում ընդունեց հանրապետությունում հացահատիկային ու գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բարձր ու կայուն բերքի ստացման համար հողերի մելիորացիան լայնորեն զարգացնելու մասին։



ՀԿԿ Կենտկոմի պլենումը նշեց, որ վերջին տարիներս հանրապետությունում ոռոգվող հողատարածություններն ընդարձակելու և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը որոշ չափով ավելացնելու հետ միասին, անբավարար են իրագործվել ջրովի հողատարածությունների ընդարձակման և դրանց արդյունավետ օգտագործման առկա հնարավորությունները։ Հանրապետության շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում թույլ են տրվում ոռոգելի ջրերի մեծ կորուստներ, լուրջ պայքար չի տարվում հողմահարության դեմ, վատ է պահպանվում ու օգտագործվում հողային ֆոնդը։ Այդ բոլորից բացի, դեռևս ցածր է ոռոգվող հողերի մշակման կուլտուրան ու բերքատվությունը, որի հետևանքով էլ 1965 թվականին հանրապետությունում ջրարբի հողերի յուրաքանչյուր հեկտարից հացահատիկային կուլտուրաների միջին բերքը կազմել է 16,0 ցենտներ, բանջարեղենինը՝ 178, կարտոֆիլինը՝ 69, խաղողինը՝ 56,8, բազմամյա խոտաբույսերինը՝ 50 ցենտներ։

Գյուղատնտեսական կուլտուրաների բարձր և կայուն բերք ապահովելու նպատակով ՀԿԿ Կենտկոմի պլենումը որոշեց ընթացիկ հնգամյակում հանրապետությունում ոռոգելի հողերն ավելացնել 65.000, իսկ 1971—1975 թվականներին՝ 70—80 հազար հեկտարով։ Բացի այդ, պլենումը միջոցառումներ նշեց եղած ոռոգման ցանցը բարելավելու և կատարելագործելու, 1966—1970 թվականներին 130 հազար հեկտար արոտավայրեր ջրարբի դարձնելու, 47 հազար հեկտարը խոտհարքների վերածելու և 40 հազար հեկտարը բարելավելու համար։

●

ՆԵՐԿԱ հնգամյակում զգալի չափով աճելու է նաև անասնապահական մթերքների արտադրությունը։ Անասունների գլխաքանակն ու թռչունների քանակը ավելացնելու և դրանց մթերատվությունը բարձրացնելու միջոցով, 1966—1970 թվականներին մսի տարեկան արտադրությունը կհասնի 11 միլիոն տոննայի (1961—1965 թվականներին միջին հաշվով եղած 9,3 միլիոն տոննայի դիմաց), կաթինը՝ 78 միլիոն տոննայի (65 միլիոն տոննայի դիմաց), ձվինը՝ 34 միլիարդ հատի (29 միլիարդ հատի դիմաց)։

Նախատեսված չափով անասնապահական մթերքների արտադրությունն ապահովելու համար, ամենից առաջ, ընդարձակվելու է կերի բազան։ Կավելացվի կերի այնպիսի կուլտուրաների արտադրությունը, որոնք տեղական պայմաններում հնարավորություն են տալիս աշխատանքային և նյութական նվազագույն ծախսումներով հողատարածության մեկ միավորից ստանալու առավելագույն քանակությամբ կեր։ Միջոցառումներ կիրագործվեն բնական կերահանդակների և մշակովի արոտավայրերի արդյունավետությունը բարձրացնելու համար։

Դրանց հետ միասին, հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներով պահանջվում է «լիարժեք համակցված կերի և սպիտակուցավիտամինային հավելարաժինների, մսա-ոսկրալյուրի, արնալյուրի և ձկնալյուրի արտադրությունն ավելացնել առնվազն երկու անգամ։ 1970 թվականին գյուղատնտեսությանը մատակարարել 800—900 հազար տոննա կերի խմորիչ, արտադրել 2—2,5 միլիոն տոննա խոտալյուր.

կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահությանն ավելի լրիվ բավարարել սպիտակուցներով հարուստ կերերով, անհրաժեշտ ամինաթթուներով, միկրոտարրերով, վիտամիններով, հանքային կերով, ինչպես նաև կերի սննդանյութի կորուստները կանխող տարբեր կոնսերվանտներով»։

Հանրային անասնապահության արդյունավետությունը բարձրացնելու նպատակով կիրականացվեն այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են ինտենսիվ կաթնային և մասնագիտացված մսատու անասնապահության ու արդյունաբերության հիման վրա ապրանքային թռչնաբուծության զարգացումը, բարձրարժեք տոհմային անասունների ճիշտ աճեցումն ու լավագույն օգտագործումը, անասնապահական ֆերմաների աշխատանքների մեքենայացումը և այլն:

Գյուղատնտեսությունն առավել արագ տեմպերով զարգացնելու և նախատեսված չափով հողագործական ու անասնապահական մթերքներ արտադրելու համար անհրաժեշտ է կոլտնտեսություններին ու սովխոզներին մատակարարել մեծ քանակությամբ տեխնիկա և լայնորեն ծավալել արտադրական շինարարությունը: Դրանք պահանջում են մեծ միջոցներ, առանց որի հնարավոր չէ հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը: Ահա թե ինչու 1966—1970 թվականներին արտադրական շինարարության և տեխնիկա ձեռք բերելու համար պետությունը գյուղատնտեսությանը հատկացնելու է 41 միլիարդ ռուբլի: Դա գրեթե երկու անգամ ավելի է, քան նախորդ հինգ տարում այդ նպատակով կատարված հատկացումները:

Պետության կողմից այդպիսի խոշոր կապիտալ ներդրումներից բացի, կոլտնտեսություններն իրենց տնտեսության ընդլայնման համար կներդնեն մոտավորապես 30 միլիարդ ռուբլի: Այսպիսով հինգ տարվա ընթացքում գյուղատնտեսության մեջ ընդհանուր կապիտալ ներդրումները կհասնեն 71 միլիարդ ռուբլու: Այդ գումարի հաշվին կոլտնտեսություններն ու սովխոզները նոր տեխնիկա ձեռք բերելուց բացի, կկառուցեն անասնապահական շենքեր, արհեստանոցներ, չորանոցներ, թռչնաբուծական ֆաբրիկաներ, ջրամբարներ ու արտադրական այլ օբյեկտներ: Ինդուստրիալ կոնստրուկցիաների ու առաջադիմական մեթոդների կիրառման միջոցով գյուղում կբարձրացվի շինարարության տեխնիկական մակարդակը և կապահովվի նորակառույց օբյեկտների ժամանակին շահագործման հանձնումը:

Ընթացիկ հնգամյա պլանի դիրեկտիվներով գյուղատնտեսության արտադրական ծրագրի կատարման համար կոլտնտեսություններին ու սովխոզներին կհատկացվի ժամանակակից տեխնիկա: Նախորդ հինգ տարիների համեմատությամբ, այս հինգ տարիներին գյուղին կմատակարարվի 700 հազարով ավելի տրակտոր, 680 հազարով ավելի բեռնատար ավտոմեքենա, չորս միլիարդ ռուբլուց ավելի գյուղատնտեսական տարբեր մեքենաներ: Այդ նույն ժամանակաշրջանում հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան 8 հազար տրակտոր (263 հազար ձիաուժ քարշային կարողությամբ), 1.300 հացահատիկային կոմբայն և բազմաթիվ այլ մեքենաներ:

Ներկայումս մեր արդյունաբերությունը հացահատիկի, շաքարի ճակնդեղի, կարտոֆիլի, բամբակի, եգիպտացորենի կոմպլեքսային մշակության համար գյուղին մատակարարում է գրեթե բոլոր մեքենաները: Դրանց արտադրության ավելացման հետ միասին նախատեսված է բնական-տնտեսական տարբեր գոտիների ու մշակվող կուլտուրաների համեմատ լայնորեն արմատավորել լայնագիրկ և բազմաշար, ինչպես նաև մի քանի տեխնոլոգիական պրոցեսներ կատարող մեքենաների օգտագործումը: Առանձնապես լուրջ ուշադրություն է նվիրվելու դաշտավարության, անասնապահության և պահեստատնտեսության մեջ բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման մակարդակի բարձրացման վրա: Այդ նպատակով գյուղատնտեսությանը մատակարարվելու են առավել բեռնունակ, անցունակ ու խնայողական ավտոմեքենաներ, զգալի քանակությամբ ինքնաթափեր, ավտոամբարձիչներ և բեռնման ու բեռնաթափման այլ միջոցներ:



Այդ բոլորից բացի, լուրջ քայլեր կարվեն կոլտնտեսությունների ու սովխոզների նյութատեխնիկական սպասարկումը կատարելագործելու, ինժեներատեխնիկական ծառայությունը բարելավելու, գյուղատնտեսական տեխնիկայի վերանորոգումն ու պահեստային մասերի մատակարարումը բարձր հիմքերի վրա դնելու համար: Կարևորն այն է, որ ճիշտ կազմակերպվի գյուղատնտեսական արտադրության տեխնոլոգիան, որտեղ դեռևս քիչ թերություններ չկան: Գյուղում աշխատանքն ավելի ու ավելի է դառնում ինդուստրիալ, մինչդեռ վերջին տարիներս նվազել են մեքենատրակտորային պարկի օգտագործման շատ ցուցանիշներ, առկա է մեխանիզատորական կադրերի հոսունությունը և այլն: Ահա թե ինչու տեղական կուսակցական, սովետական, գյուղատնտեսական օրգաններից, «գյուղտնտտեխնիկայի» ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներից պահանջվում է համապատասխան միջոցառումների դիմել տրակտորային պարկի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու, տեխնիկայի նորոգման բազան զարգացնելու, մեխանիզատորական կադրերի պատրաստման գործը բարելավելու և նրանց նյութապես առավել շահագրգռելու համար:

Ինչպես արդյունաբերության, առավել ևս գյուղատնտեսության բնագավառում ամենակարևոր, ամենավճռական խնդիրներից մեկը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է: Հիմնականում դրանից է կախված ազգային եկամտի աճը և այդ հիման վրա ժողովրդի բարեկեցության բարձրացումը: Ուստի, միանգամայն բնական է այն կարևորությունը, որ հնգամյակի դիրեկտիվներում տրված է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: Այնտեղ ասված է. «Գյուղատնտեսության տեխնիկական զինվածության աճի, նրա ինտենսիվացման, աշխատանքի լավագույն կազմակերպման և գյուղատնտեսության աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման հիման վրա սովխոզներում և կոլտնտեսություններում հինգ տարվա ընթացքում աշխատանքի արտադրողականության աճը նախատեսել 40—45 տոկոս» (արդյունաբերության մեջ այն նախատեսված է 33—35 տոկոս —Վ. Գ.): Մեկ աշխատողին ընկնող աշխատանքի արտադրողականության աճի միջին տարեկան տեմպերը գյուղատնտեսության հանրային սեկտորում կկազմի մոտ 7 տոկոս՝ 1961—1965 թվականների 3,7 տոկոսի դիմաց:

Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության աճի գլխավոր աղբյուրն արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացումն է—նոր տեխնիկայի ներդրումը, մեքենաների ու սարքավորումների արդյունավետ օգտագործումը, կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման կիրառումը: Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները բոլոր հնարավորություններն ունեն այդ ճանապարհով աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքը լիովին կատարելու: Դրանով նրանք միաժամանակ կիջեցնեն գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքը և կապահովեն արտադրության բոլոր ճյուղերի շահութաբերությունը:

Գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու գործում, տեխնիկայի հետ միասին, բացառիկ կարևոր նշանակություն ունի արտադրության մեջ էլեկտրաէներգիայի

չայն մասշտաբներով օգտագործումը: Հնգամյակի դիրեկտիվներով նախատեսված է՝ գյուղատնտեսական արտադրության, ինչպես նաև գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու համար, գյուղատնտեսության մեջ հինգ տարում էլեկտրաէներգիայի սպառումն ավելացնել մոտավորապես երեք անգամ: 1970 թվականին գյուղում էլեկտրաէներգիայի սպառումը կհասնի 60—65 միլիարդ կիլովատ-ժամի. դա երեք անգամ կգերազանցի 1965 թվականի մակարդակը և 30 տոկոսով շատ կլինի, քան 1940 թվականին երկրի սպառած էլեկտրաէներգիայի քանակությունը: Այդպիսի մեծ քանակությամբ էլեկտրաէներգիան, որը հիմնականում ստացվելու է պետական էլեկտրակայաններից ու էներգասիստեմներից, առանձնապես լայն հնարավորություն կտա անասնապահական ֆերմաներում կիթը, կերի մշակումն ու մատակարարումը, գոմաղբի տեղափոխումը մեքենայացնելու և դրանով իսկ ձեռքի աշխատանքը խոշո՛ր չափով կրճատելու, որը անասնապահական մթերքների ինքնարժեքի իջեցման կարևոր գործոններից մեկն է: Կարևոր հանգամանք է և այն, որ էլեկտրաէներգիայի առատությունը պայմաններ է ստեղծում, որպեսզի գյուղական բնակչությունը մասսայաբար օգտագործի էլեկտրակենցաղային զանազան սարքեր ու ապարատներ, հեռուստացույցեր, ռադիոընդունիչներ, սառնարաններ, լվացքի մեքենաներ: Դրանց լայն մասշտաբներով օգտագործումը մեծ չափով կբարձրացնի գյուղի աշխատավորների կուլտուրական մակարդակը և կբարելավի նրանց կենսապայմանները:

Գյուղատնտեսության ետ մնալը հաղթահարելու և այն առավել բարձր տեմպերով զարգացնելու կուրս վերցնելով, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը ձգտում է բազմակողմանիորեն ամրապնդել կոլտնտեսությունների էկոնոմիկան, ավելացնել հանրային տնտեսության եկամտաբերությունը և այդ հիման վրա բարձրացնել գյուղի աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակը: Հենց այդ նպատակով էլ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է ընթացիկ հնգամյակում կոլտնտեսությունների միջին տարեկան եկամուտները, 1961—1965 թվականների միջին տարեկան եկամուտների համեմատությամբ, ավելացնել ավելի քան 40 տոկոսով, իսկ հանրային տնտեսություններից կոլտնտեսականների եկամուտները՝ 35—40 տոկոսով:

Ս ՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ժողովրդական տնտեսության զարգացման նոր հնգամյակում գյուղատնտեսության առջև դրված խնդիրները մեծ են ու հոյակապ: Դրանց լուծման համար, ինչպես երևում է վերը շարադրվածից, հատկացվում են նյութական ու տեխնիկական հսկայական ռեսուրսներ: Սակայն սխալ կլինի կարծել, որ միայն դրանցով ամեն ինչ ինքն իրեն կընթանա: Այդ գործում պակաս նշանակություն չունեն տնտեսությունների ղեկավարման ու աշխատանքի կազմակերպման կատարելագործումը, նյութական շահագրգռվածության բարձրացումը, արտադրության մեջ գիտության նվաճումների ու առաջավոր փորձի արմատավորումը, կարգապահության ամրապնդումը, կադրերի պատրաստումը, գյուղատնտեսության բոլոր աշխատողների ակտիվության ու ստեղծագործական նախաձեռնության զարգացումը և այլն. այս հարցերին ինչպես ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը, այնպես էլ կուսակցության XXIII համագումարը հատուկ ուշադրություն նվիրեցին:



Կոլտնտեսային ու սովխոզային արտադրության ղեկավարումը գիտական հիմքերի վրա դնելու և եղած ռեսուրսները խելացիորեն օգտագործելու նպատակով կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներում պահանջվում է՝ «...ապահովել գյուղատնտեսության կենտրոնացված պլանային ղեկավարման ճիշտ զուգակցումը կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական նախաձեռնության և ինքնուրույնության զարգացման հետ: *Սովխոզները փոխադրել լրիվ տնտեսական հաշվարկի և ըստ ամենայնի զարգացնել ներտնտեսական հաշվարկը կոլտնտեսային արտադրության մեջ. ընդլայնել տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների իրավունքները և բարձրացնել նրանց պատասխանատվությունը արտադրական գործունեության արդյունքների համար: Ըստ ամենայնի զարգացնել տնտեսական-օպերատիվ ինքնուրույնությունը սովխոզներում* և կոլտնտեսային արտադրության կառավարման դեմոկրատական սկզբունքները»:

Կուսակցության այդ պահանջը կատարելու համար տեղական կուսակցական կազմակերպությունները, սովետական ու գյուղատնտեսական օրգանները պետք է լուրջ օգնություն ցույց տան կոլտնտեսություններին ու սովխոզներին: Նրանք համապատասխան մասնագետների միջոցով գործը պետք է այնպես կազմակերպեն, որպեսզի տնտեսական հաշվարկը իրականացվի ճշգրտությամբ և ապահովվի տնտեսության բոլոր ճյուղերի շահութաբերությունը, կապիտալ ներդրումների, հիմնական արտադրական ֆոնդերի փոխհատուցումը:

Անհետաձգելի միջոցառում է նաև կոլտնտեսությունների ու սովխոզների մասնագիտացումն, որը հնարավորություն կտա հողը, կապիտալ ներդրումները, տեխնիկան և աշխատանքային ռեսուրսները առավել արդյունավետ օգտագործելու, հողագործական ու անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու և տնտեսությունների ապրանքային ելքը ապահովելու:

Կոմունիստական կուսակցությունը ու սովետական կառավարությունը, ինչպես նախորդ հնգամյակներում, այնպես էլ ընթացիկ հնգամյակում իրենց ուշադրության տեսադաշտում են պահում կոլտնտեսությունների ու սովխոզների համար մասնագետների ու մեխանիզատորական կադրերի պատրաստումը: Նախատեսվում է գյուղատնտեսների ու զոոտեխնիկների պատրաստման հետ միաժամանակ ընդլայնել տնտեսագետների, մեխանիկների, էլեկտրիկների, հիդրոտեխնիկների, ագրոքիմիկոսների, անասնաբուժության, բույսերի պաշտպանության և գյուղատնտեսության այլ մասնագետների պատրաստումը:

Գնալով գյուղում կստվարանա մասնագետների, մեխանիզատորների, տեխնիկական ինտելիգենցիայի բանակը: Մնում է, որ տեղական կազմակերպությունները և տնտեսությունների ղեկավարները հոգատարությամբ շրջապատեն մասնագետներին և ճիշտ օգտագործեն նրանց ուժերը: Չպետք է մոռանալ, որ զարգացման ներկա շրջանում, երբ գյուղատնտեսության մեջ աշխատանքը դառնում է արդյունաբերական աշխատանքի տարատեսակը, կոլտնտեսային և սովխոզային արտադրության մեջ լայնորեն մուտք են գործում էլեկտրաէներգիան, նոր ու բարդ մեքենաներ, քիմիան, միկրոբիոլոգիան, կիբեռնետիկան, երբ տնտեսություններում արմատավորվում է տնտեսական հաշվարկը և այլն, առանց մասնագետ կադրերի չի կարելի գործն առաջ տանել և ապահովել այն առաջադրանքների կատարումը, որոնք դրված են կոլտնտեսությունների ու սովխոզների առջև:

Կոլտնտեսային ու սովխոզային արտադրության զարգացման գործում







բարձրացվելու է գիտության դերը: Ընդլայնվելու են տեսական ու փորձնական հետազոտությունները տնտեսագիտության, կենսաբանության, ագրոտեխնիկայի, զոոտեխնիկայի, արտադրության մեքենայացման բնագավառներում: Գիտահետազոտական հիմնարկները կզբաղվեն նոր պրոբլեմների հետազոտությամբ ու մշակմամբ և կոլտնտեսություններին ու սովխոզներին հանձնարարականներ կտան արտադրության մեջ գիտության նվաճումները արդյունավետ արմատավորելու ուղղությամբ՝ պատասխանատվություն կրելով իրենց հանձնարարականների արդյունավետության համար:

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում նախատեսված խնդիրների կատարման գործում էական դեր են խաղալու գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացումը, հանրային և անձնական շահերի ճիշտ զուգորդումը: ՍՄԿԿ Կենտկոմի անցած տարվա մարտյան պլենումի որոշումներից հետո այդ ուղղությամբ իրականացված միջոցառումներն արդեն տալիս են իրենց դրական արդյունքը:

Պահպանելով և շարունակելով այդ միջոցառումների կիրառումը, կուսակցությունն ու կառավարությունը խնդիր են դնում այսուհետև ևս բարձրացնել կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը: Դրա հիմնական միջոցը կոլտնտեսությունների եկամուտների աճն է, որը հնարավորություն է տալիս ավելացնել յուրաքանչյուր կոլտնտեսականի եկամուտները՝ ելնելով կոլտնտեսության գործունեության տնտեսական ընդհանուր արդյունքներից:

Ի կատարումն նոր հնգամյա պլանի դիրեկտիվների, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը մայիս ամսին որոշում ընդունեցին «Հանրային արտադրության զարգացման ասպարեզում կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման մասին»: Այդ որոշման համաձայն, այս ամսի մեկից մտցվել է կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրություն (դրամով և բնամթերքներով), ելնելով սովխոզների աշխատողների համապատասխան կատեգորիաների տարիֆային դրույքներից: Դա զգալիորեն կնպաստի կոլտնտեսականների բարեկեցության և նրանց աշխատանքի արտադրողականության բարձրացմանը:

ՍՄԿԿ XXIII համագումարը կուսակցության Կենտկոմի հաշվետվության առթիվ իր ընդունած բանաձևում նշեց, որ «Գյուղատնտեսության արտադրության աճի նախատեսված պլանների կատարման համար անհրաժեշտ է է՛լ ավելի ամրապնդել ու զարգացնել հանրային տնտեսության կազմակերպման ինչպես կոլտնտեսային, այնպես էլ սովխոզային ձևերը», որոնց կենսունակությունը հաստատված է բազմամյա փորձով: Տարակույս չկա, որ մեր կուսակցական կազմակերպությունները, սովետական, գյուղատնտեսական օրգանները, կոլտնտեսությունների ու սովխոզների ողջ աշխատավորները պատվով կկատարեն ՍՄԿԿ XXIII համագումարի այդ պահանջը, նրա բոլոր որոշումները և նոր հնգամյա պլանի դիրեկտիվներով իրենց առջև դրված խնդիրները:

Բ. ԱՆԱՆԻԿՅԱՆ

# ՄԱՐԴՈՒ ԷՈՒԹՅԱՆ ԵՎ ՆՐԱ ՊԱՏՄԱԿԱՆ ԴԵՐԻ ՇՈՒՐՋ

ՄԱՐԴՈՒ պրոբլեմը փիլիսոփայության և սոցիոլոգիայի հնագույն և միաժամանակ մշտապես նոր ու կենսունակ պրոբլեմներից մեկն է, որը հուզել է բոլոր ժամանակների խոշորագույն մտածողներին:

Սոցիալիզմի պայմաններում մարդու պրոբլեմի նկատմամբ եղած սևեռուն ուշադրությունն ինքնըստինքյան հասկանալի է: Կոմունիստական կուսակցության ծրագիրը սովետական ժողովրդի առջև դրել է եռամիասնական պատմական խնդիր. ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան, զարգացնել ու կատարելագործել կոմունիստական հասարակական հարաբերությունները, դաստիարակել ու ձևավորել նոր հասարակարգի բազմակողմանի ու ներդաշնակ զարգացած մարդուն:

Մարդու պրոբլեմի նկատմամբ չթուլացող հետաքրքրություն են ցուցաբերում նաև արդի բուրժուական գաղափարախոսները: Եվ այդ նույնպես պատահական չէ: Այն պայմանավորված է ժամանակակից կապիտալիզմի զարգացման առանձնահատկություններով, որոնք խոր հետք են թողնում մարդու բախտի վրա: Խոսքն ամենից առաջ այն մասին է, որ իր գործունեության սոցիալ-տնտեսական պայմանների, արդի գիտա-տեխնիկական հեղափոխության, ռեակցիոն բուրժուական պրոպագանդիստական վիթխարի մեքենայի ամենօրյա, չթուլացող ներգործությամբ մարդն ավելի է կորցնում պատմության կերտողի, հասարակական-պատմական պրոցեսի սուբյեկտի իր զգացումը, և վերածվում է հասարակության զարգացման անխոս ու կամազուրկ գործիքի:

Ուրեմն արդի պայմաններում «մարդկային պրոբլեմները», մարդու բախտի հարցը ոչ միայն չեն կորցրել իրենց այժմեականությունը, այլ ընդհակառակը, դարձել են փիլիսոփայության, սոցիոլոգիայի և հասարակական մյուս գիտությունների առանցքը, որի շուրջ սուր պայքար է ընթանում գիտա-մատերիալիստական և իդեալիստական աշխարհայացքների միջև: Այդ պայքարի միջուկն են կազմում մարդու էության, նրա պատմական դերի և մի շարք այլ հանգուցային հարցերը:

## 1. ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈՐՈՆՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ռեակցիոն գաղափարախոսությունը 1930-ական
թվականներից, Կ. Մարքսի 1844 թվականի տնտեսագիտական փի-
լիսոփայական ձեռագրերի հրատարակումից մինչև օրս հնարավոր
բոլոր միջոցներով ջգնում է հակասություն գտնել վաղ շրջանի և
հասուն Մարքսի միջև, խոսում է Մարքսի հումանիզմի, նրա կող-
մից «մարդու պրոբլեմի» մշակման, որպես նրա ստեղծագործական կենսա-
գրության անցողիկ էտապի մասին, ամեն կերպ աշխատելով նրան հակադրել
Կապիտալի հեղինակին: Նման փորձերն, ինչպես այդ հիմնավոր ձևով ցույց է
տրված մեր գրականության մեջ, անհիմն են և ոչ լուրջ: Մարքսիզմն ամենից
առաջ գիտություն է մարդկային հասարակության մասին և «մարդկային պրոբ-
լեմները» մարքսիզմի ձևավորման ու զարգացման բոլոր էտապներում գտնվել
են նրա ստեղծողների ուշադրության կենտրոնում: Սակայն, ինչպես այդ խո-
բաթափանց կերպով նկատել է Վ. Ի. Լենինը, զարգացման տարբեր էտապնե-
րում, ռևոլյուցիոն գործողությունների պահանջներից ելնելով, առաջին պլան է
մղվել մարքսիզմի այս կամ այն կողմը: Անտեսել այս անվիճելի փաստը, նշա-
նակում է չըմբռնել մարքսիզմի ստեղծագործական, ռևոլյուցիոն ոգին:

Մարդ-անհատի մարքսիստական կոնցեպցիան ձևավորվել է իդեալիստա-
կան կոնցեպցիաներից, աբստրակտ անտրոպոլոգիզմից վճռականորեն խզվե-
լու ճանապարհով: Մարքսի հայտնագործած պատմության մատերիալիստական
ըմբռնման համաձայն հասարակության զարգացման վճռական, որոշիչ ուժը
արտադրությունն է: Նյութական և հոգևոր բարիքների արտադրությունը մարդ-
կության գոյության առաջին ու անկապտելի նախապայմանն է. որպեսզի ապ-
րեն, մարդիկ պետք է արտադրեն իրենց գոյության միջոցները:

Կենսագործելով նյութական բարիքների արտադրությունը, մարդիկ դրա-
նով իսկ արտադրում և վերարտադրում են իրենց կյանքը: Ահա թե ինչու «Ամ-
բողջ, այսպես կոչված համաշխարհային պատմությունը ոչ այլ ինչ է, եթե
ոչ մարդկային աշխատանքի միջոցով մարդու ծննդյան պրոցես» (К. Маркс и
Ф. Энгельс. Из ранних произведений. Госполитиздат, 1956, էջ 598):

Պատմության համար այդ հիմնարար փաստի ողջ նշանակությունն առա-
ջին անգամ գիտականորեն լուսաբանեցին Մարքսը և Էնգելսը: Այդ փաստին
լիովին համաձայն էլ պատմական մատերիալիզմը որոշում է մարդու էությու-
նը: Աշխատանքում, և ամենից առաջ, առարկայական աշխարհի վերափոխման
պրոցեսում է մարդն իրեն հաստատում որպես հասարակական էակ և հենց
արտադրական գործունեությունն է մարդկային էության գլխավոր դրսևորումը:

Իր վաղ շրջանի աշխատություններում Մարքսը նկատում էր, որ դեռևս
Հեգելն «ըմբռնեց» աշխատանքը որպես էություն և հասկացավ, որ մարդն աշ-
խատանքի արդյունք է: Հեգելը նույնպես մարդու էությունը համարում էր աշ-
խատանքը, այն գործունեությունը, որտեղ մարդն իրեն հաստատում է որպես
մարդ: Սակայն նա աշխատանքը հանգեցնում էր նրա միայն մի տեսակին՝ վե-
րացական-հոգևոր աշխատանքին, մտքի աշխատանքին: Այդ պատճառով էլ
մարդու էությունը, ըստ Հեգելի, ոգին է, ինքնագիտակցությունը: Մարդուն վե-
րածելով անմարմին ոգու, ինքնագիտակցության, փոխանակ վերջինս դիտելու



որպես մարդու հատկություն, նա մարդկային զարգացման իրական պատմա-
կան պրոցեսը վերածում է ինքնագիտակցության լինելիության. «Հեգելի հա-
մար,— գրում էր Մարքսը,—մարդկային էությունը, մարդը հավասարանշանակ
է ինքնագիտակցության» (նույն տեղը, էջ 628): Իսկ ինչ վերաբերում է մարդու
առարկայական, նյութական գործունեությանը, ապա դրանք Հեգելը համարում
էր ինքնագիտակցության պարզ օտարում, այդ ինքնագիտակցության մոմենտ-
ներից մեկը: Այս ամենից պարզորոշ երևում է, որ Հեգելի կռահումը՝ աշխա-
տանքի, որպես մարդու էության, նրա ինքնաառաջացման ակտի, վերջին հաշ-
վով ընդունում է ֆորմալ բնույթ: Այլ կերպ լինել չէր էլ կարող, որովհետև
Հեգելի մոտ ամբողջ աշխարհը կանգնած է գլխիվայր:

Հեգելի իդեալիզմին առաջին լուրջ հարվածը հասցրեց գերմանական մեկ
այլ խոշոր մտածող՝ Լյուդվիգ Ֆոյերբախը: Նա առանց վերապահության հռչա-
կեց մատերիալիզմի հաղթանակը, ընդգծելով, որ բնությունից և մարդուց դուրս
չկա ոչինչ, և այն էակները, որոնք ստեղծված են մեր կրոնական երևակայու-
թյամբ, այլ բան չեն, եթե ոչ մեր սեփական էության երևակայական արտա-
ցոլումները: Մարքսը և Էնգելսը չէին կարող չողջունել Ֆոյերբախի այս քայլը:
Սակայն նրանք միաժամանակ տեսնում էին Ֆոյերբախի դիրքերի նեղությունը
մարդու պրոբլեմի հարցում: Չնայած այն բանին, որ նա համառորեն ընդգծում
էր մարդու զգայական, բնական կողմը, բայց այնուամենայնիվ մարդու գոր-
ծունեությունը չէր դիտում որպես առարկայական գործունեություն (տե՛ս
К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, էջ 1):

Նրա մոտ, ինչպես նշում էր Մարքսը, մարդկային էությունը կարող է հաս-
կացվել միայն որպես «սեռ», որպես ներքին, համր ընդհանրություն, որը
կապում է բազմաթիվ անհատների միայն բնական կապերով: Նա հասու չեղավ
այն անվիճելի և միաժամանակ պարզ ճշմարտությանը, որ պրակտիկան ամե-
նից առաջ նյութական բարիքների արտադրությունն է, չըմբռնեց բուն մարդ-
կային գործունեությունը, որպես առարկայական գործունեություն: Այդ պատ-
ճառով էլ Ֆոյերբախը վերջին հաշվով իսկական մարդկային է համարում մի-
այն տեսական գործունեությունը:

Ինչպես անցյալում, այնպես էլ այժմ ժխտելով մարդկանց նյութական-
արտադրական պրակտիկայի առաջնային, որոշիչ դերը, իդեալիզմը սկզբունքո-
րեն չի կարող տալ մարդու և նրա աշխատանքի էության ճիշտ մեկնաբանու-
թյունը, քանի որ նա այն փնտրում է միայն ոգու, գիտակցության ոլորտում:
Մարքսիզմն, իհարկե, երբեք չի ժխտել և չի ժխտում հոգևոր աշխատանքի
կարևորությունը, երբեք էլ աշխատանքը չի հանգեցրել միայն նյութական-ար-
տադրական ֆունկցիաների կատարման: Ընդհակառակը, նա հաղթահարեց
իդեալիզմի միակողմանիությունը և առաջին անգամ գիտականորեն գնահա-
տեց հոգևոր գործունեության դերը: Դրա հետ մեկտեղ նա մարդկային մտքի
պատմության մեջ առաջին անգամ վճռականորեն ընդգծեց նյութական ար-
տադրության որոշիչ նշանակությունը, որից կախված և որով պայմանավոր-
ված են մարդու գործունեության մնացած բոլոր տեսակները: Այս փաստի ան-
վերապահ ընդունումը միայն հնարավորություն կտա ճիշտ ըմբռնել մարդու
էությունը, նրա աշխատանքի դերն ու նշանակությունը:

## 2. ԵԼԱԿԵՏԸ ԳՈՐԾՈՒՆՅԱ ՄԱՐԴԻԿ ԵՆ

Մ ԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ սոցիոլոգիայի տեսանկյունից մարդն ամենից առաջ սոցիալական էակ է, որը ձևավորվել է նրա մոտ բիոլոգիականի և սոցիալականի միասնության հիմքի վրա։ Ընդգծելով մարդու սոցիալական էությունը, մարքսիզմը երբեք էլ չի բացառում մարդու և նրա աշխատանքի բիոլոգիական բնույթը։ Վերջինս քիչ կարևոր նշանակություն չունի ինչպես մարդկային օրգանիզմի կենսագործունեության, այնպես էլ մարդկանց փոխհարաբերությունների համար։ Բիոլոգիայի տեսանկյունից աշխատանքը, օրինակ, ներվա-մկանային գործունեություն է ի հաշիվ օրգանիզմում կուտակված պոտենցիալ էներգիայի։ Աշխատանքը որպես մկանների, ներվերի և ուղեղի միասնական գործունեություն մարդու բիոլոգիական կյանքի հիմքն է, օրգանիզմի ամենախոր, կենսականորեն անհրաժեշտ պահանջը։ Որպեսզի մարդը լինի առողջ, ուժեղ, ներդաշնակ զարգացած, անհրաժեշտ է մարդկային բոլոր օրգանների, ներվա-մկանային ամբողջ սիստեմի նորմալ գործունեություն, որը հնարավոր է միայն աշխատանքում։ Ուրեմն աշխատանքը օրգանիզմի ձևավորման և զարգացման գլխավոր միջոցն է, մարդու առողջության պահպանման, ուժերի ծավալման հիմնական աղբյուրը։

Ընդգծել միայն մարդու և նրա աշխատանքի բիոլոգիական կողմը, նշանակում է կանգ առնել կես ճանապարհին, անտեսել գլխավորը, որովհետև մարդը միայն բնական էակ չէ։ «Մարդկանց,— գրում են Մարքսը և Էնգելսը,— կենդանիներից կարելի է տարբերել գիտակցությամբ, կրոնով, ընդհանրապես ինչով ցանկանաք։ Նրանք իրենք սկսում են իրենց տարբերել կենդանիներից հենց որ սկսում են արտադրել իրենց կյանքին անհրաժեշտ միջոցներ» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 3, էջ 19)։ Ահա թե ինչու մարքսիզմի կլասիկներն այնպես հուժկու ընդգծում էին, որ մեզ համար ելակետը իսկական գործունյա մարդիկ են (տե՛ս նույն տեղը, էջ 25)։

Վերոհիշյալից տրամաբանորեն հետևում է, որ մարդու մեջ գլխավորն այն չէ, թե ինչու է նա ապրում, այլ այն, թե ինչպե՞ս է ապրում, ինչպե՞ս է վերաբերում արտաքին բնությանն ու մյուս մարդկանց, ինչպե՞ս է բավարարում իր մարդկային պահանջմունքները։ Իրենց կոնկրետ բովանդակությամբ այդ հատկանիշները ձևավորվում են արդեն ոչ թե մարդու բիոլոգիական բնությամբ, այլ սոցիալական կեցությամբ։ Մարդու պատմական զարգացման ընթացքում նրա բիոլոգիական բնույթը՝ տեսակային հիմնական հատկանիշներով, համարյա մնացել է անփոփոխ, մինչդեռ սոցիալական հատկանիշներն էապես փոխվել են, ինչպես նաև լուրջ փոփոխության է ենթարկվել մարդու վարքագծում բիոլոգիականի և սոցիալականի փոխհարաբերությունը՝ հօգուտ սոցիալականի գերազանց աճի։

Գործունեությունը նյութական բարիքների արտադրության բնագավառում մարդու էության որոշիչ կողմն է ամենից առաջ այն պատճառով, որ միմիայն դրա շնորհիվ և դրա միջոցով են մարդիկ միմյանց հետ մտնում արտադրական հարաբերությունների մեջ, որոնք և կազմում են մնացած բոլոր հասարակական հարաբերությունների հիմքը։ Բացի այդ, նյութական բարիքների արտադրությունը հենց սկզբից էլ նախատեսում է մարդկանց համատեղ գործունեություն, հասարակության մեջ նրանց միավորման անհրաժեշտություն, այսինքն հասարակական մարդու գոյություն։ Մարդու մեջ ամեն մի մարդկային հատուկ է



նրան ոչ թե որպես առանձին ինդիվիդի, այլ որպես ամբողջական սոցիալական էակի, որը պատկանում է զարգացման որոշակի աստիճանի, առարկայական գործունեության պատմական տիպի, սոցիալական համապատասխան խավի կամ դասակարգի, որոշակի հասարակական ֆորմացիայի։

Այսպիսով, մարդու էության հասկացությունը վերաբերում է ոչ թե առանձին ինդիվիդին և ոչ էլ մարդկանց բնական կապերին, այլ մարդուն, որպես հասարակական ամբողջական օրգանիզմի բաղկացուցիչ մասի, հասարակական հարաբերությունների կրողի։ Մարդու էությունը, գրում է Մարքսը «աբստրակտ չէ, որը հատուկ է առանձին ինդիվիդին։ Իրականում այն հասարակական բոլոր հարաբերությունների ամբողջությունն է» (Նույն տեղը, էջ 3)։ Բնական է, ինարկե, որ այդ ամբողջության մեջ բացի տնտեսական, արտադրական հարաբերություններից մտնում են նաև հասարակական հարաբերությունների մյուս տեսակները՝ սոցիալական, քաղաքական, գաղափարական և այլն։ Վերջիններս նույնպես բնորոշում են մարդու էությունը։ Բանը, սակայն, այն է, որ դրանք չեն կազմում նրա առաջնային, որոշիչ կողմը։ Մարդու ամենախոր էությունը նրա աշխատանքային, արտադրական գործունեությունն է։

Մարդու պրակտիկ գործունեությունը, որը հանդես է գալիս աշխատանքի ձևով, մարդու և բնության միջև նյութերի փոխանակության համընդհանուր պայմանն է, մարդկային կյանքի հավերժ բնական պայմանը։ Աշխատանքի պրոցեսում մարդն իր մարմնին պատկանող բնական ուժերը, բազուկներն ու ոտքերը, գլուխն ու մատները շարժման մեջ է դնում, որպեսզի բնական նյութը յուրացնի իր սեփական կյանքի համար օգտավետ որոշ ձևով։ Մարդու և բնության միջև նյութերի փոխանակության անընդհատ զարգացումն ու կատարելագործումը, որը հասարակական կյանքի անխորտակելի օրենքն է՝ անկախ այդ կյանքի սոցիալական ու քաղաքական ձևից, համապատասխան փոփոխություններ է առաջ բերում ոչ միայն արտաքին բնության մեջ, այլև մարդկային նպատակահարմար գործունեության բնույթում, մարդու էության մեջ։ Աշխատանքի միջոցով միայն մարդը կարողացավ իրեն ենթարկել բնության շատ ու շատ ուժեր, «մարդկայնացնել» արտաքին աշխարհը՝ այն դարձնելով իր «անօրգանական մարմինը»։ Ներգործելով իրենից դուրս գտնվող բնության վրա և փոփոխելով այն, նա դրանով իսկ անընդհատ փոփոխում է և իր սեփական բնությունը։ Առանց այդպիսի պրակտիկ նպատակահարմար գործունեության նա չէր կարող զարգացնել իր բնության մեջ ննջող կարողություններն ու ուժերը և հանուն իր անհատականության ավելի լիակատար զարգացման այդ ուժերի խաղը ենթարկել իր սեփական իշխանությանը։

Միայնակ մարդը չի կարող դիմագրավել բնության ահեղ ուժերին, կենսագործել նյութերի նպատակահարմար փոխանակությունն իր և բնության միջև։ Մարդու անհատական հատկությունների ամենատարրական դրսևորումը, նրա ամենապարզ ու հասարակ գործունեությունն անգամ նախատեսում է որոշակի հարաբերություններ մյուս մարդկանց հետ։ Մարդը չի կարող անհատ լինել ինքն իրեն, մեկուսացած. նա իրեն, որպես այդպիսին, կարող է դրսևորել միայն մյուս մարդկանց հետ այս կամ այն կերպ հաղորդակցելով, որի ընթացքում հենց տեղի է ունենում անհատների մտավոր փոխհարստացումը։

Մարդուն ձևավորող սոցիալական ուժն էլ հենց այն է, որ այդ հաղորդակցման միջոցով տեղի է ունենում անհատների հասարակական փորձի, ունակությունների, գիտելիքների փոխանակում, նրանց փոխադարձ հարստացում։

վերջինս հնարավոր է դառնում միայն առարկայական գործունեության, մարդու էության օբյեկտիվացման շնորհիվ։ Լեզվի մեջ, գիտության ու արվեստի ստեղծագործություններում, բարոյական նորմերում և, հատկապես, արտադրության միջոցների մեջ համակենտրոնացվում են մարդկության լավագույն նվաճումները։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Մարդու կենսական ուժերի գործադրման ու կիրառման կենդանի պրոցեսը ոչինչ է առանց այն առարկայի, որի մեջ մարմնավորվում է այդ պրոցեսը։ Միայն առարկայական մարմնավորման, նյութական ու հոգևոր կուլտուրայի առարկայական ձևերի միջոցով է շղթայակցվում հասարակական ամեն մի կապ, պատմական պրոցեսի կապը։ Սա վերաբերում է ինչպես միմյանց փոխարինող մարդկանց սերունդներին, այնպես էլ մարդու բուն գործունեությանը։

Այնպես, ինչպես յուրաքանչյուր նոր սերունդ պատրաստի գտնում է ոչ թե իր, այլ նախորդ սերնդի ստեղծած արդյունքները, որոնք նրա համար ելակետ են ծառայում հետագա զարգացման համար, այնպես էլ մարդու գործունեության յուրաքանչյուր մոմենտը սկսվում է այն բանից, ինչը նախկինում անցել էր առարկային, մարմնավորվել նրա մեջ, ընդունել իրերի բնույթ։ Գործունեությունը չի կարող կենդանի անընդմեջ պրոցեսից չանցնել առարկայական մարմնավորման և ընդհակառակն։ Ահա թե ինչու, որպեսզի կարողանա իրագործել արտադրությունը, նոր սերունդն ամենից առաջ պետք է խորապես ըմբռնի նախորդ սերնդի էությունը, որը օբյեկտիվացել է իրերի առկա աշխարհում, իր մոտ մշակի արտադրության գոյություն ունեցող միջոցներին տիրապետելու ունակություն, յուրացնի այն իդեաները, որոնք մարմնավորված են դրանց մեջ։

Նոր սերունդը, սակայն, չի բավարարվում նախորդի ստեղծածի լոկ յուրացմամբ։ Լենինն ամենայն խորաթափանցությամբ նշում էր, որ աշխարհը չի բավարարում մարդուն և նա իր գործունեությամբ որոշում է փոխել այն։ Նոր սերունդն իր գործունեության ոլորտն է ներքաշում նախորդների ստեղծած արդյունքները, սուզվում է դրանց մեջ, շաղախվում դրանց հետ և այնուհետև վերաստեղծում, վերարտադրում է որպես իր նոր արդյունք, որի մեջ նախկին գործունեության արդյունքները թվում են վերացած։

## 3. ՄԱՐԴՆ Է ԻՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿԵՐՏՈՂԸ

ԱՅՆՔԱՆՈՎ, որքանով արտադրական, առարկայական գործունեությունն է մարդու էության գլխավոր դրսևորումը, այդքանով էլ մարդու դերը, որպես հասարակության գլխավոր արտադրողական ուժի, նրա հիմնական պատմական դերն է։ Մարքսը նշում էր, որ մարդիկ իրենք են կերտում իրենց պատմությունը, իրենք են ստեղծագործում իրենց կյանքի բոլոր ու ամեն կարգի նորմերը։ Մարդիկ իրենք են կերտում իրենց պատմությունն ամենից առաջ այն պատճառով, որ հենց իրենք են կատարում նյութական բարիքներ արտադրողի ֆունկցիան, իրենք են շարժման մեջ դնում հասարակական արտադրությունը և դրանով իսկ որոշում ամբողջ հասարակության, ամբողջ պատմության զարգացումը։ «Պատմությունը, —նշում էր Էնգելսը,— չի անում ոչինչ... Ոչ թե «պատմությունը», այլ հենց մարդը, իրական, կենդանի մարդը — ահա թե ով է անում ամեն ինչ... պատմությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ... մարդու գործունեություն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 2, էջ 102)։



Մարդկանց արտադրական, առարկայական գործունեությունը հասարակության կյանքի ու պրոգրեսի առաջին ու վճռական պայմանն է։ Սակայն թերի կլիներ այն դիտել որպես միայն մարդկանց գոյության պայման։ Աշխատանքային գործունեությունը ինչ որ ավելի մեծ բան էլ է. այն բուն արտադրողական ուժերի և, ամբողջությամբ վերցրած, հասարակության զարգացման սկզբնաղբյուրն ու վերջնական պատճառն է։ Աշխատանքի առարկան և գործիքները, որոնք մարդն օգտագործում է արտադրության պրոցեսում, արտադրողական ուժ են դառնում միայն շնորհիվ այն բանի, որ, Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, ընդգրկվում են մարդկային աշխատանքի կենդանի բոցերում։ Առանց դրան տեխնիկան կվերածվի մեռած զանգվածի, կզրկվի արտադրողական ուժերի որակից։ Աշխատանքը հենց այն կենդանի բոցը, այն կրակն է, որի բոցավառվելն էլ հանդիսանում է արտադրողական ուժերի զարգացման աղբյուրը։

Եթե համեմատելու լինենք, թե արտադրության զարգացման գործում ինչպիսի նշանակություն ունեն արտադրողական ուժերի մարդկային տարրը և արտադրության իրային միջոցները, ապա կտեսնենք, որ այս հարաբերության մեջ ևս գլխավոր, առաջատար դերը պատկանում է աշխատանքին, մարդուն։ Արտադրության միջոցները չեն կարող լինել արտադրության որոշիչ էլեմենտը հենց այն պատճառով, որ դրանք իրենցից ներկայացնում են միայն մարդկային աշխատանքի առարկայական մարմնավորումը, մարդկանց նպատակահարմար գործունեության արդյունքը։ Մարքսի կարծիքով բանվորի վարպետության և գիտելիքների կուտակումը հիմնական կուտակումն է և անհամեմատ կարևոր է, քան առկա օբյեկտիվ պայմանների կուտակումը։ «Ամբողջ օբյեկտիվ աշխարհը, «նյութական բարիքների աշխարհը»,—գրում է Մարքսը,— այստեղ էլ անցնում է ետին պլան, որպես միայն հասարակական արտադրող մարդկանց գործունեության լոկ մոմենտ, լոկ անհետացող, նորից ու նորից ստեղծագործվող դրսևորում» (К. Маркс, Теории прибавочной стоимости, ч. III, էջ 250)։

Այսպես, ուրեմն, մարդիկ են կերտում իրենց պատմությունը, կառուցում իրենց մարդկային աշխարհը և այդ անում են ոչ այլ կերպ, քան մյուս մարդկանց հետ կապի միջոցով, կառուցում են համատեղ կամ մյուսների հետ պայքարի ճանապարհով։ Այստեղից էլ հետևում է, որ իրականում ո՛չ թե մարդիկ և «հանգամանքներն» են կերտում պատմությունը, այլ միայն մարդիկ որոշակի հանգամանքներում։ Պատմական պրոցեսին մասնակցում են ոչ թե ինչ-որ վերմարդկային, ինքնուրույն, մարդկային գործունեությունից անկախ «ուժեր», այլ միայն բուն մարդկային առարկայական գործունեության ուժերը։ Հասկանալի է, իհարկե, որ գործունեությունն առանց պայմանների և առարկայական բովանդակության՝ ընդհանրապես գործունեություն չէ։ Առարկայազուրկ գործունեությունն անհնարին է, ինչպես անհնարին է շարժումն առանց շարժվող մատերիայի։ Բանը, սակայն, այն է, որ հասարակական մարդու զարգացման, մարդկային պատմության վրա ոչինչ չի ներգործում այլ կերպ, քան ներգործելով մարդու առարկայական գործունեության վրա, վերածվելով այդ գործունեության պայմանի, գործոնի։ Հասարակության մեջ ո՛չ թե իրերն են իրենք իրենց ներգործում մարդկանց վրա, այլ մարդիկ են ներգործում միմյանց և իրենց վրա՝ իրերի միջոցով։ Ահա թե ինչու Լենինն ընդգծում էր, որ այնտեղ, որտեղ բուրժուական տնտեսագետները տեսնում էին իրերի հարաբերություն-

ներ, այնտեղ Մարքսը բացահայտեց հարաբերություններ մարդկանց միջև։

Պատմությունը ցույց է տվել, որ հասարակական-տնտեսական տարբեր ֆորմացիաներում մարդկանց միջև հարաբերությունները կրել են տարբեր բնույթ։ Դասակարգային անտագոնիստական հասարակության մեջ մարդկանց միջև հարաբերությունների ո՛չ իրական բովանդակությունը և ոչ էլ ձևը չեն հանդիսանում համամարդկային։ Ընդհակառակն, ռեալ իրականության մեջ այդ կապերին բնորոշ են ոչ թե միմյանց նկատմամբ հավասար հարաբերություններ, այլ տիրապետման և ենթարկման հարաբերությունները։ Նման հարաբերությունների վրա հիմնված ցանկացած հասարակարգում, և առանձնապես կապիտալիզմի պայմաններում, մարդու էությունը, նրա ընդունակությունները դրսևորվում են ոչ թե անկաշկանդ, իրենց մարդկային բնույթով, այլ հասարակական հարաբերությունների տվյալ սիստեմի թելադրած ձևով։

## 4. ՄԱՐԴԸ ՕՏԱՐՎԱԾ ԱՇԽԱՐՀՈՒՄ

ԴԵՌԵՎՍ իր վաղ շրջանի աշխատություններում Մարքսը ցույց տվեց, որ կապիտալիստական հասարակարգում աշխատանքը, որը մարդու բուն էությունն է, ամենամարդկայինը մարդու մեջ, բնական պահանջմունքներից, որի մեջ դրսևորվում են նրա շահերն ու ձգտումները, վերածվում է օտարված աշխատանքի, հարկադրական ու ծանր բեռի։ Օտարումը նյութական արտադրության բնագավառում անխուսափելիորեն ծնում է օտարում հասարակության քաղաքական ու գաղափարական կյանքում և մարդն այստեղ, ըստ էության, վերածվում է արտադրական, քաղաքական ու գաղափարական վիթխարի սիստեմի կամազուրկ պտուտակի։

«Օտարման» տակ Մարքսն ամենից առաջ հասկանում էր անմիջական արտադրողի անջատումն արտադրության միջոցներից և այն արդյունքներից, որոնցում նա օտարել է իր մարդկային էությունը և որոնք հակակայվում են նրան որպես խորթ, նրան ճնշող ուժեր։ Իր 1844 թվականի տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում նա բացահայտեց օտարման հասկացությունը՝ ընդգծելով հատկապես երկու կողմ. 1. բանվորի օտարումն իր աշխատանքի արդյունքից. 2. օտարում բուն աշխատանքի պրոցեսում (ինքնաօտարում)։ Մարքսը բազմակողմանիորեն և խորապես բացահայտեց աշխատանքի ինքնաօտարման բովանդակությունը, որը դրսևորվում է հետևյալ կերպ. աշխատանքը բանվորի համար հանդիսանում է ինչ-որ արտաքին, նրա էությանը չպատկանող. նա իր աշխատանքում չի հաստատում իրեն, այլ բացասում է, իրեն զգում է ոչ թե բախտավոր, այլ դժբախտ. ազատորեն չի ծավալում իր ֆիզիկական և հոգևոր էներգիան, այլ հյուծում է իր ֆիզիկական բնությունը և խորտակում իր հոգին. միայն աշխատանքից դուրս է իրեն զգում իր մեջ, իսկ աշխատանքի պրոցեսում իրեն զգում է իրենից անջատված. այդ ամենի ուժով աշխատանքը կրում է ոչ թե կամավոր, այլ հարկադրական բնույթ, որը հանդիսանում է ոչ թե աշխատանքի պահանջմունքի բավարարում, այլ միայն միջոց՝ մյուս պահանջմունքները բավարարելու համար. այդպիսի աշխատանքը ինքնազոհողություն է, ինքնախոշտանգում։

Կապիտալիզմը, հակամարտ դասակարգային այդ վերջին հասարակությունը, խեղաթյուրված, գլխիվայր դրված աշխարհն է, որտեղ ոչ թե մարդն է այդ աշխարհի տիրակալը, այլ ընդհակառակն. այստեղ մարդու սեփական



ստեղծագործությունն է իշխում նրա վրա, որովհետև մարդկային հարաբերությունները և մարդու ստեղծած սոցիալական աշխարհը լիովին շրջված են։

Անտագոնիստական հասարակական հարաբերությունները խեղաթյուրում են ոչ միայն աշխատանքի պրոցեսի բովանդակությունը, այլև մարդու վերաբերմունքն իր գործունեության նկատմամբ, սուբյեկտի և օբյեկտի փոխհարաբերությունները։

Մարդն իր առարկայական գործունեությամբ ստեղծում է ուժեր, որոնք ճնշում են նրան, և որքան ավելի է բազմապատկում այդ ուժերը, այնքան ավելի է ընկնում դրանց իշխանության տակ, դառնում դրանց ստրուկը։ «...Որքան ավելի է բանվորն իրեն ուժասպառում աշխատանքում,— գրում է Մարքսը,— այնքան ավելի հզոր է դառնում նրան օտար առարկայական աշխարհը, որն ստեղծվել է նրա կողմից հենց իր դեմ, այնքան ավելի աղքատ է դառնում ինքը, նրա ներքին աշխարհը» (К. Маркс и Ф. Энгельс, Из ранних произведений, էջ 561)։ Այդ ուժերն իրենց էությամբ սոցիալական են։ Դրանք այլ բան չեն, եթե ոչ օտարված հարստություն, այսինքն արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների ամբողջությունը, որն ստեղծվել է մյուս ինդիվիդների հետ համատեղ գործունեությամբ։

Արդի բուրժուական փիլիսոփայությունը չի ըմբռնում, կամ լավագույն դեպքում չի ցանկանում ըմբռնել օտարման սոցիալական պատճառները. նա նկարագրում է ամենից առաջ ոչ թե օտարման պրոցեսը, այլ օտարված վիճակը, մարդու ստեղծագործած աշխարհի և բուն մարդու խզվածությունը։ Այդ նրանց հնարավորություն է տալիս միայն նշելու օտարման աշխարհում ապրող անհատի հակասական բնույթը։ Մարդն ամենաուժ է և միաժամանակ անուժ. նա մեծ է և միաժամանակ ոչնչություն։ Մարդն անզուսպ է իր գիտական-տեխնիկական որոնումների, ձգտումների մեջ, բայց և միաժամանակ հոգեբանական սարսափ-է ապրում իր իսկ ստեղծագործության նկատմամբ։ Մեքենան յուրացնում է մարդու փառքն ու ուժը։

Օտարման սոցիալական պատճառները գիտականորեն բացահայտեց մարքսիզմը։ Մարդու կողմից մարդու շահագործման, մասնավոր սեփականատիրության վրա հիմնված հասարակարգում մարդն իրեն ազատ է զգում ոչ թե աշխատանքի պրոցեսում, այլ միայն այն կեցության մեջ, որը նրան քիչ է տարբերում կենդանուց։ Բնությունը, սոցիալական իրականությունը և իրեն վերափոխելու իսկական մարդկային կենսագործունեությունը զրկված է մարդկային բովանդակությունից, որովհետև իսկական մարդկայինը այն գործունեությունն է, որտեղ մարդն իր աշխատանքը չի դիտում որպես միջոց։ Մինչդեռ այստեղ այն փոխարինված է իր գործունեության, որպես իր պահանջմունքների բավարարման միջոցի նկատմամբ «կենդանական» հարաբերությամբ։ Աշխատանքի նկատմամբ այդպիսի վերաբերմունքը բացատրվում է նրանով, որ աշխատանքը և դրա արդյունքը պատկանում են ոչ թե դրանց ստեղծողին, այլ մեկ ուրիշ սուբյեկտի, առանձին մասնավոր սեփականատիրոջ կամ համընդհանուր կապիտալիստին՝ պետությանը։

Աշխատանքի օտարման արմատները մխրճվում են աշխատանքի բաժանման սիստեմի ընդերքում։ Կապիտալիզմն ավելի խորացրեց ու ծայրահեղության հասցրեց աշխատանքի հասարակական բաժանումը, որի հետ մեկտեղ մասնատվեց և ինքը՝ մարդը, նա զրկվեց իր մարդկային ամբողջական էությունից, դարձավ «մասնակի», «մասնատված», մասնակի ֆունկցիայի հասարակ

կատարող և ոչ միայն «մասնակի բանվոր», այլ նաև «մասնակի մարդ», ամբողջական մարդու «բեկոր», «պրոֆեսիոնալ ապուշ»:

Իր գործունեության նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքով է որոշվում և մարդու վերաբերմունքն իր աշխատանքի արդյունքի նկատմամբ: Ո՛չ միայն աշխատանքն է օտարված բանվորից և նա՝ աշխատանքի պրոցեսում, այլև նա օտարված է իր աշխատանքի և՛ արդյունքից և՛ առարկայից: Աշխատանքի թե՛ առարկան և թե արդյունքը, որոնք պատկանում են ոչ թե իրեն, այլ մասնավոր սեփականատիրոջը, հանդես են գալիս որպես օտար, նրա էությանը խորթ, նրան ճնշող ուժեր, որոնց տիրապետության տակ նա ավելի է ընկնում:

Ավելին, ոչ միայն մարդկայնացած բնությունը, մարդու գործունեության պրոդուկտների աշխարհը, այլև անօրգանական բնությունը՝ աշխատանքի առարկաների այդ զինանոցը, որը պատկանում է մասնավոր սեփականատիրոջը, ձեռք է բերում առարկայական, օտարված բնույթ: Օտարումը խորտակում է մարդու և բնության միասնությունը, որովհետև բնությունը դիտվում է միայն որպես անհատական գոյությունը պահպանելու միջոց:

Օտարման պրոցեսը մարդու՝ մյուս մարդկանցից խորթացման պրոցես է: Այն հասարակարգում, որտեղ տիրապետում են մարդուն այլանդակող աշխատանքի բաժանումը, մասնավոր սեփականատիրությունն ու ռազմա-բյուրոկրատական պետությունը մարդն իրեն զգում է միայնակ, դեն նետված ու անօգնական: Յուրաքանչյուրը մյուս մարդու մեջ տեսնում է ոչ միայն իր դժբախտության ընկերոջը, այլև իր թշնամուն ու մրցորդին: Յուրաքանչյուրը սարսափ է ապրում իր գոյության համար, քանի որ իսկական մարդկային բոլոր կապերը խորտակված են: Էգոիզմը և խարդավանքը ստիպում են նրան ոչ միայն մյուսին դիտել իբրև միջոց և ոչ թե նպատակ, այլև իրեն դիտել որպես լոկ միջոց և ոչ թե ինքնանպատակ:

Մարքսն օտարման կատեգորիան չէր դիտում որպես ինչ-որ արտապատմական կատեգորիա, այլ իբրև կապիտալիստական հասարակարգի կառուցվածքով պայմանավորված անհատների վիճակի բնութագրում, որպես մարդկանց միջև հարաբերությունների պատմականորեն անցողիկ բնույթ: Նա գիտականորեն ցույց տվեց, որ հասարակության նյութական զարգացման պրոցեսը տանում է օտարման ոչնչացման՝ նրա բոլոր դրսևորումներով հանդերձ:

Օտարման վերացումը օրինաչափ, բայց և միաժամանակ երկարատև, բարդ պրոցես է: Այն կապված է մարդուն սոցիալական մասնակի ֆունկցիայի գամող աշխատանքի բաժանման, մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման ոչնչացման, արտադրողական ուժերի բուռն աճման հետ: Ռեալ իրականության մեջ մասնավոր սեփականությունը վերացնելու համար,— ասում էր Մարքսը,— պահանջվում է իսկական կոմունիստական գործունեություն, պրակտիկ հեղափոխական պայքար:

Ելնելով մարդու առարկայական գործունեության սկզբունքից, մարքսիզմը բանվոր դասակարգի մեջ տեսավ ոչ միայն տառապող մասսայի, այլև ակտիվ հեղափոխական ուժի, որն ընդունակ է հաղթահարելու ամեն մի օտարում, ստեղծել մարդկային աշխարհ ոչ թե նրա օտարված ձևով, այլ որպես ամբողջական մարդու ներդաշնակ ու բազմակողմանի զարգացման աշխարհ, որպես ազատության իսկական թագավորություն:

---

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

# ՆԱՏՕ-Ի ՃԳՆԱԺԱՄԸ

ՐԵՎՄՏՅԱՆ տերությունների խոշորագույն ռազմա-քաղաքական բլոկին՝ ՆԱՏՕ-ին 1966 թվականի առաջին կիսամյակը լուրջ փորձություններ բերեց: Բլոկի գլխավոր մասնակիցներից մեկի՝ Ֆրանսիայի որոշումը ՆԱՏՕ-ի ռազմական կազմակերպությունից դուրս գալու մասին, ստեղծել է մի իրադրություն, որը սովորաբար բնորոշում են որպես Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ դաշինքի ճգնաժամ: Դա նշանակում է, որ կապիտալիստական երկրների ետպատերազմյան ռազմա-քաղաքական համագործակցությունը, որն ստեղծվել է ամերիկյան իմպերիալիզմի նախաձեռնությամբ՝ ընդդեմ սոցիալիստական լագերի, լուրջ ճեղքվածք է տվել այնտեղ, որտեղ այն թվում էր ամենից ավելի ամրակուռ և կատարյալ:

Դրանում թերևս անսովոր ոչինչ չկա, նախ, այն պատճառով, որ ՆԱՏՕ-ն իր ստեղծման օրից՝ 1949 թվականի ապրիլի 4-ից սկսած, երբեք զերծ չի եղել ներքին երկպառակություններից և, ապա, կապիտալիզմն իր պատմության ընթացքում քիչ չէ ունեցել լոզունգներ, որոնք ծնվել ու կործանվել են միևնույն մեծադղորդ աղմուկով: Դրանց թվին է պատկանում կապիտալիստական տերությունների միասնության գաղափարը, որը երիցս ծնվել ու կործանվել է իմպերիալիստական հակասությունների զարգացման դինամիկ պրոցեսում:

Սակայն, երբ կապիտալիզմը համապարփակ համաշխարհային սիստեմ էր, թեև պառակտված մրցակցության ու պայքարի տրամաբանությամբ, բուրժուազիայի գաղափարախոսներին այդ երևույթը թվում էր միանգամայն բնական: Ամեն դեպքում այն տագնապ չէր հարուցում կապիտալիզմի ճակատագրի հանդեպ:

Այլ բան է այժմ, երբ կապիտալիզմի դեմ հանդիման կանգնած է անընդհատ աճող ու հզորացող սոցիալիստական սիստեմը: Ժամանակակից պայմաններում Արևմուտքի քաղաքական շրջաններում կապիտալիստական երկրների միասնությունը և «ինտեգրացիան» (միաձուլում), երկու սիստեմների բախտորոշ մրցության մեջ, դիտվում է որպես եթե ոչ հաղթանակի, ապա առնվազն վերապրելու գլխավոր պայման:

Անշուշտ, սխալ կլիներ եզրակացնել, որ ՆԱՏՕ-ի ճգնաժամը վկայում է Հյուսիս-Ատլանտյան դաշինքի կրախը: Սակայն նույնքան սխալ կլիներ պնդել, որ այն որոշակի նշանակությունից զուրկ, անցողիկ դրվագ է իմպերիալիստական տերությունների ագրեսիվ համագործակցության կյանքում:

Ինչպես ցույց են տալիս փաստերը, ԱՄՆ-ի պետական գործիչների գլխավոր մտահոգությունը ոչ թե Ֆրանսիայի հեռանալն է ՆԱՏՕ-ից, այլ այն, որ ֆրանսիական կառավարության քայլը կարող է առաջացնել շղթայական ռեակցիա։ Եվ այդ մտահոգությունը միանգամայն բնական է, որովհետև ատլանտյան ցնցող ճգնաժամը անակնկալ չէ։ Այն որոշակիորեն հասունացած հակասությունների մասնակի հանգուցալուծումն է։

## ԻՆՉՊԵՍ ՍԿՍՎԵՑ ՆԱՏՕ-Ի ՃԳՆԱԺԱՄԸ

ՖՐԱՆՍԻԱՅԻ մինչև հիմա ձեռնարկած քայլերը ՆԱՏՕ-ի սիստեմում պայմանավորված են ազգային սուվերենության վերականգնման ձգտումով։ Մինչև ՆԱՏՕ-ից դուրս գալու որոշումն ընդունելը Ֆրանսիան մի շարք գործնական միջոցառումներով պայքարել է այդ բլոկի «ինտեգրացիոն» սկզբունքի դեմ, որը դիտել է որպես ազգային սուվերենության հետ անհամատեղելի երևույթ։

ՆԱՏՕ-ի ճգնաժամը եղավ այն նոր միջոցառումների հետևանքը, որոնք շարադրեց գեներալ դը Գոլը իր այս տարվա փետրվարի 21-ի հայտնի պրեսկոնֆերանսում։ Դը Գոլը հայտարարեց, որ ինքը մտադիր է «վերականգնել ինքնուրույնության նորմալ վիճակը, որի դեպքում այն ամենը, ինչ ֆրանսիական է՝ հողը, երկինքը, ծովը և ուժերը և բոլոր օտարերկրյա զորքերը, որոնք տեղավորված են Ֆրանսիայում, գտնվեն ֆրանսիական իշխանությունների իրավասության տակ»։ Դրան հետևեց դը Գոլի մարտի 7-ի ուղերձը պրեզիդենտ Ջոնսոնին և ապա մարտի 9-ի և 10-ի հուշագրերը՝ Ատլանտյան դաշինքի 14 անդամ-երկրների կառավարություններին։

Իր հուշագրում ֆրանսիական կառավարությունը չառարկելով 1949 թվականի ապրիլի 4-ին Վաշինգտոնում ստորագրված Հյուսիս-Ատլանտյան պակտի դեմ, այնուամենայնիվ, գտնում է, որ նրա հիման վրա ստեղծված ռազմական կազմակերպությունը չի համապատասխանում ներկա իրադրությանը։ Բայց գիտենալով հանդերձ, որ ՆԱՏՕ-ի մյուս անդամ-տերությունները հակված են առայժմ պահպանել ստատուս-քվո, Ֆրանսիան որոշել է դիմել միակողմանի միջոցառումների, որոնք ինքը համարում է անհրաժեշտ։

Որո՞նք են այդ միջոցառումները։ Ամենից առաջ Ֆրանսիան մտադիր է վերջ տալ Ատլանտյան «ինտեգրացիային» և վերականգնել իր սուվերենիտետը այն կոմունիկացիաների, զինված ուժերի, ռազմական բազաների, օդանավակայանների նկատմամբ, որոնք այժմ գտնվում են ՆԱՏՕ-ի վերահսկողության ներքո։ Նա մտադիր է միաժամանակ դուրս գալ Եվրոպայում ՆԱՏՕ-ի միացյալ զինված ուժերի գերագույն հրամանատարությունից, որը գտնվում է Ռոկանկուրում և Կենտրոնական Եվրոպայում ՆԱՏՕ-ի միացյալ զինված ուժերի հրամանատարությունից, որը գտնվում է Ֆոնտենբլոյում։ Հետևաբար այդ հրամանատարությունները չեն կարող գտնվել Ֆրանսիայում։

Պրեզիդենտ Ջոնսոնին առաքած իր մարտի 7-ի ուղերձում գեներալ դը Գոլը ԱՄՆ-ին առաջարկեց երկկողմանի բանակցություններ սկսել այն համաձայնագրերի շուրջ, որոնց հիման վրա ամերիկյան զինված ուժերը և բազաները տեղադրվել են Ֆրանսիայում։ Սակայն ԱՄՆ-ը կտրականապես մերժեց այդ առաջարկությունը։ Այդ կապակցությամբ ֆրանսիական կառավարությունը պահանջեց կամ այդ զինված ուժերը և բազաները ենթարկել ֆրանսիական



հրամանատարությանը և կամ մինչև 1967 թվականի ապրիլի մեկը տեղափոխել Ֆրանսիայից։ Նման պահանջ ներկայացվեց նաև Կանադային և ԳՖՀ-ին։

Ֆրանսիան այդ միջոցառումը դիտում է ծայր աստիճան անհրաժեշտ՝ ազգային սուվերենությունն ապահովելու տեսակետից։ Արտաքին գործերի մինիստր Կուվ դը Մյուրվիլը անդրադառնալով այդ խնդրին ասաց. «Որոշ մարդիկ մեզ հանդիմանում են ավելորդ նացիոնալիզմի համար։ Բայց մենք լոկ արտահայտում ենք անկախության ձգտումը, որը միանգամայն բնական է Ֆրանսիայի համար»։

Այժմ Ֆրանսիայում գտնվող ամերիկյան զինված ուժերում հաշվվում է 26 հազար մարդ, 1958 թվականի 40 հազարի փոխարեն։ Ամերիկյան ռազմական շինությունները բաղկացած են 14 ավիացիոն բազաներից, նավթամուղից և 40 պահեստներից, որոնք պարունակում են Արևմտյան Գերմանիայում տեղադրված 7-րդ բանակի և 17-րդ ավիացիոն կորպուսի համար մեկ ամսվա պաշար։

Ֆրանսիան կարող է իր սուվերենության նկատառումներով առհասարակ արգելել ՆԱՏՕ-ի ռազմական ինքնաթիռների թռիչքները իր տերիտորիայի վրայով։ Բացի այդ, եթե գործը հասնի ի վերջո Ֆրանսիայի չեզոքությանը, ապա ՆԱՏՕ-ի, այսպես կոչված, առաջապահ գիծը տրոհված կլինի երկուսի չեզոք գոտիով, որը կանցնի Ավստրիայի, Շվեյցարիայի և Ֆրանսիայի տերիտորիայով։ Դա կթուլացնի ՆԱՏՕ-ի ստրատեգիական դիրքերը՝ զրկելով նրան համատարած օդային տարածությունից ու ցամաքային մատակարարման ուղիներից։

Ինչևիցե. Միացյալ Նահանգները կտրականապես հրաժարվեցին Ֆրանսիայում գտնվող իրենց զինված ուժերն ու բազաները ենթարկել ֆրանսիական հրամանատարությանը, որը օրակարգի մեջ է դնում դրանք Ֆրանսիայից հեռացնելու հարցը։

Այդ կապակցությամբ Վաշինգտոնը պատրաստվում էր Ֆրանսիային պարտադրել երկարատև իրավաբանական կոնֆլիկտ, վիճարկելով նրա պահանջների օրինականությունը։ ԱՄՆ-ը խնդիրը ներկայացրեց այնպես, որ այն իբր թե շոշափում է ոչ միայն 2 երկրների, այլև ողջ Հյուսիս-Ատլանտյան բլոկի շահերն ամբողջությամբ, հուսալով վիճակը փրկել ՆԱՏՕ-ի մյուս անդամ-պետությունների օգնությամբ։ Սակայն հանդիպելով Ֆրանսիայի անզիջում դիրքին, նա ստիպված էր իր զինված ուժերը, շտաբները, բազաներն ու պահեստները Ֆրանսիայից հանելու որոշում ընդունել։ Միաժամանակ ամերիկյան կառավարությունը այդ որոշումն իրագործելու համար պահանջում է լրացուցիչ մեկ տարի ժամանակ, պատճառաբանելով, որ զորքերի ու բազաների, պահեստների, օդանավակայանների և հիմնարկությունների էվակուացիան մեկ տարվա ընթացքում չի կարելի իրագործել «առանց դաշնակիցների անվտանգության համար սպառնալիք ստեղծելու»։ Սակայն ապրիլի 22-ին Փարիզում ԱՄՆ-ի դեսպան Չարլզ Բոլենին հանձնված նոտայում ֆրանսիական կառավարությունը կտրականապես հրաժարվեց երկարաձգել նշված ժամկետը։

Արևմտյան մամուլի որոշ օրգաններ փորձում են դը Գոլի աննահանջ դիրքն այս հարցում բացատրել նրա ընտրական նկատառումներով, ասելով, որ նա ցանկանում է 1967 թվականի գարնան պառլամենտական ընտրությունների ժամանակ ֆրանսիացիների առջև հառնել որպես մի մարդ, որին պատկանում է Ֆրանսիայի նկատմամբ ամերիկյան պրոտեկտորատին վերջ դնողի պատիվը։

Եթե նույնիսկ այդ այդպես է, ապա անվիճելի է նաև այն, որ ԱՄՆ-ը աշ-

խատում են երկարաձգել Ֆրանսիայից հեռանալու ժամկետը, հույս ունենալով, որ պառլամենտական ընտրությունների շնորհիվ հնարավոր կլինի Ֆրանսիայում հասնել լուրջ փոփոխությունների: Ուոլտեր Լիպմանը ապրիլի 19-ին «Նյու-Յորք Հերալդ տրիբյունում» խորհուրդ էր տալիս ԱՄՆ-ի պետական դեպարտամենտին չմոռանալ, որ դը Գոլի դեմ ներքին հիմնական օպոզիցիան գալիս է ձախ թևից, որտեղ գտնվում են կոմունիստները և որն ավելի թշնամաբար է տրամադրված Ատլանտյան դաշինքի նկատմամբ, քան դըգոլլականները: «Գեներալ դը Գոլը կարող է անել այնպես,— գրում է Լիպմանը,— որ մեզնից մի քանիսին կթվա, թե իրենց տապակում են սկավառակի վրա: Բայց ժողովրդական ճակատը, որը կարող է փոխարինել նրան... կլինի հենց դժոխքի կրակը»:

## ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԴԵՄԱՐՇԻ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐԸ ՆԱՏՕ-Ի ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

ԻՆՉՊԵՍ պետք էր սպասել, Ֆրանսիայի կառավարության որոշումն ամենամեծ իրարանցումն առաջացրեց ԱՄՆ-ում, Գերմանիայի Ֆեդերալ Հանրապետությունում և Անգլիայում: Ճիշտ է, ՆԱՏՕ-ի այս գլխավոր երկրների կառավարական շրջաններում ամեն կերպ աշխատում են սքողել տագնապի զգացումը: Սակայն այդ առերևույթ հանգստության ետևում թաքնված է ոչ միայն աննկարագրելի զայրույթ ու վրդովմունք, այլև անսահման վախ Հյուսիս-Ատլանտյան դաշինքի ճակատագրի հանդեպ:

Խնդիրը նրանում է, որ իր քայլը պատճառաբանելիս Ֆրանսիան կատաղի քննադատության է ենթարկում ՆԱՏՕ-ի ոչ միայն կազմակերպչական, այլև ստրատեգիական և նպատակային սկզբունքները: Այդ կապակցությամբ նա դատապարտում է Միացյալ Նահանգների քաղաքականությունը, որը վտանգում է ընդհանուր խաղաղությունը ոչ միայն Եվրոպայում, այլև Ասիայում և այլուր: Ահա թե ինչու ամերիկյան կառավարական շրջաններին մոտ կանգնած «Վաշինգտոն պոստ» թերթը գրում է, որ «ԱՄՆ-ը Ֆրանսիայի նոր մարտահրավերը համարում է ամենալուրջը ՆԱՏՕ-ի ստեղծման ժամանակից ի վեր»:

Դը Գոլի ատլանտյան քաղաքականությունն ուղղված է ամենից առաջ ընդդեմ «ամերիկյան պրոտեկտորատի, որը ստեղծվել է Եվրոպայում՝ ՆԱՏՕ-ի քողի ներքո»: Ուստի պատահական չէ, որ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջոնսոնը այն անվանեց հարված, ուղղված «հենց ՆԱՏՕ-ի սրտին»:

Միացյալ Նահանգներն իրենց գլխավոր դաշնակիցների՝ Անգլիայի և ԳՖՀ-ի օգնությամբ փորձում են հավաստիացնել, որ ՆԱՏՕ-ի մնացած 14 երկրները կշարունակեն սերտորեն համագործակցել առանց Ֆրանսիայի: Սակայն լռելյայն խոստովանում են, որ ՆԱՏՕ-ի ներկա իրավիճակը հուսալի չէ և շտապում են հայտարարել այն բարենորոգման ենթարկելու իրենց պլանների մասին: ՆԱՏՕ-ն մոդիֆիկացիայի ենթարկելու պլանը հետևանք է այն բանի, որ, ինչպես ասաց Կանադայի արտաքին գործերի մինիստր Պ. Մարտինը, «...Ֆրանսիայի օրինակը կարող է առաջ բերել նացիոնալիստական տենդենցների ուժեղացում Արևմտյան Եվրոպայում»:

Միաժամանակ ճգնաժամի ազդեցությունը և հնարավոր հետևանքները վերացնելու նպատակով Միացյալ Նահանգների ղեկավարները ձեռնարկել են դիվանագիտական և պրոպագանդիստական արշավ: Մոբիլիզացվել են «Եվրոպայում դիվանագիտական պատերազմի վետերանները»՝ նախկին պետական քարտուղար Դին Աչեսոնը, որը ՆԱՏՕ-ի ոգեշնչողներից է, Ֆրանսիայում ԱՄՆ-ի դեսպան Չարլզ Բոլենը, պետական քարտուղարի տեղակալ Ջորջ Բոլլը և այլ գործիչներ:



Գործը հասել է այնտեղ, որ ամերիկյան մամուլի օրգանները և առանձին գործիչներ չեն կարողանում թաքցնել իրենց հակակրանքը դը Գոլի անձնավորության հանդեպ: Այսպես, «Նյու-Յորք թայմս»-ը գրում է, որ ԱՄՆ-ում «հաշվի է առնվում այն հնարավորությունը», որ մինչև 1969 թվականը, այսինքն Վաշինգտոնի պայմանագիրը վերանայելու ժամկետը, դը Գոլը «այլևս չի տնօրինի ֆրանսիական ժողովրդի բախտը»: Իսկ Դին Աչեսոնը հայտարարում է, որ դը Գոլը հավերժական չէ, որ կգա մի օր, երբ նա այլևս չի լինի և Ֆրանսիան կվերադառնա ՆԱՏՕ-ի գիրկը:

Մյուս կողմից ՆԱՏՕ-ի «ինտեգրացիոն» սկզբունքը դեռևս գտնվում է լինելիության պրոցեսում: Նրա հետագա կատարելագործումն ու իրականացումը ամերիկյան և արևմտա-գերմանական տեսանկյունից կհասցնի ՆԱՏՕ-ի անդամ պետությունների սուվերեն իրավունքների աղճատման և նույնիսկ վերացման ինտեգրացված (միաձույլ) զինված ուժերի տնօրինման հարցում: Այդ տեսակետից բնորոշ է պրեզիդենտ Ջոնսոնի մարտի 23-ի հայտարարությունը, որ «Պատերազմի միջոցների կատարելագործման ասպարեզում ամեն մի նոր քայլ ավելի ու ավելի անընդունելի է դարձնում սուվերենիտետի հին և նեղ կոնցեպցիաները»:

Ֆրանսիական «Նասիոն» թերթն իրավամբ գրում է. «Ինչ վերաբերում է սուվերենիտետի «հնացած և նեղ» կոնցեպցիաներին, ապա հարկ կա հարցնելու, այդ ինչպե՞ս ստացվեց, որ միակ սուվերենիտետը ՆԱՏՕ-ի շրջանակներում, որը նա (այսինքն Ջոնսոնը — Հ. Հ.) չի վիճարկում, դա հենց ԱՄՆ-ի սուվերենիտետն է...»:

Ընդհանուր առմամբ ամերիկյան պետական գործիչները սկսած պրեզիդենտ Ջոնսոնից մինչև պետական քարտուղար Ռասկը և ՄԱԿ-ում ԱՄՆ-ի ներկայացուցիչ Գոլդբերգը աշխատում են այն տպավորությունը ստեղծել, որ Ֆրանսիայի հեռացումը սարսափելի չէ և չի կարող քայքայել ՆԱՏՕ-ն: Սակայն երբեմն քրթմնջում են, թե ֆրանսիական դիրքը ՆԱՏՕ-ին հասցրել է ծանր վերք, որը սպառնում է լուրջ հետևանքներով: Ամեն դեպքում իմաստազուրկ է այն պնդումը, թե Ֆրանսիայի հեռացումը էլ ավելի կհամախմբի ՆԱՏՕ-ի մնացած 14 անդամ-երկրներին:

Ինչպես պետք էր սպասել, Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության կառավարությունը ոչ միայն բացասաբար է տրամադրված Ֆրանսիայի դիրքին, այլև փորձում է որոշակի օգուտներ քաղել ՆԱՏՕ-ում ստեղծված ներկա կացությունից: Այժմ Բոննում ցուցաբերվում է ԱՄՆ-ի հետ ավելի սերտորեն համագործակցելու գիծ, ընդգծելով, որ Ֆրանսիայի հեռացումը բարձրացնում է Ֆեդերատիվ Գերմանիայի նշանակությունը ՆԱՏՕ-ում և համապատասխանորեն պետք է ուժեղանա նրա դիրքը և մասնակցության աստիճանը այդ ագրեսիվ բլոկի ռազմա-քաղաքական պլանների իրականացման գործում:

Բոննի կառավարության առաջին հայտարարության մեջ ֆրանսիական հուշագրի առթիվ ասված էր, որ Արևմտյան Գերմանիան պաշտպանում է ՆԱՏՕ-ի «ինտեգրացիոն» սկզբունքը որպես «ՆԱՏՕ-ի անդամ-պետությունների ազատության և անկախության ամենագործուն երաշխիքը»: Միաժամանակ

Բոննի կառավարությունը, իհարկե, ոչ առանց ամերիկացիների և անգլիացիների դրդման, առաջ է քաշում իր տերիտորիայում գտնվող ֆրանսիական զորքերի ստատուսի հարցը։ Արևմտագերմանական «Վելտ» թերթը գտնում է, որ քաղաքական տեսակետից դը Գոլի պլաններում ամենածանրակշիռը Ֆեդերալ Հանրապետությանը նետված մարտահրավերն է։

«Վաշինգտոն պոստ» և «Նյու-Յորք Թայմս» թերթերը, ոչ առանց հատուկ դիտավորության, Բոննին հիշեցնում են, որ Ֆրանսիան նպատակ ունի իր զորքերը պահել Արևմտյան Գերմանիայում ազգային հրամանատարության ներքո, մի բան, որը նա հրաժարվում է ընդունել իր տերիտորիայում գտնվող ամերիկյան զինված ուժերի համար։

Պետք է ասել, որ ամերիկյան և արևմտագերմանական մամուլին ձայնակցում են նաև ֆրանսիական մի շարք աջ թերթեր, ինչպես, օրինակ, «Ֆիգարոն», «Օրորը», «էքոն», «էքսպրեսը»։ Այսպես, «Օրոր» թերթը գտնում է, որ ՆԱՏՕ-ից դուրս գալով Ֆրանսիան իրեն զրկում է Արևմտյան Գերմանիայում զինված ուժեր պահելու իրավունքից։ Բայց Ֆրանսիայի կառավարությունը ԳՖՀ կառավարությանն ուղղված հուշագրում, որը հրապարակվեց մայիսի 23-ին Փարիզում, պատրաստակամություն է հայտնում իր զինված ուժերը դուրս բերել Արևմտյան Գերմանիայի տերիտորիայից 1966 թ. հուլիսի մեկից մինչև 1967 թ. հուլիսի մեկը ընկած ժամանակամիջոցում, եթե Բոննի կառավարությունը ցանկանում է այդ։ Հակառակ դեպքում Ֆրանսիան առաջարկում է երկու կառավարությունների համաձայնությամբ որոշել իր զորքերի ստատուսի հարցը։ Ամեն դեպքում Ֆրանսիան հայտնում է, որ ստատուս-քվոն բացառվում է։

Եթե մի կողմ դնենք Արևմտյան Գերմանիայի պաշտպանության մասին պրոպագանդիստական խոսակցությունները, ապա պարզ կդառնա, որ ֆրանսիական զինված ուժերը Ֆեդերալ Գերմանիայի տերիտորիայից դուրս բերելը Բոննի համար ձեռնտու չէ, որովհետև դա կնշանակեր, որ Ֆրանսիան հրաժարվում է պաշտպանել արևմտագերմանական ռևանշիստական արտաքին-քաղաքական կուրսը։

Ֆրանսիայի դեմարշի կապակցությամբ Բոննում ավելի համառորեն են խոսում Վերմախտը միջուկային զենքով զինելու անհրաժեշտության մասին, որը ամերիկյան ողորմածությամբ սկսել են անվանել «ՆԱՏՕ-ի սիստեմում միջուկային պատասխանատվությունը բաժանելու» պլան։ Աջակողմյան «Ֆիգարո» թերթը առարկելով ՆԱՏՕ-ից դուրս գալու Ֆրանսիայի որոշման դեմ, պնդում է, որ դրա հետևանքով «Ֆեդերատիվ Գերմանիան կդառնա ՆԱՏՕ-ի առաջնակարգ բաղկացուցիչ մասը մայրցամաքում և կկարողանա ավելի արդյունավետ ձևով, քան անցյալում, հասնել իր փառասիրության, իր միջուկային պահանջների բավարարմանը»։ Սակայն հայտնի է, որ Ֆրանսիան հետևողականորեն դիմադրել է ՆԱՏՕ-ի միացյալ միջուկային ուժերի ստեղծման ծրագրին, որի նպատակը արևմտագերմանական ռևանշիստներին միջուկային զենք ընձեռելն է։ Ուստի ծայր աստիճան անհավանական է, որ Ֆրանսիան իր ազգային սուվերենությունն ամրապնդելու քայլը կատարի, այն վտանգող ավելի մեծ սպառնալիք թույլ տալու գնով։

Ճիշտ է, Արևմտյան Գերմանիան միջուկային զենքով զինելու քաղաքականությանը դիմադրել, գտնվելով ՆԱՏՕ-ից դուրս, դժվար է։ Սակայն որոշումներ ընդունելու միաձայնության սկզբունքը վերացնելուց հետո դա գրեթե անհնարին կդառնար և ՆԱՏՕ-ի ներսում։ Ինչևիցե, որոշակի է այն հանգամանքը, որ



Ֆրանսիան մնում է որպես Արևմտյան Գերմանիայի միջուկային զինման հակառակորդներից մեկը և ապագայում դրա դեմ պայքարելու համար պետք է որոնի Արևելյան Եվրոպայի երկրների հետ մերձեցման ուղիներ։

Գալով Անգլիայի դիրքին պետք է ասել, որ ֆրանսիական դեմարշի կապակցությամբ լեյբորիստական կուսակցության ղեկավարները նորից ապացուցեցին ինքնուրույն արտաքին-քաղաքական գիծ վարելու իրենց անընդունակությունը։ Լոնդոնն իր վրա վերցրեց Ֆրանսիայի դեմ «միասնական օպոզիցիա» կազմակերպելու գործը։ Պրեմիեր-մինիստր Վիլսոնը առաջինը Բոննի Կանցլեր Էրհարդի հետ միասին ԱՄՆ-ի կառավարությանը հավաստիացրեց, որ մնում է միանգամայն հավատարիմ «ՆԱՏՕ-ի սկզբունքներին»։ Իր հերթին արտաքին գործերի մինիստր Մայքլ Ստյուարտը բազմիցս հայտարարել է, որ ոչինչ չի կարող արժանավայել ձևով փոխարինել «ինտեգրացման» սկզբունքին։

Միաժամանակ անգլիական մամուլի և պաշտոնական շրջանների կարծիքով Ֆրանսիայի հեռանալը ավելի մերձեցնում է «Երեք մեծերին»՝ ԱՄՆ-ին, Մեծ Բրիտանիային և ԳՖՀ-ին, և հեշտացնում վերջինիս զինումը միջուկային զենքով։ Ուստի հասկանալի է, թե ինչու Վիլսոնը և Էրհարդը իրենց մայիսի 2-րդ կեսին ունեցած հանդիպման ժամանակ ոչ միայն նորից հաստատեցին իրենց նվիրվածությունը ՆԱՏՕ-ի «ինտեգրացման» սկզբունքին, այլև, «Թայմս» թերթի խոսքերով ասած, գտան, որ «դուռը չպետք է փակ լինի միջուկային մասնակցությունը լուծելու որևէ ձևի առջև»։

Հակառակ ամերիկացիների հավաստիացումների, Ֆրանսիայի դեմարշից հետո ՆԱՏՕ-ի ներքին կացությունը հեռու է մխիթարական լինելուց։ Ըստ էության 14 անդամ-տերությունների բացարձակ և անվերապահ հակա-ֆրանսիական տեսակետ գոյություն չունի։ Այսպես, Ֆրանսիայի դիրքի առթիվ մարտ ամսին Փարիզում ՆԱՏՕ-ի խորհրդի ընդունած դեկլարացիայի կապակցությամբ Նորվեգիան տեղեկացրեց, որ ինքը չի համաձայնվի այնպիսի ձևակերպման հետ, որտեղ բացեիբաց քննադատվում է Ֆրանսիան։ Այս հարցում «զսպվածություն և չափավորություն» գերադասեցին նաև Դանիան, Հունաստանը և Թուրքիան։

## ԻՆՉՈՒ Է ՖՐԱՆՍԻԱՆ ԼՔՈՒՄ ՆԱՏՕ-Ն



ՅՈՒՍԻՍ-ԱՏԼԱՆՏՅԱՆ պակտի երկրների կառավարություններին առաքված փաստաթղթերում, և պրեզիդենտ դը Գոլի, պրեմիեր-մինիստր Պոմպիդուի և արտաքին գործերի մինիստր Կուվ դը Մյուրվիլի ելույթներում բազմիցս շարադրվել են Ֆրանսիայի ՆԱՏՕ-ի ռազմական կազմակերպությունից դուրս գալու շարժառիթները։

Ֆրանսիան պատճառաբանում է, որ այն ժամանակից ի վեր, երբ ստորագրվեց Հյուսիս-Ատլանտյան պակտը, արմատապես փոխվել են պայմանները աշխարհում և, մասնավորապես, Եվրոպայում։ Դը Գոլը մի քանի առիթով նշել է, որ 1949 թվականին, երբ ստորագրվեց Վաշինգտոնի պայմանագիրը, Միացյալ Նահանգները տիրում էին ատոմային զենքի մենաշնորհին և այն ժամանակ Արևմտյան Եվրոպան պետք է ապավիներ ամերիկյան զենքին։ Ներկայումս նրանք կորցրել են այդ մենաշնորհը և այժմ ինչպես Միացյալ Նահանգները, այնպես էլ Սովետական Միությունն ունեն միջուկային զենքի այնպիսի տեսակներ և այնպիսի պաշարներ, որ կարող են փոխադարձաբար ոչն-

չացնել միմյանց։ Այդ պատճառով դը Գոլը գտնում է, որ չի կարելի վստահորեն ասել, որ պատերազմի դեպքում ԱՄՆ-ը կգործադրի իր միջուկային զենքը Արևմտյան Եվրոպայի պաշտպանության համար, գիտենալով հանդերձ, որ իրեն ենթարկում է ոչնչանալու ռիսկին։ Այստեղից դը Գոլը եզրակացնում է, որ Արևմտյան Եվրոպան իր պաշտպանությունը պետք է ապավինի իր սեփական միջուկային զենքին, որի տակ, անշուշտ, դը Գոլը նկատի ունի ֆրանսիական միջուկային զենքը։ Դը Գոլի այս դրույթը, անտարակույս, կապված է զանազան խնդիրների ու նպատակների հետ։ Նրա հարցադրումն ամբողջովին ընդունելի չէ։ Իհարկե, ամերիկյան միջուկային զենքի և զինված ուժերի առկայությունը Արևմտյան Եվրոպայում ոչ թե ամրապնդում, այլ սպառնալիքի տակ է դնում նրա անվտանգությունը, որովհետև իմպերիալիզմի կողմից պատերազմ հրահրելու դեպքում նա կդառնա միջուկային զանգվածային հարվածի առաջին թիրախը։ Այդ տեսակետից ՆԱՏՕ-ն, ինչ գույնով էլ որ փորձեն այն գունավորել, եղել և մնում է որպես ագրեսիայի զենք, որը միայն ուժեղացնում է միջազգային լարվածությունը և ծնում պատերազմի վտանգ։

Մյուս կողմից Ֆրանսիան երբեք չի կարող ունենալ միջուկային մարտագլխիկների և դրանք նպատակակետին հասցնելու ընդունակ ժամանակակից միջոցների այնպիսի քանակություն, որով կարողանար հավասարակշռել սոցիալիստական լագերի ռազմական հզորությունը։ Սակայն Արևմտյան Եվրոպայի ինքնուրույն միջուկային քաղաքականությունն ինքնըստինքյան իմաստազուրկ է այն պատճառով, որ սոցիալիստական լագերի և, մասնավորապես, ՍՍՀՄ ռազմական հզորությունը հետապնդում է սոսկ պաշտպանողական նպատակներ և ոչ ոքի անվտանգությանը չի սպառնում։

Սակայն այս հարցում Ֆրանսիայի դիրքերում կա և մի այլ նկատառում։ Դը Գոլը ֆրանսիական միջուկային զենքը դիտում է որպես Արևմտյան Եվրոպայում Ֆրանսիայի հեգեմոնիան ապահովելու միջոց։ Այդ նկատառումը իր ողջ ուտոպիականությամբ հանդերձ, թելադրված է նախ, Արևմտյան Եվրոպան ամերիկյան (մասամբ և անգլիական) ազդեցությունից անկախ դարձնելու ձգտումով և ապա Արևմտյան Գերմանիայի արագ հզորացման փաստով։

Սակայն ԱՄՆ-ի կողմից միջուկային մենաշնորհը կորցնելու խնդիրը Ֆրանսիայի կողմից ՆԱՏՕ-ն լքելու գլխավոր շարժառիթը չէ։ Ավելի կարևոր է այն, որ ֆրանսիական կառավարության կարծիքով Եվրոպայում պատերազմի վըտանգը խիստ նվազել է և Արևելյան Եվրոպայի, այսինքն սոցիալիստական սիստեմի երկրների կողմից Արևմտյան Եվրոպային վտանգ չի սպառնում։ Եվրոպան, ինչպես ասված է ֆրանսիական հուշագրում, այլևս միջազգային ճգնաժամերի կենտրոն չէ։ Այդ կենտրոնը տեղափոխվել է մասնավորապես Ասիա, որտեղ Ատլանտյան դաշինքի շահերն ամբողջությամբ չեն շոշափվում։ Մինչդեռ, ինչպես իրավամբ ընդգծվում է ֆրանսիական կառավարական փաստաթղթերում, ՆԱՏՕ-ի կազմում որոշակի պարտավորություններով կապված լինելը սպառնում է Ֆրանսիային ներքաշել պատերազմի մեջ։

«Այն ժամանակ,— ասաց դը Գոլը փետրվարի 21-ի պրես-կոնֆերանսում,— երբ ցրվում է ծայրահեղ դեպքում ինչ որ չափով, Եվրոպայի պատճառով համաշխարհային պատերազմ ծագելու հեռանկարը, առաջանում են ուրիշ կոնֆլիկտներ, որոնց մեջ ներքաշվում է Ամերիկան երկրագնդի այլ մասերում։ Այդպես եղավ երեկ չէ մյուս օրը Կորեայում, երեկ Կուբայում, իսկ այսօր Վիետնամում։ Այդ կոնֆլիկտները, տխրահռչակ էսկալացիայի պատճառով կա-



րող են այնպիսի չափեր ընդունել, որ ընդունակ կլինեն հասցնելու համընդհանուր պատերազմի և այդ դեպքում Եվրոպան, որի ստրատեգիան ՆԱՏՕ-ի շրջանակներում Ամերիկայի ստրատեգիան է, ավտոմատ կերպով ներքաշված կլինի պայքարի մեջ, եթե նույնիսկ դա նա չի ցանկացել»։

Ֆրանսիան գտնում է, որ ՆԱՏՕ-ն որպես ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության զենք, խանգարում է Արևելքի և Արևմուտքի մերձեցմանը։ Այդ կապակցությամբ ֆրանսիական կառավարությունը հանդես է գալիս Արևելյան Եվրոպայի սոցիալիստական երկրների հետ մերձենալու, տնտեսական, դիվանագիտական և քաղաքական կապերը կտրականապես ուժեղացնելու օգտին։ Եվրոպայի խնդիրները պետք է լուծեն իրենք եվրոպացիները, մինչդեռ Եվրոպայի ներկա պառակտումը ՆԱՏՕ-ի ծխածածկույթի տակ՝ ամերիկացիների փորած խրամատով, հանդիսանում է նրա գլխավոր խոչընդոտը։

Անտարակույս, վերջերս դը Գոլի այցելությունը ՍՍՀՄ, որը Արևմուտքի ռեակցիոն շրջաններում ճգնում են մեկնաբանել թունոտ ակնարկներով, կապելով Ֆրանսիայի ՆԱՏՕ-ի նկատմամբ ներկա դիրքի հետ, դարձավ ամենակարևոր և նշանակալից քայլը համաեվրոպական օգտակար քննարկումները վերականգնելու ճանապարհին։ Զարմանալի չէ, որ գեներալ դը Գոլի այցելությունն ամենամեծ իրարանցում է առաջացրել Վաշինգտոնում և հատկապես Բոննում։ Արևմտագերմանական պաշտոնական շրջանները նույնիսկ պահանջում էին, որ դը Գոլը Մոսկվայում հանդես գա որպես ավելի արևմտագերմանական, քան ֆրանսիական առաքյալի դերում և պաշտպանի Գերմանիայի 1937 թվականի սահմանների վերականգնման ռևանշիստական պլանը։ Սակայն, հայտնի է, որ որոշ առիթներով դը Գոլը հայտարարել է, որ Օդեր-Նեյսե սահմանը ենթակա չէ փոփոխության։

Անտարակույս, Ֆրանսիայի դիրքը չի կարելի համարել լիովին բավարար և հետևողական։ Չնայած այն հարվածին, որ այդ դիրքը հասցնում է ամերիկյան իմպերիալիզմի ստեղծած ագրեսիվ բլոկների տեսական և գործնական սիստեմին, այնուհանդերձ, Ֆրանսիան հանդես չի գալիս Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ դաշինքը լիովին վերացնելու օգտին։ Նա նույնիսկ պատրաստ է պահպանել իր տերիտորիայում ամերիկյան զինված ուժերն ու բազաները, եթե փոխվի նրանց ստատուսը։ Ֆրանսիայի կառավարության դիրքը միջուկային սպառազինության, փորձարկումների և առհասարակ զինաթափման հարցում առայժմ չի բխում ընդհանուր խաղաղությունն ապահովելու շահերից և իր վրա կրում է Ֆրանսիայի համար կեղծ մեծություն ստեղծելու պատրանքի կնիքը։ Արևմտյան Գերմանիան միջուկային զենքով զինելու պլանի դեմ Ֆրանսիայի պայքարն առայժմ բացահայտ չէ։

Այնուհանդերձ, Ֆրանսիայի դուրս գալը ՆԱՏՕ-ից պետք է համարել ցնցող երևույթ, որը նշում է կապիտալիստական աշխարհում վերջին 10—15 տարվա ընթացքում տեղի ունեցած զգալի տեղաշարժերը։ Ամենից առաջ Ֆրանսիայի ընդվզումն ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության դեմ նրա կարևոր հանգուցակետում, վկայում է այն, որ Արևմտյան Եվրոպան մեծ չափով ազատագրվել է ԱՄՆ-ից ունեցած ֆինանսա-տնտեսական կախումից։ Երկրորդ համաշխարհային պատերազմից քայքայված և ավերակների ու մոխրի մեջ ընկղմված Արևմտյան Եվրոպան տնտեսապես ամրապնդվել է, ուժեղացել և այլևս չի զգում ամերիկյան իմպերիալիզմի ստրկացուցիչ հովանավորության կարիքը։ Դը Գոլը ըստ երևույթին գտնում է, որ եկել է ժամանակն իրագործելու այն

գերագույն նպատակը, որի մասին նա գրել է իր հուշերում, այն է՝ միավորել Պիրենյան լեռներին, Ալպերին և Հռենոս գետին հարող երկրները մեկ միության մեջ և դարձնել այն երրորդ ուժը ժամանակակից աշխարհում՝ հակադրելով նրան ոչ միայն սոցիալիստական լագերին, այլև «անգլո-սաքսոնական քաղաքականությանը»:

Դեմ լինելով կապիտալիստական երկրների բացարձակ ինտեգրացիային, որը տանում է դեպի ազգային սուվերենության վերացում, դը Գոլը, այնուամենայնիվ, «ինտեգրացիայի» առկա պտուղները արդեն օգտագործում է այդ նպատակի համար: Այսպես, «ընդհանուր շուկան» հակառակ ամերիկացիների ցանկության, դարձել է ոչ թե ամերիկյան հովանավորության և շահագործման կոլեկտիվ օբյեկտ, այլ լուրջ մրցակից ԱՄՆ-ի համար: Չէ որ երկար ժամանակ «ընդհանուր շուկայում» զարգացման տեմպերը մնում էին ավելի բարձր, քան ԱՄՆ-ում: Այժմ «ընդհանուր շուկայի» երկրներում կուտակված է դոլարի և ոսկու այնպիսի պաշար, որ դը Գոլը հնարավորություն ունի հարձակվել դոլարի և անգլիական ֆունտ ստերլինգի հեղինակության վրա, պահանջելով հրաժարվել նրանցից, որպես իրենց նախկին արժեքը կորցրած միջազգային վալյուտայի, և վերադառնալ ոսկու ստանդարտին:

Միաժամանակ ՆԱՏՕ-ի հանդեպ Ֆրանսիայի դիրքում չի կարելի չտեսնել ֆրանս-գերմանական հակասությունների սրման կնիքը: Հայտնի է, որ վերջին տարիներին երկու երկրների հարաբերությունների միջև նկատվում է հարաճուն սառնություն: Ֆրանսիան գնալով «հաշտեցման» և մերձեցման Արևմտյան Գերմանիայի հետ, նպատակ ուներ վերահսկել նրա արտաքին և ռազմական քաղաքականությունը, որպեսզի այն ազատագրվի ամերիկյան և անգլիական ազդեցությունից: Դա անչափ կարևոր է Ֆրանսիայի, գերմանական միլիտարիզմի այդ պարբերական զոհի անվտանգության և ազգային շահերի համար: Ճիշտ է, դը Գոլին հաջողվեց նվազեցնել Անգլիայի ավանդական, հատկապես ֆրանս-գերմանական հարաբերությունների զարգացման համար բացասական դերը Եվրոպայում: Հայտնի է, որ իր դիվանագիտական հարուստ զինանոցի բոլոր միջոցներով Մեծ Բրիտանիան միշտ հրահրել ու պահպանել է Արևմտյան Եվրոպայում ֆրանս-գերմանական մրցակցության իրադրությունը, որը նրան հնարավորություն էր ընձեռում հրամանատարել եվրոպական գործերում: Դը Գոլը լինելով փորձված քաղաքագետ, Անգլիային զգալի չափով դարձրել է եվրոպական կղզի ոչ միայն աշխարհագրական, այլև տնտեսական ու քաղաքական իմաստով, թույլ չտալով նրա մուտքը «ընդհանուր շուկա» և հանդես գալով Եվրոպայի քաղաքական միավորման դեմ՝ Անգլիայի մասնակցությամբ:

Սակայն ԱՄՆ-ի ազդեցության դեմ պայքարելը կապված է ավելի լուրջ դժվարությունների հետ և դը Գոլը շրջահայեցորեն պայքար ծավալեց այդ ազդեցության գլխավոր հանգրվանում՝ ՆԱՏՕ-ում:

Որոշակի է, որ Արևմտյան Գերմանիայի ներկա աճող ռազմական ուժի և վերածնվող միլիտարիզմի հիմքը կազմում է նրա տնտեսությունը և, հատկապես, արդյունաբերությունը, որն իր հզորությամբ արդեն երկրորդն է կապիտալիստական աշխարհում՝ ԱՄՆ-ից հետո:

Որոշակի է, որ ԳՖՀ-ն մտադիր չէ շարունակել զինվել զուտ ամերիկյան և անգլիական զենքով: Նա այժմ ունի շատ ավելի մեծ, քան Ֆրանսիան, սպառազինություն արտադրելու նյութական հնարավորություններ, ընդհուպ մինչև սեփական միջուկային զենք ստեղծելու հնարավորությունը: «Ընդհանուր շու-



կայում» Ֆրանսիայի տնտեսական դիրքերը զգալիորեն թույլ են իր գլխավոր մրցակցի դիրքերից: Դրան պետք է ավելացնել նաև նրանց միջև եղած սուր հակասությունը գյուղատնտեսական միացյալ շուկա ստեղծելու և ֆրանսիական գյուղատնտեսական մթերքներ (հատկապես հացահատիկ և միս) Արևմտյան Գերմանիա արտահանելու հետ:

Ֆրանսիան աշխատում է այս տնտեսական թուլությունը, որն ավելացնում է նրա ոչ սովորական (առնվազն ֆրանսիական տեսակետից, եթե նկատի ունենանք երկու երկրների դարավոր հակամարտությունը) մրցակցի շանսերը՝ Արևմտյան Եվրոպայում տիրապետող դիրքի հասնել, փոխհատուցել ռազմական և քաղաքական ասպարեզներում: Ֆրանսիայի համար ավելի քան ակներև է, որ Արևմտյան Գերմանիայի տնտեսական հզորացման համար վճռական նշանակություն է ունեցել ամերիկյան օգնությունը և դը Գոլը չի կարող այդ բանը ներել ԱՄՆ-ին: Մինչդեռ ՆԱՏՕ-ն ծառայել և ծառայում է որպես արևմտագերմանական միլիտարիզմի ուժեղացման գործիք, միլիտարիզմ, որը ԳՖՀ-ի տնտեսական պոտենցիալի և ապագա հնարավորությունների զուգորդման դեպքում, նրան դարձնում է անհասանելի և բացարձակապես ընդունակ նորից իշխող դիրք գրավելու Արևմտյան Եվրոպայում: Միայն Ֆրանսիայի ձեռքում միջուկային զենքի առկայությունը բավական չէ փակելու ԳՖՀ-ի ճանապարհը դեպի արևմտաեվրոպական տիրապետողի պատվանդանը: Ուստի խնդիր է առաջ գալիս մի կողմից խափանելու այն միջավայրը, որը սնում է ԳՖՀ ռազմական մեքենան, մյուս կողմից Ֆրանսիան հարկադրված է վերադառնալ դեպի պատմության, արդեն երիցս կրկնված դասերը: Իսկ այդ դասերը պարզորոշ կերպով ասում են, որ Եվրոպայում խաղաղությունը և հենց Ֆրանսիայի ազգային անվտանգությունը չի կարելի ապահովել առանց Արևելյան Եվրոպայի և, հատկապես, Սովետական Միության մասնակցության:

Դեռևս 1944 թվականի դեկտեմբերին սովետա-ֆրանսիական պայմանագիրը կոնսուլտատիվ ժողովում քննարկելու ժամանակ գնահատելով պատմության դասերը, գեներալ դը Գոլը հայտարարեց. «Փարիզի և Մոսկվայի հարաբերություններում վարանումների և անվստահության քաղաքականությունը երկու համաշխարհային պատերազմների միջև ընկած ժամանակամիջոցում և նրանց պառակտումը վճռական պահին, պայմաններ ստեղծեցին Վերմախտի Հռենոս վերադառնալու, Ավստրիայի զավթման, Չեխոսլովակիայի սարկացման, Լեհաստանի ջախջախման և Հիտլերի ներխուժումը Ֆրանսիա նախապատրաստելու համար, որից մեկ տարի հետո տեղի ունեցավ հարձակումը Ռուսաստանի վրա»:

Նույն դը Գոլին են պատկանում նաև 1944 թվականին Մոսկվայում սովետա-ֆրանսիական բանակցությունների ժամանակ արտասանած հետևյալ խոսքերը. ՍՍՀՄ-ը և Ֆրանսիան «Գերմանիայի հարևաններն են և, հետևապես, գտնվում են նրա սպառնալիքի տակ: Այդպես եղել է անցյալում, այդպես կլինի նաև ապագայում»:

Գնահատելով դը Գոլի ՍՍՀՄ կատարած վերջին այցի նշանակությունը, ընկ. Բրեժնևը նշեց, որ այն կարևոր ավանդ եղավ Սովետական Միության և Ֆրանսիայի բարեկամության ու համագործակցության ոլորտում: Ավելին, սովետա-ֆրանսիական բանակցությունները ցույց տվին, որ Եվրոպայի և աշխարհի՝ լարվածության օջախներ ունեցող այլ շրջաններին վերաբերող մի

շարք խոշոր հարցերում երկու կառավարությունների հայացքներում ընդհանուր շատ բան կա։

***

Այսպիսով, Ֆրանսիայի դեմարշը, որն այդքան իրարանցում է առաջացրել Արևմուտքում և առիթ տվել այդքան իրարամերժ մեկնաբանությունների, պատահականություն չէ։ Որքան էլ որ ցանկանան այն ներկայացնել որպես անձնական դիկտատուրայի ձգտող, մեծության մոլուցքով տառապող, «ռոմանտիկական նացիոնալիզմի» ոսկրացած տրամաբանությամբ մտածող գեներալ-պրեզիդենտի պատրանքների արդյունքը, անկարելի է ժխտել այդ քայլի օրինաչափությունը։ Ահա թե ինչու ֆրանսիական կոմպարտիան, քննադատելով դը Գոլի արտաքին քաղաքականության անհետևողականությունը և թերությունները, «Յումանիտե» թերթի միջոցով հայտարարեց, որ ինչպիսին էլ որ լինեն այն դեմարշի պատճառները, որով դը Գոլը դիմեց պրեզիդենտ Ջոնսոնին, նա հավանություն է տալիս նրան, որովհետև այդ դեմարշը ձեռնարկվել է խաղաղ գոյակցության և Ֆրանսիային պարտադրված պարտավորություններից ազատվելու ոգով։ Անշուշտ նրա վրա կա դը Գոլի ազդեցության, անձնական հատկությունների և մտածելակերպի կնիքը, դը Գոլի, որը համառորեն փորձում է կանգնել անձնական դիկտատուրայի և բուրժուական հանրապետության միջև։

Անշուշտ Դը Գոլը Ֆրանսիայի փրկությունը տեսնում է ոչ թե դեմոկրատական ուժերի համախմբման և նրանց դերը երկրի ներքին ու արտաքին քաղաքականության ասպարեզում բարձրացնելու մեջ, այլ ուժեղ բռունցքի, հզոր ու հեղինակավոր անհատի գրեթե միահեծան իշխանության մեջ։

Սակայն խորապես սխալ կլիներ Ֆրանսիայի ներկա արտաքին քաղաքականությունը և ՆԱՏՕ-ում ստեղծված իրավիճակը հանգեցնել դը Գոլի անձնավորությանը և կամ այլ սուբյեկտիվ գործոնների։ ՆԱՏՕ-ի ճգնաժամի հիմքում ընկած է իմպերիալիստական տերությունների հակասությունների սրումը տընտեսական պայքարի հիմքի վրա, որը հետևանք է կապիտալիզմի թռիչքաձև զարգացման և կապիտալիստական աշխարհում ժամանակ առ ժամանակ ստեղծվող հավասարակշռության խախտման։

Պետք է ենթադրել, որ ՆԱՏՕ-ի ճգնաժամը չի սահմանափակվի Ֆրանսիայի հեռացումով։

Այսպիսով, ՆԱՏՕ-ի ճգնաժամը արդեն դուրս է գալիս Ֆրանսիայի դեմարշի նեղ շրջանակներից և դառնում է ընդհանուր երևույթ այդ ագրեսիվ բլոկի համար։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՏՐԱԴԻՑԻԱՆԵՐԸ ԵՎ ՆՈՐԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Գ. ԿՐԻՎՈՇԵՅՆ

Կոմունիստները և բոլոր սովետական մարդիկ գտնվում են ՍՄԿԿ-ի վերջերս ավարտված XXIII համագումարի տպավորության տակ։ Համագումարի որոշումները, նրա գաղափարները յուրաքանչյուրի գիտակցության մեջ և հոգում ստեղծում են բազմաթիվ լուսավոր, հույզիչ մտքեր ու զգացմունքներ։ Մարդիկ ուրախությամբ և հպարտությամբ են հետադարձ հայացք ձգում կուսակցության անցած մեծ և պանծալի ուղու վրա։

Մարդկային հասարակության պատմության մեջ դժվար է գտնել ցայտուն և հետաքրքիր անցյալ ունեցող այնպիսի մասսայական-քաղաքական կազմակերպություն, ինչպիսին մեր կոմունիստական կուսակցությունն է։ Նրա գործունեության տասնամյակների ընթացքում ստեղծվել են հարուստ ու բազմապիսի տրադիցիաներ։ Միևնույն ժամանակ մեր կուսակցությունը երբեք նույն տեղում չի կանգնում, հաստատակամորեն ու նպատակասլաց պայքարում է նորի, առաջադիմականի համար նյութական ու հոգևոր կյանքի բոլոր բնագավառներում։ ՍՄԿԿ-ն իրավամբ համարվում է ամենահետևողական հեղափոխականների կուսակցություն, նորարարների կուսակցություն։

Տրադիցիաներն ու նորարարությունը բնավ միմյանց չեն հակասում, այլ, ընդհակառակը, կապված են իրար հետ, անխզելի միասնություն են կազմում և ծառայում են մեկ նպատակի՝ առաջ ընթանալ։ Բանն այն է, որ տրադիցիաները ՍՄԿԿ մեջ ստեղծվել են հին, կապիտալիստական կարգերի տապալման համար մղված պայքարում, հասարակության հեղափոխական վերափոխման համար նրա գործունեության ընթացքում։ Կուսակցությունը շարունակում է իր այդ հեղափոխական գործունեությունը։ Ուստի կարելի է միանգամայն հիմնավորված կերպով ասել, որ հենց նորարարությունն է մեր կուսակցության ամենաբնորոշ գիծը, ամենակարևոր տրադիցիան։

Տրադիցիաների նկատմամբ կոմունիստ հեղափոխականների մոտեցումը և բուրժուական ու ռեֆորմիստական կուսակցությունների ներկայացուցիչների մոտեցումն արմատապես տարբերվում են միմյանցից։ Մենք մեր տրադիցիաները տեսնում ենք հեղափոխական սխրանքների մեջ և դրանցից ուժ ու եռանդ ենք քաղում նոր, կոմունիստական հասարակարգ կառուցելու համար։ Մեր գաղափարական-քաղաքական հակառակորդներն իրենց տրադիցիաներն են համարում այն, ինչը համապատասխանում է իրերի գոյավիճակն ամրապնդելուն, իրենց դասակարգային արտոնությունները պահպանելուն։

## ՊԱՀՊԱՆԵԼ ՄԱՐՏԱԿԱՆ, ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՏՐԱԴԻՑԻԱՆԵՐԸ, ԴՐԱՆՔ ՀՄՏՈՐԵՆ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

*Հեղափոխական տրադիցիաները հասկանալը, գնահատելը և օգտագործելը մենք սովորում ենք Մարքսից, Էնգելսից, Լենինից։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները խոր հարգանք են տածել հեղափոխական անցյալի նկատմամբ։ Նրանք ուշադրությամբ ուսումնասիրել են դասակարգային պայքարի փորձը, տարբեր դարաշրջանների ժողովրդական մեծ շարժումների փորձը և պրոլետարական բոլոր մարտիկներին կոչ են արել այդպես վարվել։ «Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի վրա, անկասկած, պարտականություն է ընկնում,— գրել է Լենինը,— մանրամասն և ամենաբազմակողմանի կերպով ուսումնասիրել մեր հեղափոխությունը, մասսաների մեջ տարածել նրա պայքարի ձևերի, կազմակերպությունների ձևերի և այլնի ծանոթությունը, ամրապնդել ժողովրդի մեջ հեղափոխական տրադիցիաները...» (Երկեր, հատ. 13, էջ 32)։ Հենվելով պատմական փորձի վրա, գիտական կոմունիզմի հիմնադիրները կարողացան տեսնել հեռավոր ապագան, մշակել իշխանությունը գրավելու համար բանվոր դասակարգի պայքարի ստրատեգիան ու տակտիկան, հեղափոխական պրոլետարական կուսակցության կառուցման հիմնական սկզբունքները։ Նրանք բազմիցս ընդգծել են, որ առանց անցյալը, ապրածն իմանալու հնարավոր չէ իսկապես տիրապետել մասսաներին քաղաքականապես ղեկավարելու արվեստին։*

*Մեր մեծ ուսուցիչների ցուցումներին լրիվ համապատասխան, մենք տրադիցիաները հասկանում և ընդունում ենք որպես բոլշևիկների ավագ սերնդի կողմից կոմունիզմ կառուցողների այժմյան սերնդին հանձնված մարտական էստաֆետ։ Տրադիցիաներում մարմնավորված են մեր ժողովրդի հեղափոխական սխրանքի ժառանգականությունը, նրա ստեղծագործական ոգին։ Մենք թանկ ենք գնահատում առաջին ռուսական հեղափոխության, մեծ հոկտեմբերի տրադիցիաները, քաղաքացիական և հայրենական մեծ պատերազմների, նախապատերազմյան հնգամյակների, սովետական ժողովրդի հետպատերազմյան սխրանքների հերոսական տրադիցիաները։*

*Կուսակցությունը բարձր է գնահատում այդ տրադիցիաները, դրանք ամեն կերպ փայփայում և օգտագործում է իր աշխատանքում։ Մեր կուսակցությունը հատկապես բարձր է գնահատում իր մեծ հիմնադիր Վ. Ի. Լենինի կյանքի օրոք ստեղծված, նրա անվան հետ անխզելիորեն կապված տրադիցիաները։ Դրա նոր ապացույցը հանդիսացավ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումը ՍՄԿԿ Կենտկոմի նախագահությունը Կենտկոմի քաղբյուրոյի վերանվանելու և ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի պոստը վերականգնելու մասին։ Այդ մասին առաջարկություն մտցնելով, կոմունիստները պատճառաբանում էին հենց նրանով, որ Վ. Ի. Լենինի կյանքի օրոք և նրանից հետո երկար ժամանակ եղել են Կենտկոմի քաղբյուրո և Կենտկոմի գլխավոր քարտուղար։*

*Կուսակցության ամենահիանալի տրադիցիաներից մեկն է նրա հեղափոխական թափը, ամեն մի հարցի լայնորեն մոտենալու նրա կարողությունը։ Նա չի հանդուրժում նեղճակատ գործամոլությունը, մերկ պրակտիցիզմը։ Միևնույն ժամանակ կուսակցությունը միշտ աչքի է ընկել և աչքի է ընկնում գործի նկատմամբ կոնկրետ մոտեցմամբ, զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների ռեալ հաշվառմամբ, գործի մանրուքների, առանձնահատկությունների մեջ ներթափանցելու կարողությամբ։ Այդպիսի մոտեցման վառ և ակնառու օրինակ է կուսակցության XXIII համագումարի աշխատանքը։ Նա խորապես վերլուծեց քաղաքական ու տնտեսական խոշորագույն պրոբլեմներ, քննության առավ վերջին տարիներին սովետական հասարակարգի զարգացման արդյունքները, որոշեց ապագայի խնդիրները։ Համագումարի փաստաթղթերի յուրաքանչյուր դրույթի, յուրաքանչյուր թվի ետևը կանգնած են կոլեկտիվ կուսակցական մտքի մեծ աշխատանքը, մեզ շրջապատող իրադրության նկատմամբ ողջամիտ մոտեցումը։*

*Կուսակցության մեծագույն տրադիցիան է խնամքով, ուշադիր վերաբերմունքը մասսաների փորձի նկատմամբ։ Այդ տրադիցիան գալիս է Լենինից,*



*աշխատանքի նրա մեթոդներից ու ոճից։ Նա ժողովրդի փորձի մեջ միշտ տեսնում էր այն աղբյուրը, որը սնում է կուսակցության, նրա կադրերի ամբողջ բազմակողմանի գործունեությունը։ Ամփոփելով նոր հասարակարգի կառուցման առաջին արդյունքները, Վ. Ի. Լենինն ասել է. «...Մեր գործի համար, սոցիալիզմի գործի կառուցման համար բավական չէ բարձր խավերի այն հարյուրավորների և հարյուր հազարավորների փորձը, որոնք մինչև այժմ կերտում էին պատմությունը և կալվածատիրական հասարակության մեջ, և կապիտալիստական հասարակության մեջ։ Մենք չենք կարող այդպես վարվել հենց այն պատճառով, որ մենք մեր հույսը դրել ենք համատեղ փորձի, միլիոնավոր աշխատավորների փորձի վրա» (Երկեր, հատ. 27, էջ 510)։ Կատարելով լենինյան այս պատգամները, կուսակցությունն ուշադրությամբ զննում է, թե ինչ է կատարվում ժողովրդական մասսաների մեջ, զգոնությամբ ունկնդրում է նրանց ձայնը։ Աշխատավոր մասսաների կուտակած փորձը, նրանց կարծիքը կուսակցությունը հաշվի է առնում իր քաղաքականությունը մշակելիս։ Կարելի է թվարկել պետական և հասարակական կյանքի բոլոր բնագավառների բազմաթիվ կարևոր միջոցառումներ, որոնք ամենուրեք իրականացվել են միայն մասսաների կուտակած փորձը հանգամանորեն ուսումնասիրելուց հետո, աշխատավորների բազմաթիվ առաջարկություններն ու ցանկությունները բազմակողմանիորեն հաշվի առնելուց հետո։ Ինչպես հայտնի է, նախքան նոր հնգամյակի դիրեկտիվները ՍՄԿԿ XXIII համագումարում քննարկելն ու հաստատելը, դրանց նախագիծը քննարկվել է ձեռնարկությունների և հիմնարկների կոլեկտիվների ժողովներում, կուսակցական ժողովներում ու կոնֆերանսներում, մամուլում։ Հարյուր հազարավոր, միլիոնավոր աշխատավորներ իրենց տեսակետն արտահայտեցին այդ կարևոր հարցի առթիվ։*

*Որպես հեղափոխական տրադիցիաների և նորարարության կրողներ պետք է հանդես գան բոլոր կուսակցական կազմակերպությունները, բոլոր կոմունիստները։ Այդ բանում նրանք կարող են և պետք է օրինակ վերցնեն ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեից։ Նրա մոտեցումը կոմունիստական շինարարության կենսական հարցերին, կազմակերպական ու քաղաքական աշխատանքի նրա մեթոդները ներթափանցված են ստեղծագործության ոգով, քարացածության, շաբլոնի նկատմամբ անհաշտվողականության ոգով։ Մեր կուսակցության Կենտկոմը համարձակորեն նոր մոտեցում է մշակում գործի նկատմամբ, երբ այդ բանը պահանջում են իրադրությունը, կոմունիզմի շահերը։ Այս տեսակետից առանձնապես հատկանշական են Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումների որոշումները, պլենումներ, որոնք գիտականորեն հիմնավորված միջոցառումներ մշակեցին գյուղատնտեսական և արդյունաբերական արտադրությունն ավելի զարգացնելու, պլանավորումը բարելավելու և արտադրությունը տնտեսապես խթանելու ուղղությամբ։ Մարտյան պլենումը սկիզբ դրեց կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարման, գյուղատնտեսական արտադրության կազմակերպման բազմաթիվ փոփոխություններին։ Իր հերթին, սեպտեմբերյան պլենումը, ինչպես հայտնի է, մշակեց արդյունաբերության, շինարարության մեջ, տրանսպորտում սոցիալիստական տնտեսավարությունը բարելավելու հեռուն գնացող միջոցառումներ։ Այս ամենը լենինյան ժառանգություն է՝ նոր փորձով հարստացված։ Պլենումների որոշումներից բխում է, որ կուսակցական կազմակերպություններն արդի փուլում ավելի քան երբևէ պարտավոր են որոնել ու գտնել նորը, հենվել արդեն ձեռք բերվածի և այն ամենի ամենաուշադիր ուսումնասիրման վրա, ինչ տալիս են գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները։*

*Հեղափոխական տրադիցիաները և նորարարությունն առաջին հերթին դրսևորվում են կուսակցական կազմակերպությունների պրակտիկայում, ամենօրյա աշխատանքում։ Սակայն դրա համար անհրաժեշտ է կուսակցական կոլեկտիվներում ստեղծել համապատասխան մթնոլորտ։ Պետք է մարդկանց դաստիարակել մեր կուսակցության պանծալի տրադիցիաների, սոցիալիստական հեղափոխության տրադիցիաների ոգով։*

*Հենց վերջերս Ուկրաինայի կոմկուսի Դոնեցի քաղկոմի բյուրոն քննարկեց*

այն հարցը, թե «Կույբիշևուգոլ» տրեստի № 11 հանքվարչության կուսկազմակերպությունն աշխատավորներին ինչպես է դաստիարակում հեղափոխական և աշխատանքային տրադիցիաներով: Նշվեց, որ կուսկազմակերպությունն օգտագործում է զանազան ձևեր. կազմակերպվում են երիտասարդության հանդիպումներ հին բոլշևիկների, քաղաքացիական ու հայրենական պատերազմի մասնակիցների և աշխատանքի վետերանների հետ, կանոնավոր կերպով անց են կացվում թեմատիկ երեկոներ, ամրապնդվում են ածխահանքերի և ուսումնական հաստատությունների կոլեկտիվների շեֆական կապերը և այլն: Այս ամենը բարձրացնում է կոմունիստների ու բոլոր աշխատավորների գիտակցականությունը, դրականաբար է անդրադառնում ձեռնարկությունների տեխնիկա-տնտեսական ցուցանիշների, բուհերում, տեխնիկումներում և դպրոցներում սովորողների առաջադիմության վրա: Կուսակցության քաղկոմը հանքվարչության կուսկոմին հանձնարարեց այսուհետև ևս շարունակել այդ աշխատանքը, ավելի բազմազան ձևեր կիրառել: Մյուս կուսկազմակերպություններին հանձնարարվեց ընդօրինակել աշխատանքի այդ եղանակները:

Ահա մի այլ օրինակ: Տալլինի մի շարք սկզբնական կազմակերպություններում արդեն բավական ժամանակ է, ինչ գոյություն ունեն ձեռնարկությունների հեղափոխական և աշխատանքային փառքի պատմության սենյակներ: Այդտեղ ցույց են տրված կոլեկտիվների մարտական տրադիցիաները, կոլեկտիվների ավանդը սովետական իշխանության հաստատման համար, գերմանաֆաշիստական օկուպանտների ջախջախման, ժողովրդատնտեսական պլանների կատարման համար և տեխնիկական առաջադիմության ասպարեզում մղված պայքարում: Այստեղ պահվում են բազմաթիվ փաստաթղթեր, հերոսների դիմանկարներ, սխեմաներ, դիագրամներ, նամակներ, թռուցիկներ, բրոշյուրներ, մակետներ: Ձեռնարկությունների տերիտորիաներում հուշարձաններ են կանգնեցված և հուշատախտակներ են փակցված այն մարդկանց հիշատակը հավերժացնելու համար, ովքեր իրենց կյանքը զոհաբերել են բանվոր դասակարգի գործի, կոմունիզմի համար: Կուսակցության Տալլինի քաղկոմի բյուրոն արձանագրել է, որ մասսայական-քաղաքական աշխատանքի այդ ձևերն արժանի են ամենալուրջ ուշադրության, որ դրանք բանվորներին ու ծառայողներին, հատկապես երիտասարդությանը դաստիարակելու հիանալի միջոց են: Կուսակցության քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը հատուկ սեմինար է նախապատրաստում քաղաքի մյուս ձեռնարկություններում այդ ձևերն օգտագործելու ուղղությամբ:

Այդպիսի աշխատանք են կատարում կուսակցական շատ կազմակերպություններ: Հեղափոխական տրադիցիաներով աշխատավորությանը դաստիարակելու գործին մեծ ուշադրություն են դարձնում Լենինգրադի, Բաքվի, Լուգանսկի և այլ քաղաքների ձեռնարկությունների ու հիմնարկների կուսկազմակերպությունները: Դեռ մինչև պատերազմն այդտեղ և այլ վայրերում սկսել են գրել ֆաբրիկաների ու գործարանների պատմությունը: Այժմ մեծ Հոկտեմբերի հիսունամյակի նախապատրաստման կապակցությամբ այդ աշխատանքն ավելի խոշոր մասշտաբներ է ստացել: Գրվում են նաև կոլտնտեսությունների, սովխոզների, զորամասերի պատմությունները: Դժվար է գերագնահատել այդ գործի նշանակությունը: Կուսակցական կազմակերպություններն այդպիսով հնարավորություն են ստանում ավելի համախմբելու իրենց կոլեկտիվները, ամրապնդելու տարբեր սերունդների մարդկանց բարեկամությունը, ուժեղացնելու դաստիարակչական աշխատանքը երիտասարդության շրջանում:

Այստեղ պետք է ընդգծել երիտասարդությանը մարտական հեղափոխական տրադիցիաներով դաստիարակելու առանձնահատուկ նշանակությունը: Այս հարցին մեծ ուշադրություն դարձվեց կուսակցության XXIII համագումարում: Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասված է, որ սերունդների ժառանգությունը, հեղափոխական տրադիցիաների հզոր ուժը վառ կերպով դրսևորվում են երիտասարդության պրակտիկ գործերում, նրա գաղափարական վեհ ձգտումների մեջ: Պետք է, ընդգծված է այդ զեկուցման մեջ, երիտասարդությանն այնպես դաստիարակել, որ «նա շարունակ զգա մեր հեղափոխություն-



ների ժամանակների կապը, սովորի կյանքն ընկալել ամբողջ խորությամբ ու բարդությամբ, գիտակցի իր դերն ու պատասխանատվությունը կոմունիզմի կառուցման համար»:

Երիտասարդ բանվորների, կոլտնտեսականների, սովորողների դաստիարակումը յուրաքանչյուր կուսկազմակերպության առջև ծառացած կարևորագույն պրոբլեմներից մեկն է: Ինչպե՞ս լուծել այդ պրոբլեմը: Ինչպե՞ս և ինչո՞վ պետք է արտահայտվի սովետական մարդկանց տարբեր սերունդների ժառանգականությունը: Այս մասին պետք է մտածեն բոլոր կոմունիստները: Առանձին ընկերների մոտ, որքան էլ տարօրինակ է, նեգատիվ մոտեցում է ստեղծվել երիտասարդության պրոբլեմների նկատմամբ: Նրանք անհրաժեշտ են համարում խոսել միայն երիտասարդության շրջանում, կոմերիտմիության աշխատանքում գոյություն ունեցող թերությունների մասին: Այդպիսի մոտեցումը ոչինչ չի տալիս: Իհարկե, խոսքն այն մասին չէ, որ շրջանցենք թերությունները, շողոքորթենք երիտասարդությանը: Պետք է համոզիչ կերպով ցույց տալ այն հսկայական ավանդը, որն այսօր երիտասարդ սերունդը մուծում է կոմունիզմի կառուցման գործում, պետք է ցույց տալ, որ կոմերիտմիությունն այսօր էլ կուսակցության ռեզերվը, հենարանը, մարտական օգնականն է: Մեր երիտասարդությունը լի է հայրենասիրական ազնիվ զգացմունքներով, արձագանքում է այն ամենին, ինչ լավ է: Ո՞մ հայտնի չեն աշխատանքի, գիտության, երկրի սահմանների պաշտպանության բնագավառում մեր պատանիների ու աղջիկների սխրանքները: Միլիոնավոր երիտասարդ հայրենասերներ իրենց ուժերն ու գիտելիքները նվիրաբերում են խոշորագույն կառույցներին, մասնավորապես Արևելքում, ստեղծում են նոր քաղաքներ, երկաթուղիներ, արդյունահանում են ընդերքի հարստությունները: Այս ամենում մեր օրերի պատանիներն ու աղջիկները իրենց հայրերի ու մայրերի, իրենց ավագ եղբայրների ու քույրերի գործի հավատարիմ շարունակողներն են: Բայց դաստիարակչական աշխատանքում պետք է հաշվի առնել նոր պայմանները, այսօրվա և այն երիտասարդության որոշ տարբերությունը, որը եղել է երեք-չորս տասնամյակ առաջ: Ժամանակակից երիտասարդությունն ավելի գրագետ, ավելի կուլտուրական է, ուստի և ավելի պահանջկոտ է կյանքի, իր դաստիարակների նկատմամբ: Սակայն որոշ ընկերներ այդ բանը հաշվի չեն առնում և չեն կարողանում անհրաժեշտ ազդեցություն ունենալ երիտասարդության վրա:

Վ. Ի. Լենինը «Մենշևիզմի ճգնաժամը» հոդվածում հիշեցնում է հեղափոխական պրոլետարական կուսակցության մեջ երիտասարդության տեղի ու դերի մասին. «Մենք ապագայի կուսակցություն ենք, իսկ ապագան երիտասարդությանն է պատկանում: Մենք նովատորների կուսակցություն ենք, իսկ նովատորների ետևից միշտ ավելի սիրով երիտասարդությունն է գնում» (Երկեր, հատ. 11, էջ 442): Այս բառերը պարզ պատկերացում են տալիս այն մասին, թե մարքսիզմի կլասիկներն ինչպիսի հսկայական նշանակություն են տվել ինչպես երիտասարդությանը, այնպես էլ նրա դաստիարակության գործում կուսակցության դերին: Այդ դրույթին լրիվ համապատասխան, ՍՄԿԿ XXIII համագումարը երիտասարդության հետ կատարվող աշխատանքը համարեց բոլոր կուսակցական կազմակերպությունների կարևորագույն գործը: Պետք է նկատի ունենալ, որ մեր երկիրը, պատկերավոր ասած, երիտասարդական է. նրա բնակչության կեսը մինչև 26 տարեկան մարդիկ են: Միայն կոմերիտմիության շարքերում կան մոտ 23 միլիոն պատանիներ ու աղջիկներ: Կուսակցությունը, ամբողջ ժողովուրդը հավատում են երիտասարդ սերնդի ստեղծարար ուժին: Եվ անհրաժեշտ է նրան այնպես դաստիարակել, որ յուրաքանչյուր երիտասարդի ամենօրյա կյանքը լցված լինի կոնկրետ և օգտակար գործերով:

Պետք է խոստովանել, որ երիտասարդության գաղափարական-դաստիարակչական աշխատանքում կան թերություններ: Առանձին կուսակցական կազմակերպություններ երբեմն հաշվի չեն առնում, որ այժմյան երիտասարդ սերունդը չի անցել հեղափոխական պայքարի և կոփման այն դաժան դպրոցը, որը բաժին է ընկել ավագ ընկերներին: Որոշ երիտասարդներ կցանկանային հեռու մնալ եռուն կյանքից, համակված են խնամառուական տրամադրություն-

ներով, պետությունից շատ բան են պահանջում, բայց մոռանում են հասարակության հանդեպ իրենց պարտականությունների մասին։ Բուրժուական գաղափարախոսները, մեր դասակարգային թշնամիները փորձում են իրենց շահերի համար օգտագործել հենց այդպիսի չկոփված մարդկանց։ Բայց այդպիսիները, բարեբախտաբար, մեզ մոտ հատուկենտ են։

Կուսակցական կազմակերպությունները պետք է բարձրացնեն երիտասարդության շրջանում կատարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը, հարստացնեն դրա բովանդակությունն ու ձևերը, երիտասարդության մեջ դաստիարակեն մարքս-լենինյան աշխարհայացք, գաղափարական համոզվածություն, նվիրվածություն կոմունիստական կուսակցության գործին։ Հենց դա է այն մեծ ուժը, որն ավելի է բարձրացնում իր հարազատ պետության, սոցիալիզմի մեծ նվաճումների պաշտպանման նկատմամբ երիտասարդության հոգատարությունը, որը սուր զենք կծառայի բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության ազդեցության դեմ։

## ՈՐՈՆԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐ ՊԱՅՄԱՆՆԵՐԻՆ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆՈՂ ՆՈՐ ՁԵՎԵՐ

Մեզ համար տրադիցիան կողմնացույց է աշխատանքում, այլ ոչ թե աշխատանքի մեկընդմիշտ հաստատված եղանակների, ձևերի գումար։ Ասենք ավելին. մարտական հեղափոխական տրադիցիաներին ավելի լավ հետևելու համար անպայման պետք է որոնել աշխատանքի նոր ձևեր, կատարելագործել ղեկավարման մեթոդները։ Միշտ պետք է ելնել այս կամ այն ժամանակաշրջանում, այս կամ այն բնագավառում ստեղծված կոնկրետ պայմաններից։ Եթե, օրինակ, մի կոլտնտեսությունում նպատակահարմար է աճեցնել որոշ կուլտուրաներ և կիրառել աշխատանքի որոշակի ձևեր, ապա մի այլ գոտում գտնվող կոլտնտեսությունում գուցե պետք է գործել բոլորովին այլ կերպ։ Կամ, ասենք, մասսայական-քաղաքական աշխատանքի ածխահանքերում կիրառվող ձևերը միշտ չէ, որ կարող են արդյունավետ լինել ձկնորսանավում կամ գիտահետազոտական ինստիտուտում։ Պետք է տեսնել նաև անցած և այսօրվա ու վաղվա օրվա տարբերությունը։

Կուսակցությունը սովորեցնում է հենց այդպես հասկանալ տրադիցիաների դերն ու նշանակությունը։ Տրադիցիաների հենց այդպիսի օգտագործման մեջ են նորարարության տարրերը։

Որոշ ընկերներ հարցնում են. այնուամենայնիվ, պրակտիկ աշխատանքում ինչի՞ն պետք է նախապատվություն տալ. տրադիցիաներին, թե՞ նորարարությանը. որի՞ն պետք է ավելի շատ հետևեն կոմունիստները, սկզբնական կազմակերպությունների քարտուղարները։ Այս կոնկրետ հարցին պատասխանելու համար պետք է ավելի հիմնովին հասկանալ տրադիցիաների ու նորարարության նշանակությունն ու դերը ամբողջ կուսակցության կյանքում և գործունեության մեջ։

Ի՞նչ են կուսակցական տրադիցիաները։ Կարելի է ասել, որ դրանք կուսակցության կուտակած դրական փորձն են, նրա կազմակերպական կառուցվածքի՝ պրակտիկայում իրենց արդարացրած, կուսակցության զենքը, նրա կյանքի օրենքը դարձած ձևերն են, նրա գործունեության մեթոդները։ Իսկ նորարարությո՞ւնը։ Դա նախ և առաջ տրադիցիաները ոչ թե ձևականորեն, այլ ստեղծագործաբար, կոնկրետ պայմանների հաշվառմամբ օգտագործելու կարողությունն է, դա նրա կարողությունն է նկատել այն ամենը, ինչ հնացել, իր դարն ապրել է, և փոխարինել նրանով, ինչ համապատասխանում է նոր իրադրությանն ու նոր խնդիրներին։

Կուսակցական կյանքի այնպիսի սկզբունքներն ու նորմաները, ինչպիսիք են դեմոկրատական ցենտրալիզմը, կոլեկտիվ ղեկավարությունը, կուսակցական կյանքի հարցերը ազատ և գործարար քննարկելու, կուսակցության անդամի իրավունքը,— այս ամենը և շատ ուրիշ սկզբունքներ ծնունդ են առել ՍՄԿԿ



պատմական զարգացման ընթացքում։ Վ. Ի. Լենինն այս սկզբունքներն ու նորմաները մշակելիս հենվել է միջազգային բանվորական շարժման փորձի և նրա զարգացման նոր փուլի պահանջի վրա։ Լենինյան եզրակացությունները դարձել են մեր կուսակցության զենքը, նրա կյանքի ու գործունեության օրենքը։

Բայց կյանքն իր տեղում կանգնած չէ։ Ձեռք բերված փորձը համալրվում, հարստացվում է նորով։ Ուստի կուսակցության կողմից իր ժամանակին կիրառված նորմաներն ու սկզբունքներն անընդհատ կատարելագործվում, զարգանում են։ Կուսակցությունն անհաշտ պայքար է մղում այն ամենի դեմ, ինչ իր դարն ապրել է, քարացած է, արգելակում է առաջընթացը դեպի կոմունիզմ։ Նա իր հակառակորդներին, սոցիալիստական հեղափոխության անհայտ ու քողարկված թշնամիներին միշտ հաղթել է միայն այն պատճառով, որ ոչ թե պաշտպանել է երեկվա օրը, այլ պայքարել է ներկայի և ապագայի համար։

Տրադիցիաներին, սովորեցրել է Լենինը, պետք է մոտենալ կոնկրետ-պատմականորեն, այսինքն՝ հաշվի առնել, թե դրանք ինչ պայմաններում են ծնունդ առել, դրանցում ինչն է մնում կենդանի, օգտակար, և ինչն է արդեն մահացել ու չի կարող ծառայել հեղափոխության գործին։ Նա դաժան հակահարված էր տալիս նրանց, ովքեր տրադիցիոն դրոշակով քողարկված, անցյալի այս կամ այն օրինակը վկայակոչելով, փորձում էին բանվոր դասակարգին շեղել ճիշտ ճանապարհից, շահագործական կարգերի դեմ վճռական պայքարի ճանապարհից։ Մենշևիկները, ինչպես հայտնի է, սիրում էին ընդգծել իրենց նվիրվածությունը տրադիցիաներին։ Բայց ինչո՞ւմն էր կայանում այդ նվիրվածությունը։ Նրանք կառչում էին անցյալից, իրենց դարն ապրած կազմակերպական ձևերից, որպեսզի Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիայի մեջ արմատավորեն ռեֆորմիզմի գաղափարախոսությունն ու պրակտիկան, թուլացնեն պրոլետարիատի հեղափոխական ոգին։ Եթե նրանք երբեմն նույնիսկ հիշեցնում էին ցարիզմի դեմ ռուս ժողովրդի պայքարի հերոսական էջերի մասին, ապա սոսկ նրա համար, որպեսզի այդ պայքարը հակադրեն տակտիկայի ու կազմակերպական ձևերի բնագավառում բոլշևիկների դրույթներին։ Լենինը մենշևիկյան այդ «տրադիցիոնալիզմը» դաժանորեն գամում էր անարգանքի սյունին։ «...Մեր խնդիրներից մեկն է,— գրել է նա,— ընդհանրապես խնամքով պահպանել այդ տրադիցիաները, մշակել դրանք, մաքրել լիբերալ և օպորտունիստական մակաբույծներից» (Երկեր, հատ. 13, էջ 28—29)։ Կարևոր է, նշել է Լենինը, «ոչ միայն բառերով հնին հավատարիմ մնալու բանավոր ազդարարումը, այլև հիմնական կազմակերպական սկզբունքը, որը թույլ է տալիս կյանքում մարմնավորել գաղափարական կայունությունը» (Երկեր, հատ. 17, էջ 494)։

Տրադիցիաների նկատմամբ սխալ, մանր բուրժուական հայացքները ներթափանցել են նաև մեր կուսակցության մեջ։ Ուստի Լենինին հարկ է եղել բազմիցս հանդես գալ դրանց դեմ, այն մարդկանց դեմ, ովքեր սիրում էին «ամուր կառչել» այս կամ այն տակտիկական դրույթից, այս կամ այն քաղաքական լոզունգից, հաշվի չառնելով փոփոխված պայմանները։ 1917 թվականի հուլիսին նա գրել է. «Շատ հաճախ է պատահել, որ երբ պատմությունը շեշտակի շրջադարձ է կատարում, նույնիսկ առաջավոր կուսակցություններն ավելի կամ պակաս երկար ժամանակ չեն կարողանում ընտելանալ նոր դրությանը, կրկնում են այն լոզունգները, որոնք ճիշտ էին երեկ, բայց կորցրել են ամեն իմաստ այսօր, ու կորցրել են իմաստը նույնքան «հանկարծակի», որքան «հանկարծակի» է կատարվել պատմության շեշտակի շրջադարձը» (Երկեր, հատ. 25, էջ 223)։ Նույն միտքը Լենինն անհրաժեշտ համարեց կադրերի առջև ընդգծել և այն ժամանակ, երբ մեր կուսակցությունը դարձավ կառավարող, երբ նա գլխավորեց սովետական հասարակարգի տնտեսական ու սոցիալական հիմքերի վերակառուցումը։ «Կուսակցության կողմից մասսաների մեջ նետվող յուրաքանչյուր լոզունգ հատկություն ունի քարանալու, մեռած դառնալու, պահելու իր ուժը շատերի համար նույնիսկ այն ժամանակ, երբ փոխվել են այդ լոզունգի անհրաժեշտությունն ստեղծող պայմանները։ Այդ չարիքն անխուսափելի է,

տառանց նրա դեմ կռվել և նրան հաղթել սովորելու, չի կարելի ապահովել կուսակցության ճիշտ քաղաքականությունը» (Երկեր, հատ. 28, էջ 232):

Հանդիսանալով հեղափոխական-նորարարներ, մարքսիզմի կլասիկներն անցյալը չեն կեղծել, նրա համար չեն աղոթել, ինչպես դա հաճախ անում են բուրժուական քաղաքական գործիչները և նրանց գիտնական ծառաները: Պատմական անցյալում, տրադիցիաներում պրոլետարիատի մեծ առաջնորդները տեսել են նվաճված առաջավորն ամրապնդելու միջոց, ստեղծված իրադրությունը ձեռք բերված փորձի լույսի տակ նորից ու նորից գնահատելու, հերթական խնդիրների լուծման միջոցները որոշելու, առաջընթացի ուղին նշելու ուրիթ: Պատմական տարբեր իրադրություններում նրանց դատողությունները, նրանց մտքերն ակնառու վկայությունն են այն բանի, որ նրանց համար միշտ առաջին պլանում է եղել ոչ թե անցյալում եղածի պահպանման հոգսը, այլ կենդանի գործի հոգսը: Նրանց համար, եթե կարելի է այսպես արտահայտվել, ամենագլխավոր տրադիցիան է եղել մշտական որոնումների տրադիցիան, մշտական անհաշտվողականությունը լճացածության, քարացածության դեմ:

Կուսակցական այնպիսի հիմնական փաստաթղթերում, ինչպիսիք են կանոնադրությունն ու ծրագիրը, իր արտահայտությունն է գտնում անցյալում կուսակցության կուտակած հսկայական փորձը: Միևնույն ժամանակ դրանցում արտահայտված են մեր կուսակցության ստեղծագործական ոգին, դեպի ապագան նրա ձգտումը: Որպեսզի կանոնադրությունն ու ծրագիրն արտացոլեն կյանքի ռեալ պահանջները, անհրաժեշտ է լինում դրանք ժամանակ առ ժամանակ վերամշակել, դրանց բովանդակության մեջ մտցնել էական փոփոխություններ: Իր ծննդյան օրից ՍՄԿԿ-ն արդեն երրորդ ծրագիրն ունի: Իսկ ինչ վերաբերում է կանոնադրությանը, ապա այն ավելի հաճախ է փոփոխվում: Դա վկայում է այն մասին, թե որքան շարժուն, փոփոխական են կուսակցության աշխատանքի ձևերն ու մեթոդները պատմական տարբեր փուլերում:

Այս ամենն ինչ-որ չափով արդեն տալիս է մեր առջև դրված վերոհիշյալ հարցի պատասխանը: Պետք է միայն կրկին ընդգծել, որ կուսակցական կոլեկտիվի, կոմունիստի առջև ծառացած ամեն մի պրոբլեմի՝ լինի դա ներկուսակցական թե արտադրական, պետք է մոտենալ, հանգամանորեն կշռադատելով բոլոր պայմանները, գործի բոլոր մանրուքները: Վ. Ի. Լենինը մեխանիկական կատարողության անհաշտ թշնամի էր, այն մարդկանց հակառակորդը, ովքեր անգիր են անում ֆրազները, բայց խորամուխ չեն լինում դրանց իմաստի մեջ: Պատմական փորձը և դրանից արվող եզրակացությունները, ընդգծել է նա, հեշտ չեն ձեռք բերվում: Նա ասել է. «Պետք է տքնել, չարչարվել, ստեղծել այդ բանը: Դա ստեղծվում է պայքարի ընթացքում» (Երկեր, հատ. 31, էջ 361): Վլադիմիր Իլյիչը խորհուրդ էր տալիս գործն այնպես վարել, «որ կոմունիզմը ձեզ համար ինչ-որ սերտած բան չլինի, այլ դառնա ձեր մտածածը...» (Երկեր, հատ. 31, էջ 351):

Կուսակցությունը պահանջում է, որ բոլոր կոմունիստները շրջապատող կյանքին վերաբերվեն ոչ թե պասիվ դիտողի դերում, այլ ակտիվորեն, գործուն, ստեղծագործաբար: Անցյալը, ասում է նա, պետք է անպայման գիտենալ: Սակայն գիտենալ ոչ նրա համար, որ կառչել նրանից, այլ նրա համար, որ ճիշտ կառուցել, հաստատել նորը, անշեղորեն առաջ ընթանալ: Չի կարելի կյանքի կողմից առաջ քաշվող բոլոր հարցերի պատասխանները որոնել կուսակցության տրադիցիաների, նրա անցած գործունեության մեջ: Դա կլիներ վատագույն դրսևորումը դոգմատիզմի, որի դեմ կուսակցությունը հանդես է եկել և հանդես է գալիս ամենավճռական կերպով: Վ. Ի. Լենինը սիրում էր կրկնել Մարքսի և Էնգելսի հետևյալ խոսքերը. «Մեր ուսմունքը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց» (Երկեր, հատ. 24, էջ 30):

Կուսակցությունը կուտակված փորձը ստեղծագործաբար գնահատելու անհրաժեշտությունից է ելնում նաև իր կազմակերպական ձևերը ստեղծելիս, կուսակցական ղեկավարության մեթոդները մշակելիս: Դեռ կուսակցության X համագումարում, կուսակցական շինարարության հարցի վերաբերյալ բանա-



ձևի մեջ գրված էր. «Հեղափոխական մարքսիզմի կուսակցությունը հիմնովին ժխտում է կուսակցական կազմակերպության այնպիսի ձևի, ինչպես և նրա աշխատանքի այնպիսի մեթոդների որոնումները, որոնք բացարձակապես ճիշտ և պիտանի լինեն հեղափոխական պրոցեսի բոլոր աստիճանների համար: Ընդհակառակը, կազմակերպության ձևը և աշխատանքի մեթոդներն ամբողջովին որոշվում են տվյալ կոնկրետ պատմական իրադրության առանձնահատկություններով և այն խնդիրներով, որոնք անմիջականորեն բխում են այդ իրադրությունից» (ՍՄԿԿ-ն բանաձևերում...», 1-ին մաս, էջ 657):

Կուսակցական կազմակերպությունների կյանքի ու գործունեության մեջ նոր շատ բան են մտցնում ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները: Համագումարի փաստաթղթերում կուսակցական աշխատողները, կոմունիստները գտնում են մեր ժամանակի ամենահրատապ հարցերի պատասխանները: Կուսակցությունը նոր ձևով մոտեցավ տնտեսական շինարարության ծրագրի մշակմանը և հասարակական հարաբերությունների հետագա զարգացմանը, սովետական պետության արտաքին քաղաքականության խնդիրների որոշմանը, սոցիալիստական համագործակցության և համաշխարհային կոմունիստական շարժման միասնության ամրապնդմանը: Համագումարը նոր, յուրատեսակ քիչ բան չմտցրեց կազմակերպչական և քաղաքական աշխատանքի, մասնավորապես սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների լենինյան դրույթների մեջ: Վճռական խոսք ասվեց կադրերի հետ կատարվող աշխատանքի բարելավման, գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման, իրենց ստեղծագործության համար ժողովրդի հանդեպ գրականության և արվեստի գործիչների պատասխանատվության և այլ կարևորագույն հարցերի մասին: Եթե վերցնենք մեր համագումարի որոշումների այն մասը, որը վերաբերում է ՍՄԿԿ կանոնադրության փոփոխություններին ու լրացումներին, ապա այդ դեպքում էլ ակներև կդառնա, թե կուսակցությունը որքան հաստատակամորեն ու համառորեն է իր աշխատանքի ավելի կատարյալ եղանակներ որոնում: Նա մշտական որոնումների է նպատակամղում նաև կուսակցության ու պետության բոլոր կադրերին:

Նորը որոնել, չի նշանակում զբաղվել «նորություններ» հնարելով: Նորը պետք է լինի օբյեկտիվորեն հասունացած պահանջմունքների արտացոլումը: Այստեղ չափազանցումները տեղին չեն: ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) պլենումը, որը բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ կուսակցության կյանքում և աշխատանքում, արտահայտեց կուսակցական կյանքի լենինյան նորմաները և ղեկավարման սկզբունքները խստորեն պահպանելու և զարգացնելու բոլոր կոմունիստների անշեղ կամքը: Այդ պլենումի որոշումների հիման վրա ուղղվեցին կուսակցական, սովետական ու տնտեսական օրգանների չարդարացված վերակառուցումների հետ կապված սխալները: Դեռ սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինն ընդգծել է, որ պետք է «ոչ թե նորից աջ ու ձախ վերադասավորել, այլ կարողանալ առավելագույն չափով ՕԳՏԱԳՈՐԾԵԼ այն, ինչ արդեն ստեղծված է: Որքան կարելի է քիչ ընդհանուր վերադասավորում, որքան կարելի է շատ գործարար, գործնականորեն փորձված և իրենց արդյունքներով ստուգված միջոցառումներ, պրիոմներ, եղանակներ, ցուցումներ մեր գլխավոր նպատակին հասնելու համար» (Երկեր, հատ. 30, էջ 516):

Ամեն մի նորարարության գլխավոր չափանիշը պրակտիկան է: Այն, ինչ թույլ է տալիս ավելի հաջողությամբ լուծել կոմունիստական շինարարության խնդիրները, ինչ մեզ օգնում է ցածր աստիճանից հասնելու ավելի բարձր աստիճանի,— այն արժանի է ամեն տեսակի պաշտպանության ու տարածման: Իսկ այն, ինչ դրան չի համապատասխանում, պետք է դեն նետել: Կուսակցությունը, կատարելով այս կամ այն կազմակերպական փորձը, ուշադրությամբ հետևում է դրա արդյունքներին, այն բանին, թե ինչ են ցույց տալիս կյանքը, պրակտիկան: Մենք դատապարտում ենք պահպանողականությունը, շաբլոնը, չեզոքությունը: Բայց մենք բնավ կողմնակից չենք բոլոր հնի, այն ամենի հաստատարած ժխտմանը, ինչ որ առաջ ծառայել է մեզ: Պատահում է, այն էլ ոչ

այնքան հազվադեպ, երբ հինը արհեստականորեն հնարված նորից ավելի լավ է լինում: Այս առթիվ կարելի էր շատ օրինակներ բերել:

Վերջին ժամանակներս կուսկազմակերպությունները հարստացել են կազմակերպական ու քաղաքական աշխատանքի նոր, ավելի գործուն ձևերով: Դրանք, այդ ձևերը, ասպարեզ են եկել որպես պրակտիկայի ըմբռնման բնական արդյունք, որպես կուսակցական մասսաների աճած ակտիվության արդյունք: Սկզբում առանձին կուսակցական կոլեկտիվներում սկսեցին կոնֆերանսների միջև ընկած ժամանակաշրջանում կոմունիստների զանգվածներին ինֆորմացիա տալ ղեկավար կուսակցական օրգանների գործունեության մասին: Դա տարածվեց և այժմ մտել է ՍՄԿԿ կանոնադրության մեջ: Կամ վերցնենք կուսակցության մեջ ընդունելության ու կոմունիստների անհատական գործերի հարցերի նախնական քննության արտահաստիքային հանձնաժողովները: Սկզբում դրանք գոյություն ունեին միայն Մոսկվայի ու Լենինգրադի կուսշրջկոմներին կից: Այնուհետև այդ հանձնաժողովներն ավելի լայնորեն տարածվեցին: Սկսեցին հանձնաժողովներ կազմակերպվել կուսակցական աշխատանքի նաև այլ հարցերի համար: Փորձը ցույց տվեց, որ նրանք օգտակար ու պետքական գործ են կատարում:

Որոնումը կուսակցական աշխատանքում ոչ միայն թույլատրելի, այլև անհրաժեշտ է, պետք է համարձակորեն դիմել դրան: Այս կապակցությամբ ավելորդ չէ ուշադրություն դարձնել կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունների մեծ նշանակությանը: Այդպիսի հետազոտություններ են կատարվում Սվերդլովսկի և Գորկու մարզերի, Թուրքմենական ՍՍՀ և մի քանի այլ կուսակցական կազմակերպություններում: Դրանք թույլ տվեցին ոչ միայն ավելի պարզ պատկերացնել կյանքի կողմից առաջ քաշվող շատ հարցեր, այլև գտնել դրանց լուծման առավել ճիշտ ուղիները: Ցավոք սրտի, ամեն տեղ չէ, որ անհրաժեշտ չափով գնահատում և կիրառում են այդպիսի հետազոտությունները: Որոշ տեղեր դրանք դիտում են որպես հերթական «նորաձևություն», ընկնում են սենսացիոն ցուցանիշների և «եզրակացությունների» ետևից: Իսկ որոշ կազմակերպություններում առհասարակ խուսափում են դրանցից. եղել են ղեկավարներ, որոնք սոցիոլոգիական հետազոտությունները քիչ է մնացել դիտեն որպես խռովություն:

Երբեմն հինը շատ ուժեղ ճնշում է գործադրում նորի, ժամանակակցի վրա: Եվ այստեղ արդեն հարկ է լինում խոսել ոչ այնքան տրադիցիաների, որքան իներցիայի ուժի մասին: Իներցիայի ուժի հաղթահարումը որոշ կուսկազմակերպություններում դարձել է կարևոր խնդիր: Վերջերս Ղազախստանի կոմկուսի Ալմա-Աթայի մարզկոմի բյուրոն քննության առավ Լենինյան շրջկոմի, նրա բյուրոյի և քարտուղարների աշխատանքի ոճի ու մեթոդների հարցը: Նշվեց, որ շրջկոմն առաջվա պես քիչ է զբաղվում մասսաների մեջ կատարվող կազմակերպչական աշխատանքով, անհրաժեշտ ուշադրություն չի դարձնում սկզբնական կազմակերպություններին: Երբեմն փոխարինելով սովետական, տնտեսական օրգաններին, շրջկոմը միևնույն ժամանակ անբավարար է աշխատում ղեկավար կադրերին հանձնարարված գործի համար բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելու ուղղությամբ, թույլ է պայքարում կուսակցական պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման համար: Շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Խալաթովը բյուրոյի գործունեության մեջ չի ստեղծել գործարար մթնոլորտ, հաճախ շտապողական և մակերեսային վերաբերմունք է ցուցաբերում հարցերի լուծման նկատմամբ:

Մարզկոմի բյուրոն միանգամայն արդարացիորեն նշեց, որ այսուհետև այդպիսի պրակտիկայի հետ հաշտվել չի կարելի: Ընդունված որոշման մեջ մարզկոմը պահանջեց, որ շրջկոմն արմատապես փոխի իր աշխատանքի մեթոդները և որ Ալմա-Աթայի քաղկոմը նրան օգնի այդ գործում:

Ցանկանում ենք համառոտակի անդրադառնալ նաև հետևյալ հարցի վրա: ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան, այժմ շատ ձեռնարկություններ անցնում են պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի: Այս սիստեմն առավել լրիվ կերպով է արտահայտում



մեր ժամանակի պահանջները: Իհարկե, այն յուրաքանչյուր կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարի պարտավորեցնում է ստեղծագործաբար մոտենալ գործին, համարձակ և միաժամանակ զգույշ լինել եզրակացություններ և ընդհանրացումներ անելիս: Ղեկավար աշխատողների մեծ մասը գիտակցում է իր պատասխանատվությունը իր առջև ծառացած խնդիրների իրականացման համար: Բայց կան նաև այնպիսի աշխատողներ, որոնք իրենց այնքան էլ նեղություն չեն տալիս մտորումներով: Ամսագրի խմբագրությունն ստանում է նամակներ, որոնց հեղինակները պատմում են, որ առանձին ընկերներ, խոսքով պայքարելով պլանավորման ու տնտեսական խթանման նոր կարգի մասին, իրականում շարունակում են կառչել տնտեսական կյանքի ղեկավարման իրենց նախկին մեթոդներից. ընդունում են ինքնակամ, միանձնյա որոշումներ, որոնք ամրապնդված չեն լինում առաջավոր պրակտիկայով ու գիտական տվյալներով: Նման «տրադիցիաները» ոչինչ ընդհանուր չունեն աշխատանքի լենինյան ոճի հետ:

Որոշ տեղեր առաջվա պես չափազանց տարվում են ամեն տեսակի նիստերով ու խորհրդակցություններով: Որոշ կուսակցական կոմիտեներ գրեթե ամեն օր «ուղղություն» տալու համար հրավիրում են սկզբնական կազմակերպությունների քարտուղարներին, հասարակական ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարներին: Անհրաժե՞շտ է, արդյոք, դա: Շատ խորհրդակցությունների անօգտակարությունը երբեմն գիտակցում են հենց իրենք՝ կուսակցական կոմիտեի աշխատողները, բայց իրենց մեջ ուժ չեն գտնում դրանցից հրաժարվելու համար. դա նրանց ղեկավարման ոճն է, դա «տրադիցիա» է: Նիստերով ու խորհրդակցություններով տարվելն ունենում է բացասական շատ հետևանքներ և մասնավորապես տանում է դեպի կամպանիականություն: Բայց չէ՞ որ կամպանիականությունն անհամատեղելի է ղեկավարման լենինյան սկզբունքի հետ: Դա գործի նկատմամբ ոչ գիտական մոտեցում է:

Ինչպես տեսնում ենք, տրադիցիաների և նորարարության հարցը կուսակցական աշխատանքում վերջին հաշվով հանգում է աշխատանքի այնպիսի ձևերի ու մեթոդների ընտրության, որոնք թույլ են տալիս լավագույն ձևով լուծել կոմունիստական շինարարության խնդիրները, կենսագործել կուսակցության գլխավոր գիծը: Եվ բանն այստեղ ոչ թե նրանում է, որ նախապատվություն տրվի տրադիցիաներին կամ նորարարությանը, այլ նրանում, որ լավագույն տրադիցիաները հմտորեն զուգակցվեն նորարարության հետ:

Կուսակցական կազմակերպությունները պետք է ամեն կերպ զարգացնեն կոմունիստների մտքի պրպտունությունը, պաշտպանեն նրանց, ովքեր ձգտում են վերլուծել կուտակված փորձը, ովքեր ուղի են հարթում նորի, առաջավորի համար:

## ՆԱՅԵԼ ԱՌԱՋ, ԱՄԵՆ ԻՆՉ ՍՏՈՒԳԵԼ ՊՐԱԿՏԻԿԱՅՈՎ

Երբ խոսք է բացվում տրադիցիաների և նորարարության մասին, ապա յուրաքանչյուրի մեջ ծագում են անթիվ, բազմազան պատկերացումներ, նմանություններ, օրինակներ: Չէ՞ որ բացի հեղափոխական տրադիցիաներից, որոնք զգալի չափով որոշում են կուսակցության ներքին էությունը, նրա գործունեության մեթոդներն ու ձևերը, կան նաև ուրիշ շատ տրադիցիաներ՝ ազգային, կուլտուրական, զինվորական, աշխատանքային, կենցաղային և այլն: Դրանք բոլորն ստեղծվել են շատ թե քիչ երկար ժամանակի ընթացքում և իրենց զգալ են տալիս բավականին հաճախ, կարելի է ասել ամեն օր: Իսկ ինչ վերաբերում է նորարարությանը, ապա այն էլ դրսևորվում է ամենուրեք արտադրության, գիտական գործունեության, գրականության և արվեստի մեջ, հասարակական ասպարեզում:

Արդյոք այս տրադիցիաները և նորարարության դրսևորման բազմազան ձևերը որևէ առնչություն ունե՞ն կուսակցական աշխատանքի հետ: Անպայման ունեն: Կոմունիստական կուսակցությունը, հանդիսանալով ժողովրդի մի մասը, նրա մարտական ավանգարդը, հանդես է գալիս որպես սովետական հա-

սարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը: Հետևաբար, հասարակու-
թյան կյանքի բոլոր կողմերը, նրա մեջ տեղի ունեցող բոլոր երևույթներն ու
պրոցեսները կուսակցությունը չի կարող հաշվի չառնել մասսաները ղեկավա-
րելու իր գործունեության մեջ: Ավելին. քանի որ կուսակցության ղեկավար
դերը նոր հասարակական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց ան-
շեղորեն աճում է, ապա նա ավելի ու ավելի շատ է պարտավոր հաշվի նստել
այն ամենի հետ, ինչ տեղի է ունենում իրական կյանքում: Կուսակցությունն
ուշադրությամբ հետևում է, թե ինչ է կուտակվել և կուտակվում մասսաների
գիտակցության մեջ, նրանց կենցաղում ու հոգեբանության մեջ: Նա մեր ժո-
ղովուրդների մեջ ստեղծված կենդանի, առաջադիմական տրադիցիաներն օգ-
տագործում է կոմունիստական շինարարության շահերի համար: Հանուն այդ
նույն շահերի կուսակցությունը պաշտպանում է ամեն մի օգտակար նախա-
ձեռնություն, պաշտպանում է նրանց, ովքեր իրենց աշխատանքում որոնում ու
գտնում են նորը, ովքեր համարձակ են օգտագործում գիտության և առաջավոր
պրակտիկայի նվաճումները: Բայց նա դատապարտում ու մերժում է այն տրա-
դիցիաները, որոնք մեզ ետ են քաշում, խանգարում նոր կյանք կառուցելու:

Անցյալից մեզ մնացած ամեն բան չէ, որ մենք ընդունում ու պաշտպա-
նում ենք: Պետք է հիշել, որ հին, շահագործական կարգը շատ մարդկանց մեջ
մշակել է բազմաթիվ ամենավատ սովորություններ և սովորույթներ՝ երբեմն
անմարդկային ու դաժան: Հին կարգերի «խալերը» հաճախ երևան են գալիս
նաև մեր օրերում: Մեզ մոտ դեռ կան աշխատանքի նկատմամբ անբարեխիղճ
վերաբերմունքի, հարբեցողության, խուլիգանության, ժողովրդական բարիքի
յուրացման, կնոջ նկատմամբ անհարգալից վերաբերմունքի և այլ փաստեր:
Կուսակցությունն այդպիսի «ժառանգության» դեմ պայքարել է և կպայքարի
ամենավճռական կերպով:

Մեր երկիրը բազմազգ երկիր է: Յուրաքանչյուր ժողովուրդ ունի իր տրա-
դիցիաները, որոնք չի կարելի հաշվի չառնել կուսակցական ղեկավարությունն
իրականացնելիս: Եվ, այնուամենայնիվ, պետք է ուշադրությամբ կշռադատել,
թե դրանք ինչ տրադիցիաներ են, որտեղից են գալիս, ինչ նպատակի են ծա-
ռայում: Ինչպես հայտնի է, առանձին ժողովուրդներ ունեն կյանքի ու կենցաղի
ինչպես դրական, առաջադիմական, այնպես էլ բացասական, հետադիմական
ձևեր: Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են անցած դարե-
րից մնացած տրադիցիաներից ընտրել այն ամենը, ինչ ծառայում է մեր գոր-
ծին, և հանդես գալ այն ամենի դեմ, ինչ խանգարում է ժողովրդական մաս-
սաների սոցիալիստական գիտակցականության, ակտիվության ու ձեռներեցու-
թյան զարգացմանը: Մեր կուսակցությունը հետևողականորեն իրականացրել և
իրականացնում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների եղ-
բայրական բարեկամության սկզբունքը, վճռական պայքարել ու պայքարում
է շովինիզմի և նացիոնալիզմի դրսևորումների դեմ, բոլոր մարդկանց դաս-
տիարակում է հեղափոխական կոմունիստական վեհ իդեալների ոգով:

Անցյալից մնացածի քննադատական գնահատումն սկսվել է սովետական
իշխանության արդեն առաջին տարիներին: Հին հասարակարգի անտեսական
հիմքերի վերացումից հետո մենք սկսեցինք անցյալի գիրկն ուղարկել այդ հի-
մքերի վրա ստեղծված բազմաթիվ սովորություններ, սովորույթներ, բարոյա-
կան, էթիկական նորմաներ: Սկսեցին ձևավորվել նոր տրադիցիաներ: Ճիշտ
է, այս գործում եղան նաև չափազանց տարվելու փաստեր, ծայրահեղություն-
ներ: Որոշ կոմունիստներ խիստ միակողմանիորեն, նույնիսկ պրիմիտիվ ձևով
էին հասկանում անցյալի ժառանգությունը ոչնչացնելու և նորն արմատավո-
րելու խնդիրները: Կուսակցությունը, Լենինը հարկադրված եղան ուղղել այդ-
պիսի ընկերներին: Լենինը հետհոկտեմբերյան առաջին տարիներին մոդայա-
կան, արխիհեղափոխական ճոռոմաբանությանն ամենաանողոք հակահարված
էր տալիս: «Իսկական հեղափոխականի համար,—գրել է Լենինը,—ամենամեծ
վտանգը,— թերևս նույնիսկ միակ վտանգը,—հեղափոխականությունը չափա-
զանցնելն է, հեղափոխական պրիոմները տեղին ու հաջողությամբ կիրառելու
սահմանները և պայմանները մոռանալն է» (Երկեր, հատ. 33, էջ 114):



Նա գտնում էր, որ առանց տրադիցիաների, առանց այն բանը հաշվի առ-
նելու, թե ինչ է կատարվել անցյալում, չի կարելի ճիշտ աշխատել ներկայում,
չի կարելի կանխատեսել ապագան և պայքարել այդ ապագայի համար: Կոմե-
րիտմիության երրորդ համագումարում Լենինի արտասանած ճառը, Պլեխանովի
հոդվածի լուսանցքներում կատարած նրա նշումները բավականին պարզ պատ-
կերացում են տալիս այն մասին, թե մենք ինչպես պետք է օգտագործենք ան-
ցյալը, մասնավորապես կուլտուրական ժառանգությունը նոր հասարակարգ
կառուցելու համար:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները մեզ թողել են գաղափարական-տեսա-
կան մեծ ժառանգություն, մեծ պատգամներ: ՍՄԿԿ-ն իր աշխատանքը կառու-
ցում է Մարքսի—Էնգելսի—Լենինի ուսմունքի հիման վրա: Մտքի այդ տիտան-
ների գիտական հայտնագործությունները, նրանց ամբողջ կյանքն ու գործու-
նեությունն անգնահատելի հարստություն են մեր կուսակցության, մարքս-
լենինյան բոլոր մյուս կուսակցությունների համար: Դրանցում մարմնավորվում
են բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների լավագույն տրադիցիանե-
րը, արտահայտված է իսկական ստեղծագործական մոտեցումը հասարակու-
թյան կյանքի ու զարգացման կարևորագույն պրոբլեմների լուծմանը: Նրանց
օրինակին պետք է հետևեն կուսակցության բոլոր կադրերը: Կուսակցական,
պետական ու տնտեսական գործերի ղեկավարման լենինյան, խորապես գիտա-
կան մեթոդները պետք է դառնան յուրաքանչյուր ղեկավարի, յուրաքանչյուր
կոմունիստի միսն ու արյունը:

ՍՄԿԿ XXIII համագումարը, նրա որոշումները մեր կուսակցության ու ժո-
ղովրդի պանծալի մարտական տրադիցիաների կոնկրետ մարմնավորումն են,
իսկական նորարարության մարմնավորումը: Բոլոր կուսակցական կազմակեր-
պությունների, բոլոր կոմունիստների առջև անսահման հնարավորություններ
են ստեղծվում ստեղծագործական որոնումներ դրսևորելու, կոմունիստական
շինարարության մեջ նորանոր հաղթանակներ նվաճելու համար:

## ՀԱՆՁՆԱՐԱՐՎՈՂ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ՑԱՆԿ

Կ. ՄԱՐՔՍ և Ֆ. ԷՆԳԵԼՍ: Լուի Բոնապարտի բրյումերի տասնութը:
Ֆ. ԷՆԳԵԼՍ: Բանվոր դասակարգի դրությունն Անգլիայում (11-րդ բաժին):
Վ. Ի. ԼԵՆԻՆ: Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը (Եր-
կեր, հատ. 6):
Վ. Ի. ԼԵՆԻՆ: Բոյկոտի դեմ (Երկեր, հատ. 13):
Վ. Ի. ԼԵՆԻՆ: Ռուսական հեղափոխության գնահատականի շուրջը (Երկեր,
հատ. 15):
Վ. Ի. ԼԵՆԻՆ: Նամակներ տակտիկայի մասին (Երկեր, հատ. 24):
Վ. Ի. ԼԵՆԻՆ: Երիտասարդության միությունների խնդիրները (Երկեր, հատ. 31):
ՍՄԿԿ ծրագիրը (Առաջին մաս, I, II, VII բաժիններ, երկրորդ մաս, III, IV,
V, VII բաժիններ):
ՍՄԿԿ կանոնադրությունը:
ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումների նյու-
թերը:
ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը:

«Партийная жизнь», № 9, 1966 г.

# ԿՈՒՍՇՐՋԿՈՄԻ ՓՈՍՏԸ

Պ. ՍԱՖՅԱՆ

«Մենք, Լոր գյուղի կոլտնտեսականներս, կուսակցության շրջանային կոմիտեին տեղյակ ենք պահում այն մասին, որ արտելի նախագահ Վաղարշակ Մարտիրոսյանը իր պարտականությունների կատարման գործում թույլ է տալիս կոպիտ սխալներ ու թերություններ։ Նա չի հետևում աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, հաշվի չի առնում տնտեսության մյուս ղեկավարների կարծիքները, անբավարար է զբաղվում կերի կայուն բազայի ստեղծման, շռայլումների դեմ պայքարի հարցերով։ Այդ հասցրել է նրան, որ մթերքների արտադրությունը չի ավելանում, ցածր են մեկ աշխօրին տրվող եկամուտները, որի հետևանքով ավելանում է գյուղից հեռացողների թիվը...»։

Կուսշրջկոմին հասցեագրած այս նամակը ստորագրել էին արտելի մի խումբ անդամներ։ Փաստերի ճշտությունը կասկած չէր հարուցում։ Պահանջվում էր արագ միջամտել գործին։

Ճիշտ է, շրջկոմին որոշ չափով հայտնի էր, որ Լորի տնտեսությունում գործերն այնքան էլ լավ չեն, որ թերություններ ունի նաև արտելի նախագահը, բայց մենք այն կարծիքին էինք, որ դրանք առանց կազմակերպական միջամտության, եթե ոչ մեկ, ապա երկու տարում կվերացվեն։ Մանավանդ, Կուսակցության շրջանային կոմիտեն ու արտադրական վարչությունը Լորու տնտեսությունը՝ որպես ետ մնացողի, պահում էին ուշադրության կենտրոնում։

Կուսակցության շրջկոմի և արտադրական վարչության աշխատողներից կազմված հանձնաժողովը մանրամասնությամբ ուսումնասիրեց տնտեսության վիճակը։ Այնուհետև Լոր մեկնեց նաև շրջկոմի երկրորդ քարտուղարը։ Պարզվեց, որ նամակում բերված փաստերը համապատասխանում են իրականությանը։ Նախագահն ազատվեց աշխատանքից։

Ովքե՞ր են նամակի հեղինակները։ Նրանք ազնիվ քաղաքացիներ են, մտահոգված հարազատ կոլտնտեսության գործերով, պայքարում են նրա կազմակերպական—տնտեսական ամրապնդման համար։ Ահազանգելով շրջկոմին, նրանք կատարել են հայրենասիրական գործ։

Իսկ քանի՜-քանի այդպիսի նամակներ է ստանում կուսշրջկոմը։ Միայն 1965 թվականին դրանց թիվը հասել է 922-ի, իսկ այս տարվա առաջին կիսամյակում 236-ի։ Կուսշրջկոմին գրում են կոմունիստներ, ղեկավար աշխատողներ, շարքային բանվորներ, կոլտնտեսականներ ու ծառայողներ, անգամ



դպրոցականներ։ Նրանց մի մասին գրել են ստիպում հանրային արտադրության, մյուսին՝ կուլտուրական շինարարության կամ անձնական հարցերը, ոմանք քննադատում են թերություններն ու սխալները, ոմանք էլ ձաղկում մեր կյանքում դեռևս պահպանված խորթ երևույթները։

Կուսակցության Սիսիանի շրջանային կոմիտեն, նրա աշխատողները մեծ նշանակություն են տալիս աշխատավորների նամակներին ու դիմումներին։

Ներքևից բարձրացվող հարցերը ցայտուն արտահայտում են մասսաների ստեղծագործական նախաձեռնությունն ու ինքնագործունեությունը, սովետական հասարակարգի ամրապնդման մասին նրանց ունեցած հոգատարությունը, արտացոլում կյանքի երևույթները, ժողովրդի հարուստ կենսափորձը, աշխատավորների նվիրական խոհերն ու տրամադրությունները։ Նամակներն ու բողոքները ժողովրդի հետ կապի լավագույն ձևերից են։ Ահա թե ինչու կուսակցության շրջանային կոմիտեն մեծ տեղ է տալիս դրանց ուսումնասիրմանը, բարձր գնահատում օբյեկտիվ և անաչառ դիրքերից գրված նամակների հեղինակներին։

Կոմունիստներից, աշխատողներից ստացվող նամակները, գանգատները և բողոքները համարելով առօրյա կյանքի մասին ինֆորմացիայի կարևոր աղբյուր, մասսաների հետ կապի բազմապիսի ձևերից մեկը, մենք դրանց ընդունման, մշակման և ընթացք տալու պատշաճ կարգ ենք սահմանել։

Նամակներն ու գանգատներն ուշադրությամբ ուսումնասիրելու, հեղինակներին ժամանակին պատասխան տալու նպատակով սահմանված են դրանց ուսումնասիրման կայուն օրեր (շաբաթը երկու անգամ), որը մեզ մոտ ընդունված է անվանել «քարտուղարի փոստի օր»։ Իհարկե, դա չի նշանակում, որ շաբաթվա մյուս օրերին չենք զբաղվում աշխատավորների նամակներով։ Եթե նամակում բարձրացված հարցը հրատապ ու անհետաձգելի է, դրանով զբաղվում ենք անմիջապես, երբեմն այդ գործը հանձնարարելով առանձին աշխատողի։

Կուսշրջկոմի քարտուղարը ուսումնասիրելով փոստը, ընթացք է տալիս նամակներին, հիմնականում դրանք ուղարկում է բաժիններին, իսկ մնացածը՝ սովետական, տնտեսական և այլ կազմակերպությունների ղեկավարներին։

Մնացած նամակներին ու բողոքներին ընթացք է տրվում կուսշրջկոմի բաժիններում՝ համապատասխան քարտուղարի ղեկավարությամբ։ Առանձին դեպքերում նամակների ստուգման արդյունքներին տեղյակ են պահում շրջկոմի առաջին քարտուղարին, իսկ առավել լուրջ հարցեր պարունակող նամակների կամ բողոքների ստուգման արդյունքների մասին ինֆորմացիա է տրվում բյուրոյին՝ կոլեգիալ քննարկման համար։

Նամակներն ու բողոքները սովորաբար քննարկվում են տեղերում, այդ գործին մասնակից անելով ինչպես կուսշրջկոմի պատասխանատու աշխատողներին (սկսած հրահանգիչներից մինչև քարտուղարները) այնպես էլ պարտիական, սովետական և տնտեսական ակտիվին։ Հեղինակներին պատասխանում են գրավոր կամ բանավոր։

Ստացվող նամակները տարբեր բովանդակության և բնույթի են։ Դրանք մեծ մասամբ շոշափում են աշխատավորների ընդհանուր հասարակական շահերը։ Սակայն, լինում են նաև անձնական գանգատներ։ Ինչպես ցույց են տալիս վերլուծությունները, նամակների մեծ մասը վերաբերում է շրջանի էկոնոմիկայի, մասնավորապես գյուղատնտեսության զարգացմանը։

Առաջ քաշվող հարցերը վկայում են, որ բանվորներին, կոլտնտեսականներին և ինտելիգենցիային ամենից շատ մտահոգում են շրջանի ինչպես էկոնոմիկայի զարգացման, այնպես էլ ժողովրդի բարեկեցության բարձրացման հարցերը:

Դեռևս երկու տարի առաջ Աղուդիի եռ մնացող կոլտնտեսության մի խումբ անդամներ, շրջկոմին գրած իրենց նամակում մի շարք առաջարկությունների հետ միասին, դրել էին ջրամբար կառուցելու հարցը: Նրանց նպատակն էր կոլտնտեսությունը հասցնել առաջավորներին: Հարկ եղավ, Որոտանի ոռոգման սիստեմի աշխատողների հետ լինել տեղում, հարցն ուսումնասիրել նամակի հեղինակների ներկայությամբ:

Ուսումնասիրությունները ցույց տվին, որ բարձրացված հարցերը տեղին են և դրանց լուծումը տնտեսական մեծ օգուտ կտա: Աղուդիի ջրամբարի կառուցումն արդեն ավարտված է. ընթացիկ տարում այն կգործարկվի: Ջրամբարը հնարավորություն կընձեռի ո՛չ միայն ոռոգելու օգտագործվող հողատարածությունները, այլև յուրացնելու շուրջ 60 հեկտար խոպան:

Սիսիանի սովխոզի մեջ միավորված Ույ, Աշոտավան, Տոլորս գյուղերից բազմաթիվ նամակներ էին ստացվում այն մասին, որ այդ տնտեսությունը շատ մեծ, նրա չորս տեղամասերն իրարից հեռու են, որը դժվարացնում է ղեկավարումը: Պարզվեց, որ նամակներում նշված փաստերը համապատասխանում են իրականության. ավելին, սովխոզի կազմի մեջ մտած նախկին չորս տնտեսությունները մինչև միավորումն ավելի շատ համախառն արտադրանք էին տալիս, քան դրանից հետո: Անհրաժեշտ եղավ տնտեսությունը ապախոշորացնելու համար դիմել հանրապետության կառավարությանը և հարցը լուծվեց դրականորեն: Սիսիանի նախկին մեկ սովխոզի բազայի վրա ստեղծվեց երկուսը, որոնք այժմ լավագույն ցուցանիշներ ունեն:

Նամակների երկրորդ խումբը գրված են պաշտոնատար, ղեկավար անձանց մասին: Իհարկե, դրանք միայն քննադատական նամակներ չեն: Քիչ չեն այնպիսիք, որոնց մեջ շարքային մարդիկ գրվատանքի խոսք են ասում իրենց հիմնարկի, ձեռնարկության պետի, տնտեսության ղեկավարի մարդասիրական, հոգատար վերաբերմունքի և այլ դրական գծերի մասին: Այդպիսի նամակներ հաճախ են ստացվում Գետաթաղ գյուղից: Նամակների հեղինակները կոլտնտեսությունը առաջավորներին հասցնելը կապում են կոլտնտեսության վարչության նախագահ, կոմունիստ Գ. Առուստամյանի հետ: Սակայն քիչ չեն այն նամակները, ուր քննադատվում են իրենց պարտականությունների մեջ թերացող, աշխատողների նկատմամբ անվայել վերաբերմունք ցուցաբերող, պետության միջոցները շռայլող ու այլ արարքներ թույլ տվող ղեկավարները:

Այստեղ արդեն կուսակցության շրջկոմի աշխատողներն ավելի ուշիմ և զգույշ են: Չսխալվելու համար ամենայն հոգատարությամբ ուսումնասիրում են հարցը: Պատահում է այնպես, և դա եզակի չէ, որ հիմնարկի պետը կամ ղեկավար աշխատողը մի քանի մարդկանց «նեղացրել» է, աշխատանքից ուշանալու համար տուժարկել, պահանջել է պատճառած նյութական վնասը վերականգնել և այլն: Եվ ահա նրանք սկսել են գրել...

Այս տիպի նամակները շատ են: Ահա դրանցից մեկը: Ուռուտի դպրոցի ուսուցիչ Քյամրան Գյանջալիևը դիմել էր ՀԿԿ Կենտկոմ, հանրապետության լուսավորության մինիստրություն, կուսակցության շրջանային կոմիտե, հանրապետական համարյա բոլոր թերթերին, որ իբր, դպրոցի դիրեկտոր Սահիբ Գու-



լիևը կոպտում, վիրավորում է ո՛չ միայն իրեն, այլև մյուս ուսուցիչներին, որ նա նյութական վնաս է հասցրել իր կնոջը, պակասեցնելով նրա դասաժամերը, չի հետաքրքրվում ուսումնա-դաստիարակչական աշխատանքներով, խժռում է պետության միջոցները և այլն: Մի քանի անգամ շրջկոմի, ժողկրթբաժնի ղեկավարները եղան դպրոցում, ամենայն մանրամասնությամբ ստուգեցին բարձրացված հարցերը, հրավիրեցին մանկավարժական խորհրդի նիստ. բոլոր ուսուցիչներն ապացուցեցին, որ ընկ. Գյանջալիևը զրպարտում է դպրոցի դիրեկտորին, որ փաստերը հորինված են: Թվում էր, թե հարցը լուծված է: Սակայն մի քանի շաբաթից հետո Գյանջալիևը նորից շարունակեց վերադաս օրգանները հեղեղել իր անհիմն նամակներով: Հարկ եղավ նրա նկատմամբ կիրառել կարգապահական միջոցներ:

Սակայն ստացված նամակների գերակշռող մասը միշտ ելնում է ռեալ իրականությունից և որոշ ճշտություն է պարունակում: Ղեկավարի ամեն մի սխալ քայլը, ոչ ճիշտ գործունեությունը, սուբյեկտիվ մոտեցումը աշխատողների նկատմամբ, պաշտոնն ի չարը գործադրելը ոչ միայն հեղինակազրկում է, այլև կասկածի տակ է դնում ղեկավար աշխատողի, պարտիական և սովետական կազմակերպությունների ճիշտ գործունեությունն ընդհանրապես:

Այսպես, անցած մի քանի ամսում մսամթերման գրասենյակի պետ Մ. Օհանյանի մասին մի քանի նամակներ էին ստացվել, որոնցով հայտնվում էր, որ նա չի ապահովում գործի նորմալ ընթացքը, հաճախ խմում է, չի ունկնդրում աշխատողների ձայնին, նրանց խելացի դիտողությունները հաշվի չի առնում: Մինչ նամակները կուսակցության շրջկոմի աշխատողներին հայտնի էին նշված թերությունները և Ս. Օհանյանին զգուշացրում էր արվել: Բայց, ինչպես երևում է, նա կուսակցության շրջկոմի մեծահոգությունն ընդունել է որպես «հովանավորություն» և շարունակել ղեկավարել «իր ձևով»:

Այլևս հանդուրժել չէր կարելի: Հարկ եղավ Ս. Օհանյանին տեղափոխել այլ աշխատանքի:

Կուսշրջկոմը մեծ ուշադրություն է նվիրում անձնական նամակներին ու բողոքներին: Դրանց հեղինակները հաճախ իրավացի են. նրանք մատնանշում են այս կամ այն հիմնարկի, կազմակերպության ղեկավարի անբավարար աշխատանքը, նրա անհոգի, բյուրոկրատական վերաբերմունքը:

Անգեղակոթից ՍՄԿԿ անդամ, անասնաբույժ-տեխնիկ Արամ Թադևոսյանը շրջանային կոմիտեին էր դիմել, որ ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշման համաձայն ինքը պետք է վարձատրվի կոլտնտեսության նախագահի աշխատավարձի 65 տոկոսի չափով, բայց վարչությունը և նախագահը հրաժարվում են այդչափ վճարել: Շրջկոմի միջամտությունից հետո միայն լուծվեց Ա. Թադևոսյանի աշխատավարձի հարցը:

Շրջանային բուժմիավորման հավաքարարուհի Նուշիկ Օհանյանն իր հիվանդության վերաբերյալ համապատասխան բյուլետեն է ներկայացնում: Սակայն բուժմիավորման ադմինիստրացիան անհիմն կերպով նրան ազատում է աշխատանքից՝ «անհարգելի պատճառով աշխատանքից ուշանալու համար»:

Չնայած Օհանյանը բազմիցս դիմում է հիմնարկի արհմիութենական կազմակերպությանը, գլխավոր բժշկին, անգամ դատարան, բայց ապարդյուն: Շրջկոմի միջամտությունից հետո միայն նրա իրավունքները վերականգնվեցին: Նման անհոգի, բյուրոկրատական վերաբերմունքի համար վերը նշված մարդիկ և կազմակերպությունները խիստ զգուշացվեցին:

Կուսշրջկոմը երբեմն ստանում է նաև անանուն նամակներ, որոնց թիվը, բարեբախտաբար պակասում է։ Եթե 1964 թվականին շրջկոմն ստացել էր 49 անանուն նամակ, ապա 1965 թվականին դրանց թիվը 40-ից չանցավ։ Այդ բանին նպաստել է տեղերում սկզբնական կուսակցական կազմակերպությունների, շրջանի կուսակցության ակտիվի բացատրական աշխատանքը։ Տարիների փորձը ցույց է տվել, որ անանուն նամակները կամ դիմումները, հիմնականում, իրականությանը չեն համապատասխանում. դրանք հորինում են այն մարդիկ, որոնք ավելի շատ մտահոգված են այս կամ այն մարդուն, հիմնարկին արատավորելու, զրպարտելու, քան թերություններն ու սխալները շտկելու։

Դեռևս անցյալ տարի Շաքի գյուղից մի շարք անանուն նամակներ էին ստացվել կոլտնտեսության նախագահ Վ. Հայրապետյանի հասցեին։ Ուսումնասիրություններից պարզվեց, որ նամակներում բերված «փաստերը» չեն համապատասխանում իրականությանը։

Այդպիսի օրինակները շատ են։ Դրանք մեզանից շատ ժամանակ են խլում, շեղում կարևոր հարցերից։

Սակայն, հարկ եղած դեպքում, առանց ավելորդ աղմուկի կամ հանձնաժողովի, ուսումնասիրվում է անանուն նամակների իսկությունը։ Բոլոր անանուն նամակներին չէ, որ պետք է ուշադրություն դարձնել։ Դրանք հիմնականում պետք է անհետևանք թողնել։

Լինում են նաև կեղծ ստորագրություններով նամակներ։ Վաղուտի կոլտնտեսության նոր նախագահ Գ. Պետրոսյանի հասցեին միշտ նույն ստորագրություններով նամակներ էին ստացվում։ Ստորագրողները «հաստատում էին», որ նա, իբր, աշխատանքը չի կարողանում գլխավորել, թույլ է տալիս շռայլումներ, վատնումներ։ Մինչդեռ Գ. Պետրոսյանը շնորհալի աշխատող է։ Բայց քանի որ նամակը ստորագրությամբ էր, հարկ եղավ ստուգել։ Բոլորը հրաժարվեցին իրենց ստորագրություններից, դատապարտեցին այդ կեղծիքը։

Կուսակցության շրջանային կոմիտեում վերջ է տրված այն սխալ պրակտիկային, երբ նամակները կամ բողոքները քննարկման էին ուղարկվում այն հիմնարկներին և ղեկավարներին, որոնց անօրինականությունների կամ սխալների մասին բողոքարկվում է։

Հաճախ պատահում է այսպես. նամակների հեղինակները տնտեսական և մյուս օրգաններին ներկայացնում են անհիմն, նույնիսկ անօրինական պահանջներ։ Այս դեպքում շրջկոմի հրահանգիչները կամ բաժնի վարիչներն ու քարտուղարները ավելորդ չեն համարում նրանց հետ զրուցել, բացատրել խնդրանքի անիրագործելի լինելը։ Այսպես, Աշոտավան և Տոլորս գյուղերի մի խումբ բնակիչներ իրենց համագյուղացիների անունից պահանջում էին (Տաթևգէսի շինարարության կապակցությամբ այդ գյուղերը մնում են ջրի տակ) թույլ տալ տեղափոխվելու Սիսիան ավանի աջափնյակը։

Հարկ եղավ լինել տեղերում, զրուցել բնակիչների հետ, բացատրել, որ տվյալ վայրը տեղափոխվելը ձեռնտու չէ, որ լուրջ դժվարություններ կստեղծվեն սովխոզի հողատարածությունները մշակելու, անասուններին ամառային արոտավայր տանելու համար։ Մարդիկ համոզվեցին, որ իրենց պահանջները հիմնավոր չեն։

Աշխատավորներից ստացվող նամակներին, դիմումներին ու բողոքներին ընթացք տալու գործում կան լուրջ թերություններ։ Միշտ չէ, որ շրջկոմի աշխատողները ուշադրությամբ են ուսումնասիրում այս կամ այն նամակը, խո-



րամուխ լինում առաջ քաշված հարցերի մեջ, գործնականություն հանդես բերում դրանց նկատմամբ։ Այսպիսի փաստի առաջ կանգնեցինք անցյալ տարի։ Սալվարդ գյուղում, կուսակցության շրջկոմի երաշխավորությամբ, կոլտնտեսականները նախագահ ընտրեցին երիտասարդ մասնագետ Զավեն Մարտիրոսյանին։ Սկզբում նա կարողացավ, ինչպես ասում են, տնտեսությունն իր ձեռքը վերցնել։ Ավելացավ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, արտելում ամրապնդվեց կարգապահությունը, կրճատվեցին անասունների կորուստները, զգալիորեն աճեցին աշխօրերի դիմաց բաշխվող եկամուտները։ Շրջկոմի պլենումներում, ակտիվի խորհրդակցություններում դրվատում էին Զ. Մարտիրոսյանին, պահանջում մյուսներից հետևել նրա օրինակին։ Այս բոլորից ընկ. Մարտիրոսյանը մեծամտացավ։

Զ. Մարտիրոսյանին թվաց, որ հաջողությունները միայն իր աշխատանքի արդյունքն են, որ դրանում պարտկազմակերպությունը, գյուղական սովետը, մյուսները բաժին չունեն։ Նա կարևոր հարցերը լուծում էր միանձնյա, որը հաճախ լուրջ թերությունների էր հանգեցնում։ Եվ ահա նրա հասցեին տեղացին ինչպես անստորագիր, այնպես էլ ստորագրված նամակներ, բողոքներ։ Կուսակցության շրջկոմի աշխատողները նույնպես չնկատեցին, թե ինչպես փոխվեց նա, կորցրեց ղեկավարի իր դեմքը։ Շրջկոմի աշխատողներից ոմանք չէին հավատում նամակներին և հեգնանքով էին խոսում դրանց հեղինակների մասին։

Տնտեսության ձեռք բերած ցուցանիշները աստիճանաբար նվազեցին, համարյա հասան նախկինի մակարդակին։ Այս ամենից հետո միայն շրջկոմը զբաղվեց Սալվարդի կոլտնտեսության հարցով, բայց արդեն ուշ էր։ Կոլտնտեսության ընդհանուր ժողովը միաձայն որոշեց նախագահին ազատել աշխատանքից։

Եթե կուսակցության շրջանային կոմիտեն, նրա աշխատողները զգոն լինեին, ապա այսպիսի վիճակ չէր ստեղծվի և թերություններն ու բացերը ժամանակին կկանխվեին։

Կան դեպքեր, երբ քաղաքացին իրեն հուզող հարցերով դիմում է գյուղական և շրջանային այլ կազմակերպությունների, բայց վերջիններս ականջի ետև են գցում և նա ստիպված դիմում է կուսշրջկոմին։ Այսպես, Լեռնաշեն գյուղից Իսկուհի Ասատրյանի ամուսինն ավտովթարից մեռնում է։ Նրա խնամքին մնում են յոթ երեխա։ Իսկուհու առջև դժվարություններ են ծառանում։ Նա բազմիցս դիմում է գյուղի ղեկավարներին, այնուհետև պարտիայի շրջանային կոմիտեին՝ խնդրելով տեղավորել իրեն որևէ աշխատանքի։ Միայն երրորդ դիմումից հետո է նրա խնդրանքը կատարվում։

Թերությունների մասին կարելի է շատ խոսել, բայց բավարարվենք նշվածով... Այս ամենը կուսակցության շրջանային կոմիտեից, նրա աշխատողներից հրամայաբար պահանջում են՝ առաջիկայում է՛լ ավելի բարելավել աշխատանքն այդ բնագավառում, քանի որ ուշադրությունը, հոգատարությունը ստացված նամակի, բողոքի նկատմամբ, ուշադրություն և հոգատարություն է կոմունիստի, յուրաքանչյուր քաղաքացու, նրանց բարձրացրած հարցերի նկատմամբ։





# ՓՈՐՁԻ ՓՈԽԱՆԱԿՈՒՄԸ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԻ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆՆ Է

Զ. ՊԱՊՅԱՆ

*Տեխնիկական պրոգրեսի համար մղվող պայքարում առանձնապես մեծ է կուսակցական կազմակերպությունների դերը։ Նրանք կոչված են ամեն կերպ զարգացնելու մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, ղեկավարելու արտադրության կատարելագործման ու զարգացման համար ծավալված սոցիալիստական մրցությունը։*

*Յոթնամյակի տարիներին հանրապետության կուսակցական կազմակերպություններն ավելի հմտորեն գլխավորեցին արտադրական կոլեկտիվների պայքարը՝ տեխնիկական առաջընթացի համար, խրախուսեցին առաջավոր կոնստրուկտորներին և տեխնոլոգներին, գյուտարարներին ու ռացիոնալիզատորներին, վճռականորեն պայքարեցին տեխնիկական քարացածության, ինքնահանգստացման տրամադրությունների և մեծամտության դեմ։*

*Սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում կոմունիստական կուսակցությունը բազմազան ձևեր է օգտագործել բանվորներին տեխնիկական հայտնագործությունների ակտիվ մասնակիցը դարձնելու համար։ Վ. Ի. Լենինը ժամանակին մատնանշել է տաղանդների բուռն ծաղկումը նոր հասարակարգի կառուցման ընթացքում։ Նա ջերմորեն ողջունել է ռացիոնալիզատորներին ու գյուտարարներին. «...տասնյակ միլիոնավոր ստեղծագործողների խելքն ստեղծում է ինչ-որ անչափելիորեն ավելի բարձր բան, քան ամենամեծ ու հանճարեղ նախատեսումը» (Երկեր, հ. 26, էջ 581)։*

*Չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ ներկայումս Սովետական Միությունում օր չի լինում, որ չծնվի որևէ նոր նախաձեռնություն, շարժում՝ հանուն աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, որակի բարձրացման, տեխնիկական պրոգրեսի արագացման։*

*Ահա թե ինչու տարեցտարի ավելանում է գյուտարարների թիվը, բազում ռացիոնալիզատորական առաջարկություններ են ներդրվում արտադրության մեջ։ Այսպես, եթե 1958 թվականին արվել է 12,7 հազար ռացիոնալիզատորական առաջարկություն, ապա 1964 թվականին այն հասել է 16,8 հազարի։ Այդ նույն ժամանակահատվածում՝ արտադրության մեջ ներդրված առաջարկությունները 7,5 հազարից հասել են 11,7 հազարի։ Միայն Երևանի ձեռնարկություններում 1965 թվականին նոր տեխնիկայի արմատավորման ասպարեզում*



*իրականացվել է 314 կարևորագույն միջոցառում, որից 90-ը նոր տեսակի արտադրանքի յուրացման գծով։*

*Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում գործում են նորարարների և ռացիոնալիզատորների դպրոցներ ու խորհուրդներ, առաջավոր փորձի ու նոր տեխնիկայի համալսարաններ և լեկտորիումներ, պարբերաբար տեղի են ունենում նորարարների և ռացիոնալիզատորների հավաքներ։*

*Հանրապետական Գիտելիք ընկերությունը նույնպես ակտիվ մասնակցում է արտադրական առաջավոր փորձի տարածմանն ու տեխնիկական գիտելիքների պրոպագանդմանը։ Ընկերությունը սիստեմատիկաբար կազմակերպում է տեխնիկական պրոգրեսի շաբաթներ ու տասնօրյակներ, դասախոսությունների ու կոնֆերանսների ցիկլեր, կինոլեկտորիումներ։ Ձեռնարկություններում հաջող են անցնում արտադրության հատուկ հարցերին նվիրված սեմինարները։ Հայէլեկտրամեքենաշինական և ավտոդողերի գործարաններում աշխատող Գիտելիք ընկերության մի խումբ անդամներ՝ հանրապետության Տեխնիկայի տան հետ մեկտեղ կազմակերպել են գիտատեխնիկական սեմինարներ, ուսումնասիրվել են աշխատանքի տեխնոլոգիական նախապատրաստման ու կազմակերպման հարցերը, նշվել կոնկրետ միջոցառումներ, որոնք կարճ ժամանակամիջոցում իրականացվել են։*

*Գիտատեխնիկական խորհուրդներն ու գիտահետազոտական ինստիտուտները, կուսակցական կազմակերպությունների օգնությամբ, գիտական միտքն ուղղում են տեխնիկական պրոգրեսի ասպարեզում կուսակցության առաջադրած խնդիրների լուծմանը։ Գիտատեխնիկական խորհուրդների նիստերում լսվում են ռացիոնալիզատորների, արտադրության նորարարների ինֆորմացիաներն ու զեկուցումները։ Ուսումնասիրվում և ընդհանրացվում են աշխատանքի առաջավոր մեթոդները համանման ձեռնարկություններում, հաղորդումներ են լսվում միութենական և արտասահմանյան տեխնիկական նորությունների մասին և այլն։*

*Այսպիսով, հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել արտադրության առաջավոր փորձի ուսումնասիրման, տարածման և արմատավորման ուղղությամբ։ Սակայն, այդ գործում դեռևս վրիպումներ, բացեր կան։ Լուրջ թերություն է այն, որ աշխատանքի շատ արժեքավոր մեթոդներ չեն կիրառվում պրակտիկայում։ Առաջավոր փորձի արմատավորումը ետ է մնում կյանքից, չի համապատասխանում կուսակցության առաջադրած պահանջներին։ Ավելին. առաջավոր փորձի պրոպագանդման և նրա պրակտիկ կիրառման միջև գոյություն ունի անհամապատասխանություն։ Այդ առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան (1964) պլենումի որոշման մեջ ասված է. մեզ մոտ գերակշռում է պրոպագանդայի պասիվ ձևը։ Գիտության նվաճումների և առաջավոր փորձի պրոպագանդման այդ ձևն ունի այն թերությունը, որ կրում է ոչ թե հարձակողական, այլ լուսավորական բնույթ, գործը չի հասցվում մինչև վերջ, մինչև նորի արմատավորումը արտադրության մեջ։*

*Իրականում կուսակցական կազմակերպությունները հաճախ առաջավոր փորձի պրոպագանդան սահմանափակում են միայն ժողովներով, դասախոսություններով, զեկուցումներով, արտադրության առաջավորների ու նորարարների հանդիպումներով։ Իսկ այդ բոլորից հետո պատշաճ կազմակերպական աշխատանք չի ծավալվում նորը, առաջավորը արտադրության մեջ ներ-*

դնելու համար, որի հետևանքով էլ աշխատանքի մի շարք նոր ձևեր մոռացության են տրվում։

Առաջավոր փորձի պրոպագանդայում չի կարելի հույսը դնել ինքնահոսի վրա, սպասել, որ ամեն մեկը յուրովի ընկալի նոր մեթոդները։ Այստեղ պետք է երևա պարտկազմակերպությունների ու տնտեսավարների կազմակերպող ու ղեկավարող դերը, նրանք պետք է լայն աշխատանք ծավալեն և համապատասխան պայմաններ ստեղծեն առաջավոր փորձի կիրառման համար։

Նորի արմատավորմամբ առաջին հերթին պետք է զբաղվեն տնտեսական ղեկավարները։ Առանձին վարչությունների, գերատեսչությունների և մինիստրությունների դերն ավելի մեծ է, քանի որ նորը, առաջավորն իրենց գերատեսչության սահմաններում պրոպագանդելու համար նրանք ունեն և՛ որակյալ կադրեր, և՛ վարչական իրավունքներ։

Կենսագործելով տեխնիկական պրոգրեսի վերաբերյալ Սովետական Միության կոմունիստական կուսակցության և նրա Կենտկոմի որոշումները, Երևանի արդյունաբերական ձեռնարկությունների ու կառույցների կուսակցական կազմակերպությունները լուրջ գործ են կատարում աշխատանքի առաջավոր մեթոդների ուսումնասիրման, պրոպագանդման ու արմատավորման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ։

ՍՄԿԿ XXI համագումարի նախօրյակին աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությամբ ծնունդ առան սոցիալիստական մրցության նոր ձևեր. դրանցից է կոմունիստական աշխատանքի բրիգադայի և հարվածայնի կոչում նվաճելու համար սկսված շարժումը, որը հետզհետե լայն ծավալ է ստանում։ Արդեն 1965 թվականին հանրապետությունում կոմունիստական աշխատանքի շարժման մեջ ընդգրկված էին ավելի քան 160 հազար մարդ։ Մրցության մեջ են մտնում նաև ձեռնարկությունների կոլեկտիվներ։ Երևանում այդ արժեքավոր նախաձեռնության պիոներներն են Կիրովի անվան, ալյումինի, հայէլեկտրամեքենաշինական գործարանների կոլեկտիվները։

Առաջավոր փորձի պրոպագանդման ուղղությամբ կազմակերպական և քաղաքական աշխատանքի նշանակալից փորձ է կուտակել № 1 կարի ֆաբրիկայի կուսակցական կազմակերպությունը։ Այստեղ ողջ պրոպագանդան ուղղված է արտադրության զարգացման խնդիրներին։ Ֆաբրիկայում հաճախ տեղի են ունենում նորարարների ու ռացիոնալիզատորների կոնֆերանսներ։

Պրակտիկա են դարձել արտադրության առաջավորների պարբերական հավաքները։ Բազմակողմանի պրոպագանդվում են տեխնիկական գիտելիքները։ Կուսբյուրոյի նիստերում և կուսակցական ժողովներում սիստեմատիկաբար քննարկվում են առաջավոր փորձի պրոպագանդայի և նոր տեխնիկայի արմատավորման հարցեր։ Այդ զգալիորեն բարձրացրել է ֆաբրիկայի բանվորների ստեղծագործական ակտիվությունը և նպաստել բարոյական խթանների զարգացմանը։ Կոլեկտիվում կան շատ ռացիոնալիզատորներ և արտադրության նորարարներ, կոմունիստական աշխատանքի բրիգադներ, որոնք գործում են օրինակելի մեթոդներով։

«Արդի պայմաններում կուսակցական պրոպագանդայի խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ մեծ նշանակություն է տրվում կուսակցական պրոպագանդան արտադրության զարգացման խնդիրների հետ զուգակցելուն։ Դասախոսությունները, զեկուցումները, զրույցները, ցուցադրական ագիտացիան պետք է սերտորեն կապել առաջավոր փորձի պրոպագանդման հետ։



Մասսայական-քաղաքական աշխատանքում հարկ է լայնորեն կիրառել առաջավորի պրոպագանդման այնպիսի նոր ձևեր ու մեթոդներ, ինչպիսիք են տեխնիկական պրոգրեսի և առաջավոր փորձի համալսարանները, գիտատեխնիկական կոնֆերանսներն ու սեմինարները, բանավոր ամսագրերը, թեմատիկ երեկոները, արտադրության առաջավորների, նորարարների հավաքները։ Տեխնիկական պրոգրեսը պետք է պրոպագանդել նաև նորարարների, տեխնիկայի, կոմունիստական աշխատանքի բրիգադայի օրերի անցկացման, ինչպես և դասախոսություն-զրույցների, էքսկուրսիաների, կոնսուլտացիաների, կիրակնօրյա ընթերցումների ու կինոլեկտորիումների միջոցով։

Աշխատավորների տեխնիկական գիտելիքների հարստացման գործում որոշակի տեղ է գրավում դասախոսական պրոպագանդան։ Կիրովականի Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատում ութերորդ տարին է, ինչ հասարակական հիմունքներով գործում է 25 հոգուց բաղկացած դասախոսական խումբը։ Նրանց մեջ կան արտադրության նորարարներ և առաջավորներ, բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ ընկերներ։ Այստեղ լսվել են գիտության ու պրակտիկայի նորագույն տվյալներով հագեցած դասախոսություններ՝ սինթետիկ կորունդի տեխնոլոգիայի առանձնահատկությունների, ֆոտոսինթեզի մեթոդով կապրոլակտամի արտադրության, մեծ կոնցենտրացիայի հանքային պարարտանյութերի արտադրության նորագույն նվաճումների և այլ արտադրական թեմաների շուրջ։ Դասախոսել են Մոսկվայից, Լենինգրադից, Երևանից, Ձերժինսկուց եկած գիտնականները, կոմբինատի մասնագետները։

Դասախոսական խմբի ակտիվ մասնակցությամբ կազմակերպվել է գիտատեխնիկական կոնֆերանս՝ նվիրված մեծ քիմիայի զարգացման և երկրի ժողովրդական տնտեսության քիմիացման կարևորագույն պրոբլեմներին։ Խմբի անդամները հանդես են գալիս նաև կոմբինատի կուլտուրայի պալատին կից ստեղծված քիմիական գիտելիքների համալսարանի պարապմունքներում։

Կուսկոմը և նրա քաղլուսկաբինետը դասախոսներին և զեկուցողներին ապահովում է կոնկրետ նյութերով ու փաստերով։ Կուսկոմի հանձնարարությամբ դասախոսական խմբի անդամներն արտադրամասերում մասսայականացրել են № 3—5 արտադրամասի ղեկավար Վ. Պետրովի՝ կոմերիտական երիտասարդական հերթափոխի աշխատանքի փորձը։ Այդ հերթափոխը պարտավորվել է պլանից դուրս երկրին տալ հազարավոր տոննա ամոնիակի սելիտրա։

Հանրապետությունում գումարվում են գիտաարտադրական կոնֆերանսներ։ Դրանցում քննարկվել են արդյունաբերության զարգացման բազմազան հարցեր։ Այսպես՝ Կիրովի անվան գործարանի գիտաարտադրական կոնֆերանսը նվիրված էր հետևյալ հարցերին՝ «Քիմիայի դերը ձեռնարկության շահութաբերության բարձրացման գործում», «Պոլիմերների կիրառումը մեքենաշինության մեջ», «Քիմիայի զարգացման հեռանկարները Լենինյան շրջանում»։ «Պոլիվինիլացետատ» գործարանի գիտաարտադրական կոնֆերանսում «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը կոմունիզմի կառուցման կարևոր պայմանն է» թեմայով դասախոսություն է կարդացել տնտեսական գիտությունների թեկնածու Մ. Քոթանյանը, «Արտադրական պրոցեսների մեքենայացումը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևորագույն պայմանն է» թեմայով՝ ինժեներ Վ. Բադալովը։

Լուսատեխնիկական գործարանի գիտաարտադրական կոնֆերանսը նվիրված էր արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։ Հիմնական զեկուցմամբ հանդես եկավ տնտեսագետ Ա. Մանուկյանը։ Լսվեցին նաև հարակից զեկուցումներ՝ «Ի՞նչ է տալիս արտադրությանը ինքնարժեքի մեկ տոկոսով իջեցումը», «Խնայողության ռեժիմը և դրա արմատավորումը գործարանում» և «Մեքենաների ու սարքավորումների երկարակեցության ապահովման հնարավորությունները ձեռնարկությունում» թեմաներով։

Գիտաարտադրական կոնֆերանսներ են անցկացվել նաև Երևանի Ձերժինսկու անվան, կաբելի, ալյումինի, էլեկտրատեխնիկական գործարաններում, Լուսավանի, Լենինականի և Կիրովականի խոշորագույն ձեռնարկություններում։

Աշխատավորների շրջանում տեխնիկական գիտելիքների տարածման գործում մեծ անելիքներ ունի տեխնիկայի հանրապետական տունը, որ Երևանում ստեղծվել է 1960 թվականին։ Հաճախ այստեղ են հավաքվում բանվորներ, ծառայողներ, գիտնականներ, մտքեր փոխանակում տեխնիկական այս կամ այն բարդ պրոբլեմի շուրջ։ Կարդացվում են դասախոսություններ, ցուցադրվում գիտական կինոնկարներ, անց կացվում սեմինարներ, կոնսուլտացիաներ՝ նվիրված տեխնիկայի զանազան բարդ հարցերին։ Լավ են գործում տեխնիկայի տանը կից տեխնիկական պրոգրեսի համալսարանը, երիտասարդ զոդողի և դպրոցների ավագ դասարանների աշակերտների համար ստեղծված սեմինարը։ Այստեղ կազմակերպվել է հասարակական հիմունքներով գործող ասպիրանտուրա, որն առաջինն է Միությունում։ Աշխատանքի առաջավոր մեթոդների պրոպագանդման նպատակով տեխնիկայի տունը Երևանի № 1 կարի ֆաբրիկա է հրավիրել հանրապետության զանազան ձեռնարկությունների մոտ 100 կարող վարպետներ։ Այստեղ նրանք լսել են զեկուցումներ, ծանոթացել արտադրական պրոցեսների շատ նորությունների, մշակել միջոցառումներ ամբողջ հանրապետության կարի արդյունաբերության զարգացմանը նպաստելու նպատակով։

Տեխնիկայի տունը հաճախակի է կազմակերպում համանման ձեռնարկությունների աշխատողների այդպիսի ժողովներ, որոնք կոչվում են առաջավոր փորձի միջգործարանային դպրոց։ Դրանք նպաստում են նորարարական աշխատանքի լավագույն եղանակների ու մեթոդների տարածմանը։

Տեխնիկայի տունը կազմակերպում է արտադրական էքսկուրսիաներ դեպի հանրապետության առաջավոր գործարանները, շարժական գրադարաններ, հասարակական կոնստրուկտորական բյուրոներ՝ էլեկտրատեխնիկական և այլ գործարաններում։ Հիմնվել են նաև արտադրանքի որակի տեխնիկական վերահսկողության՝ հասարակական հիմունքներով գործող բաժիններ։

Գիտատեխնիկական պրոպագանդայի կոորդինացման նպատակով սերտ կապ է սահմանված ճյուղային և սկզբնական գիտատեխնիկական ընկերությունների, Գիտելիք ընկերության, գյուտարարների և ռացիոնալիզատորների համամիութենական ընկերության Հայկական հանրապետական կոմիտեի, ինչպես նաև համապատասխան մինիստրությունների, հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների և գիտական հիմնարկությունների միջև։

1965 թ. հանրապետությունում գործում էին ճյուղային գիտատեխնիկական ընկերություններ՝ 580 սկզբնական կազմակերպություններով, որոնք միավորում էին ավելի քան 28 հազար գիտնականների, գյուղատնտեսության մասնագետ-



ների և առաջավոր բանվորների։ Կիրառելով աշխատանքի բազմազան ձևեր ու մեթոդներ, նրանք նպաստում էին տեխնիկական պրոգրեսի առաջընթացին։

Ամենօրյա կապը հանրապետության ձեռնարկությունների, բուհերի և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպությունների հետ նրանց հնարավորություն ընձեռեց ակտիվ աջակցելու տեխնիկական պրոգրեսի արագացմանը, յոթնամյա պլանի ժամկետից շուտ կատարմանը։ Բավական է ասել, որ յոթ տարում հանրապետությունում կառուցվել են 300 արտադրական նոր ձեռնարկություններ ու ցեխեր։ Արտադրության համախառն արտադրանքի ծավալը այդ ժամանակահատվածում աճել է ավելի քան երկու անգամ։ Արագորեն զարգացել են հատկապես արդյունաբերության ավելի առաջատար ճյուղերը, ինչպես քիմիական արդյունաբերությունը, որն աճել է 3 անգամ, գունավոր մետաղներինը՝ 2,8, էլեկտրատեխնիկականը՝ 3, դազգահաշինականը՝ 4, սարքաշինականը՝ 4 անգամ։ Յոթնամյակի վերջում Հայաստանի արդյունաբերությունը 70 երկրներ էր արտահանում 130 անուն արդյունաբերական ապրանք։

Չնայած որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները վերջին ժամանակներս զգալիորեն բարելավել են տեխնիկական գիտելիքների պրոպագանդան, սակայն այդ գործում դեռևս լուրջ թերություններ կան։

Մասամբ դրանով է բացատրվում այն, որ մեր որոշ ձեռնարկություններ իրենց արտադրական ցուցանիշներով ետ են մնում Միության և արտասահմանյան առաջավոր ձեռնարկություններից, միևնույն հաստոցի վրա ավելի քիչ արտադրանք են տալիս, քան այլ առաջավոր գործարաններում և ֆաբրիկաներում։ Երևանի ձեռնարկություններում սարքավորումների 50 տոկոսը անբավարար վիճակում է. թեև արդյունաբերության ձեռնարկություններում աշխատանքի 30—40 տոկոսը կատարվում է ձեռքով։

Ելակետ ունենալով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները, հանրապետության կուսակցական կազմակերպությունները պետք է հմտորեն օգտագործեն գաղափարական ներգործության բոլոր ձևերն ու մեթոդները, լայնորեն ծավալեն առաջավոր փորձի, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների պրոպագանդան և ապահովեն նորի, առաջավորի արմատավորումը։

Կուսակցության XXIII համագումարի որոշումները, որ ներթափանցված են ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի ոգով, նոր խթան կհանդիսանան մասսաների ստեղծագործական նախաձեռնությանը և առաջավոր փորձը ի սպաս դնելու ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու գործին։



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԿԱՐԻՔՆԵՐԻՆ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվներում վիթխարի խնդիրներ են դրված սովետական մարդկանց առջև։ Դրանց հաջող լուծման համար մեծ անելիքներ ունեն նյութատեխնիկական մատակարարման օրգանները։ ՍՄԿԿ XXIII համագումարն անհրաժեշտ համարեց՝ վճռականորեն բարելավել նյութատեխնիկական մատակարարման սիստեմը և նախապատրաստել աստիճանական անցումը մեծածախ առևտրի միջոցով սարքավորումների, նյութերի և կիսաֆաբրիկատների պլանային բաշխմանը։

Արդյունաբերության կառավարման օրգանների վերակառուցման հետ մեկտեղ վերակառուցվեց նաև երկրի նյութատեխնիկական մատակարարման սիստեմը։ Մինչ այդ հանրապետության ժողովրդական տնտեսության նյութատեխնիկական մատակարարումն իրագործվում էր հիմնականում երեք կերպ։

Առաջինը՝ ժողտնտխորհի սիստեմի նյութատեխնիկական ապահովումն էր, որն ընդգրկում էր ավելի քան 300 արդյունաբերական ձեռնարկություններ, գիտահետազոտական հիմնարկներ և այլ կազմակերպություններ։ Սրա համար ժողտնտխորհն ուներ երկու մատակարարող տնտհաշվարկային օրգաններ՝ նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչություն, որը ժողտնտխորհի մեջ մտնող բոլոր ձեռնարկություններն ու կազմակերպություններն ապահովում էր հումքով, նյութատեսակներով և սարքավորումների, մեքենաների կոմպլեկտավորման վարչություն, որը ժողտնտխորհի նույն ձեռնարկությունները, կառուցող գործարաններն ու ֆաբրիկաները ապահովում էր անհրաժեշտ տեխնոլոգիական սարքավորումներով ու մեքենաներով։

Իրենց բազաների և պահեստների ցանցով այս երկու օղակների ենթակայության ոլորտում էին գտնվում մի շարք առանձին մասնագիտացված տնտհաշվարկային մատակարարման վարչություններ (Հայմետաղմատվաճառ, Հայքիմմատվաճառ, Հայանտառմատվաճառ, Հայէլեկտրամատվաճառ, Հայսննդմատվաճառ և այլն)։

Երկրորդ՝ հանրապետական և միութենական հանրապետական ոչ արդյունաբերական (առողջապահության, կուլտուրայի, կոմունալ, ջրային տնտեսության, գյուղատնտեսության, կապի, առևտրի, շինարարության և այլն) մինիստրությունների նյութատեխնիկական մատակարարումն է, որը պահպանվել էր ժողտնտխորհներ կազմակերպելուց հետո։

Այս մինիստրություններն իրենց ենթակայության տակ ունեին նյութատեխնիկական մատակարարման վարչություններ կամ բաժիններ (պահեստների և բազաների ցանցով), որոնց վրա դրված էր տվյալ մինիստրության կազմակերպությունների մատակարարման գործը։

Վերջապես, երրորդ եղանակով մատակարարվում էին տեղական սովետների շինարարական կազմակերպությունները, կոմունալ և այլ ձեռնարկություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումից հետո կուսակցության Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը որոշեցին, արդյունաբերության կառավարման ճյուղային սկզբունքին անցնելու նպատակով, փոփոխություն մտցնել նաև նյութատեխնիկական մատակարարման օրգանների կառուցվածքում, որպեսզի,— ինչպես նշում է ընկ. Ա. Կոսիգինը,—նյութատեխնիկական մատակարարումը լիովին համապատասխանի ժողովրդական տնտեսության կարիքներին։

Սահմանվեց, որ միութենական հանրապետական և ընդհանուր միութենական նորաստեղծ մինիստրությունների արդյունաբերության կարիքների և զարգացման համար առանձնացվող նյութատեխնիկական մատակարարման պլանները կենսագործվեն տնտեսական շրջանների և հանրապետությունների գլխմատվաճառների միջոցով։ Այդ նպատակով ստեղծվեց հանրապետության Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման միասնական օրգան՝ գլխավոր վարչություն, որն ընդգրկում է ժողտնտխորհի նախկին վարչությունները (իրենց ցանցով), ինչպես և ժողտնտխորհի կենտրոնական ապարատի մի քանի ծառայություններ (տրանսպորտային վարչություն, արտաքին հարաբերությունների բաժին, տեխնիկական վարչության կոոպերացիայի բաժին և այլն)։ Մոտակա ամիսներին գլխավոր վարչությանը կհանձնվեն նաև հանրապետության տերիտորիայում գտնվող ոչ արդյունաբերական մինիստրությունների և կազմակերպությունների բազաներն ու պահեստները։

Ներկայումս մասնագիտացված մատակարարող կազմակերպությունների հետ հանրապետության մի շարք ոչ արդյունաբերական մինիստրությունների և գերատեսչությունների սիստեմներում ստեղծվել են ավելի քան 10 մատակարարման օրգաններ (իրենց փոքր, միջակ ու ոչ մասնագիտացված, ունիվերսալ պահեստներով և բազաներով)։ Այստեղ ընդգրկված 500 աշխատողների մոտ կեսը զբաղված է վարչական ապարատներում։ Բազաներն ու պահեստները նյութատեխնիկական արժեքները հիմնականում ստանում են գլխմատվաճառի մասնագիտացված բազաներից, այնուհետև տեղափոխում իրենց պահեստները, ապա բաշխում ըստ կազմակերպությունների։ Ստացվում է, որ սրանք միջանկյալ դեր են կատարում։ Այսպես. հանրապետության առողջապահության մինիստրության մատակարարման օրգանն ուներ 17 հոգուց բաղկացած վարչատնտեսական ապարատ և պահեստային աշխատողներ։ Սակայն, այդ գրասենյակի պահեստները մուտք արվող ապրանքատեսակների 97 տոկոսը բերվում է նույն քաղաքում գտնվող գլխմատվաճառի բազաներից ու պահեստներից։ Դրությունը համարյա նույնն է լուսավորության մինիստրությունում, պրոֆտեխկրթության պետական կոմիտեում և այլն։ Այդ պատճառով էլ կենսական պահանջ է վերոհիշյալ բազաները նույնպես հանձնել գլխմատվաճառին.

այսպիսով կստեղծվի հանրապետության նյութատեխնիկական մատակարարման միասնական ինքնուրույն օրգան։ Եվ գլխավոր վարչության ու նրա մասնագիտացված վարչությունների վրա դրվեց հանրապետության բոլոր ձեռնարկությունների, գերատեսչությունների, կազմակերպությունների առանձնացվող նյութատեխնիկական ֆոնդերի իրացումը, ինչպես նաև հանրապետությունից երկրի մյուս շրջաններին ուղարկվող պատրաստի արտադրանքի բեռնման վերահսկողությունը։

Միության մասշտաբով նյութատեխնիկական մատակարարումը ղեկավարելու համար կազմվեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման միութենական հանրապետական պետական կոմիտե, որին միաժամանակ ենթարկվում են հանրապետություններում և տնտեսական շրջաններում ստեղծված գլխավոր վարչությունները։

Նոր սիստեմի առավելությունները ակնհայտ են։ Բացառվում է մատակարարման աշխատանքների զուգահեռականությունը տարբեր մինիստրություններում և կազմակերպություններում։ Ավելի արդյունավետ են օգտագործվում նյութական ռեսուրսները ու պահեստային տնտեսությունը և, դրանով իսկ, զգալի չափով նվազում են, այսպես կոչված, մատակարարման շրջանառության ծախսերը։

Ինչպես հայտնի է, մեր հասարակության տնտեսական գործունեությունն ընդգրկում է չորս փուլ։ Առաջինը արտադրությունն է, այսինքն՝ արտադրանքի թողարկումը, երկրորդը՝ արտադրանքի բաշխումը, երրորդը՝ դրա շրջանառությունը, արտադրանքի շարժումը դեպի սպառողը և, վերջապես, չորրորդ փուլը՝ արտադրանքի սպառումն է ձեռնարկությունների կամ բնակչության կողմից (առևտրի սիստեմում)։

Նյութատեխնիկական մատակարարումը տնտեսական գործունեության երրորդ փուլն է, այսինքն՝ ժողովրդական տնտեսության այն մասը, որը սպահովում է հումքի, նյութերի և ապրանքների հայթայթումը սպառողին։ Հասկանալի է, բազմատեսակ, մեծ չափերի հասնող հումքի և նյութերի շրջանառությունն իրականացնելիս զգալի ծախսեր են կատարվում, որոնք կապված են մատակարարման աշխատողների մի մեծ բանակ պահելու հետ, ինչպես և տրանսպորտի (մոտ 50 տոկոս), նյութատեսակների և սարքավորումների ծրարման ծախսերը և այլն։ Դիմենք փաստերին։ 1964 թվականի տվյալներով ՍՍՀՄ-ում նյութատեխնիկական մատակարարման շրջանառության ծախսերը կազմել են 3,81 միլիարդ, 1965 թվականի առաջին կես տարում՝ 1,93 միլիարդ ռուբլի, Հայկական ՍՍՀ-ում 1964 թվականին՝ 5,93 միլիոն, 1965 թվականի առաջին կես տարում՝ 3,18 միլիոն ռուբլի։

Վերջին տվյալների համաձայն, երկրի նյութատեխնիկական մատակարարման օրգաններում աշխատում են մոտ 343 հազար հոգի, որոնցից մեր հանրապետությունում՝ 2200-ը։ Ահա թե ինչու, մատակարարման սիստեմի կատարելագործման ու էժանացման հարցը պետական խոշոր նշանակություն ունի։ Եվ մեր առջև խնդիր է դրված հետևողականորեն զբաղվել վերոհիշյալ հարցի լուծմամբ։

Արդյունաբերական ձեռնարկությունների ռիթմիկ աշխատանքը և արտադրական պլանների կատարումը պայմանավորված են նյութատեխնիկական մատակարարման կազմակերպմամբ։ Այդ նպաստում է ձեռնարկությունների կողմից պետական առաջադրանքի կատարմանը ոչ միայն ընդհանուր ծավալով



կամ, ինչպես ընդունված է ասել համախառն արտադրանքով, այլև ըստ պլանավորված արտադրանքի տեսակների։

Քիչ չեն դեպքերը, երբ այս կամ այն հումքի կամ նյութատեսակի ժամանակին չստանալը ստիպում է ձեռնարկությանը ետին պլան մղելու առաջադրանքների կատարումն ըստ արտադրանքի տեսակների և արտադրել այն, ինչը տվյալ դեպքում ապահովված է հումքով և նյութատեսակով, չնայած նրան, որ այդ արտադրանքը, սպառող չլինելու պատճառով, մնում է պահեստներում։ Ինչ խոսք, դրա հետևանքով ձեռնարկությունն ընկնում է ֆինանսական ծանր վիճակի մեջ։ Այժմ, նոր պայմաններում, մատակարարման օրգանների խնդիրն է՝ գործն այնպես կազմակերպել, որ հանրապետության ձեռնարկություններն անխափան և ժամանակին ստանան այն նյութատեսակները, որոնք անհրաժեշտ են պետական առաջադրանքները բոլոր ցուցանիշներով կատարելուն։ Իսկ դրա համար, ամենից առաջ, անհրաժեշտ է ստեղծել բազաների և պահեստների լայն ցանց ոչ միայն Երևանում, այլև հանրապետության տարբեր շրջաններում, որը հնարավորություն կընձեռի հումքն ու նյութերը մոտեցնել սպառողներին և ազատվել փոխադրական ավելորդ ծախսերից ու մատակարարման այլ հոգսերից։

Հանրապետության նախկին ժողտնտխորհի սիստեմում եղած 8 մասնագիտացված մատակարարման վարչություններ՝ իրենց բազաներով և պահեստներով մեծ մասամբ տեղավորված են ոչ պիտանի, փոքր շենքերում ու հրապարակներում, ուր հնարավոր չէ մեքենայացնել բեռնման և բեռնաթափման աշխատանքները, իսկ նյութերի զգալի մասը փակ պահեստների պակասության պատճառով տեղավորված է բաց հրապարակներում։ Հասկանալի է, որ այդպիսի պայմաններում հնարավոր չէ բազաներում նյութատեսակների և հումքի անհրաժեշտ պաշարներ կուտակել և դրանցով ապահովել ձեռնարկությունները։ Այստեղից էլ սկսվում են այն խափանումները, որոնք հաճախ պատճառ են դառնում արտադրանքի պլանները ըստ տեսակների չկատարելուն։

Այս, առաջին հերթին, հետևանք է այն բանի, որ տարիներ շարունակ մատակարարման օրգանների բազաների և պահեստային ցանցի զարգացման վրա ուշադրություն չի դարձվել։ Բավական է ասել, որ վերջին ութ տարիների ընթացքում մատակարարման բազաների ընդլայնման և մեքենայացման համար կապիտալ ներդրումներ չեն հատկացվել, չնայած այդ ժամանակաշրջանում ժողտնտխորհի գլխավոր վարչության ընդհանուր ապրանքաշրջանառությունը 139 միլիոնից հասել է մոտ 650 միլիոն ռուբլու, այսինքն՝ աճել է ավելի քան 4,5 անգամ։

Այժմ դրությունը բարելավվում է։ ՍՍՀՄ Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման պետական կոմիտեն պլանավորել է մեր հանրապետությունում ստեղծելու մատակարարման բազաների լայն ցանց և դրա համար միայն 1966 թվականին հատկացրել է 353 հազ. ռուբլի։ Արդեն ձեռնարկված է 2 մասնագիտացված վարչությունների (Հայքիմմատվաճառ և Հայշինմատվաճառ) բազաների կառուցումը։ Նախագծի համաձայն այս բազաներում անհրաժեշտ պայմաններ կստեղծվեն սպառողներին անընդմեջ սպասարկելու համար. հիմնականում կմեքենայացվեն բեռնման և բեռնաթափման աշխատանքները։ Կիրովական քաղաքում և նրա շրջակայքում գտնվող արդյունաբերական ձեռնարկություններին և այլ կազմակերպություններին սպասարկելու համար կառուցվում է նոր բազա, ուր աշխատատար բոլոր պրոցեսները մեքե-

նայացվելու են: Ընթացիկ տարում վերակառուցվելու է Երևանի մետաղի և մետաղյա իրերի բազան և կրկնապատկվելու է դրա ապրանքաշրջանառությունը: Նախատեսված է հնգամյակում մատակարարման բազաներ ստեղծել նաև Ղափանում, Սևանում, Լենինականում:

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշման մեջ նշվում է, որ առանձին նյութատեսակների գծով անհրաժեշտ է աստիճանաբար անցնել մեծածախ առևտրի սիստեմին՝ խանութների լայն ցանց ստեղծելու միջոցով: Նյութատեխնիկական մատակարարման այս ձևին անցնելը հնարավորություն կընձեռի խանութների օգնությամբ փոքր քանակի նյութատեսակներով բավարարելու սպառող կազմակերպությունների պահանջները: Այդ խանութներում էլ հենց կիրացվեն ձեռնարկությունների դանդաղաշարժ ու տվյալ արտադրության համար ոչ պիտանի նյութատեսակները: Երկրի որոշ տնտեսական շրջաններում այդպիսի խանութների ցանց արդեն ստեղծված է և այն տալիս է դրական արդյունք:

Մեր հանրապետությունում ևս միջոցներ են ձեռնարկված մեծածախ առևտրի լայն ցանց ստեղծելու ուղղությամբ: Երևանում արդեն մեկ այդպիսի խանութ գործում է. մոտ ապագայում այդպիսիք կբացվեն նաև Լենինականում, Կիրովականում, Ղափանում և այլուր:

Նյութատեխնիկական մատակարարումն արտադրության թիկունքն է: Այդ թիկունքը պետք է լինի ամուր, կազմակերպված և հուսալի:

Մ. ԾԱՏՈՒՐՅԱՆ
ՀՍՍՀ Մինիստրների սովետի նյութատեխնիկական մատակարարման գլխավոր վարչության պետի տեղակալ

# ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՑԱՆՑԱՅԻՆ ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄՆ ՈՒ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Մեր երկիրը թևակոխել է նոր հնգամյակ: Հանրապետության շինարարական կազմակերպությունների առջև հնգամյակի առաջին տարում դրված են մեծ ու պատասխանատու խնդիրներ: Բավական է նշել, որ այս տարվա կենտրոնացված կապիտալ ներդրումները կազմում են ավելի քան 360 միլիոն, իսկ շինմոնտաժային աշխատանքների ծավալը՝ 280 միլիոն ռուբլի:

Ընթացիկ տարում կկառուցվեն մի շարք խոշոր ձեռնարկություններ: Շահագործման կհանձնվի ավելի քան 500 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն. անցյալ տարվա համեմատությամբ ավելի շատ դպրոցներ, հիվանդանոցներ, մանկական հիմնարկներ և կուլտուր-կենցաղային այլ օբյեկտներ կկառուցվեն: Այդպիսի ծավալի կառուցումների համար անհրաժեշտ է հոգալ շինարարական արտադրության կառավարման հետագա կատարելագործման մեթոդների ու եղանակների համար, որպեսզի հաղթահարվի շինարարական կազմակերպությունների ետ մնալը և ապահովվի պլանային առաջադրանքների կատարումը: Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIII համագումարը, շինարարական կազմակերպությունների ետ մնալը ոչ միայն նախագծային-նախահաշվային գործի վատ դրվածքի ու նյութական ապահովման ոչ ճիշտ պլանավորման հետևանք է, այլև շինարարության պրոցեսի անբավարար կազմակերպման ու կառավարման արդյունք:



Մեր հանրապետության շինարարական կազմակերպությունների մեծ մասը չի կատարում կապալային աշխատանքների պլանները, որի հետևանքով ժամանակին չեն գործարկվում նոր արտադրական կարողությունները, շահագործման չեն հանձնվում նախատեսված բնակարանները, կուլտուր-կենցաղային և այլ օբյեկտները: Դրա հիմնական պատճառներից մեկը արտադրության կառավարման գոյություն ունեցող սիստեմն է, որը մեծ թերություններ ունի: Մեր տրեստների, շինվարչությունների ու կառույցների շատ ղեկավարներ իրենց աշխատաժամանակի հիմնական մասը հատկացնում են նյութատեխնիկական մատակարարման հարցերին, ձգտում անձամբ ձեռք բերել ու բաշխել շինանյութերը, մեխանիզմները, տրանսպորտի միջոցները, զբաղվում են երկրորդական հարցերով, չկատարելով իրենց հիմնական պարտականությունը՝ շինարարության կառավարումը:

Մեծ թերություններ կան շինմոնտաժային աշխատանքների կազմակերպման գործում: Գրաֆիկները մեծ մասամբ կազմվում են գործնական պլանավորման և դրա նյութատեխնիկական մատակարարման հետ չզուգակցված, անբավարար են արտացոլում աշխատանքների բոլոր տարրերի ու գործոնների տեխնոլոգիական փոխադարձ կապը, որի հետևանքով շատ շինհրապարակներում գրաֆիկների ժամկետները հաճախ խախտվում են: Մինչև շինարարության գրաֆիկների հաստատումը, լուրջ աշխատանք չի կատարվում կառույցն աշխատողներով, տեխնիկական փաստաթղթերով, նյութերով, սարքավորմամբ, փոխադրամիջոցներով ապահովելու ուղղությամբ:

Անբավարար է նաև շինարարության վերահսկողությունը: Գրեթե բոլոր կառույցներում, ինչպես հարկն է, չի կազմակերպված օրացուցային գրաֆիկների կատարման ստուգումը: Չեն ուսումնասիրվում դրանց խափանման պատճառները և կոնկրետ միջոցներ չեն ձեռնարկվում ետ մնալը վերացնելու համար: Շատ դեպքերում կառույցների ղեկավարների կազմակերպչական դերը հանգում է գրաֆիկների նոր ժամկետներ սահմանելուն, հերթական խորհրդակցություններ, նիստեր գումարելուն, որտեղ, ի դեպ, անօգուտ շատ ժամանակ է կորչում:

Ներկայումս, երբ տարեցտարի աճում է կապիտալ շինարարության ծավալը, փոխվում դրա ֆինանսավորման սիստեմը, ավելանում են արտադրական կարողությունները, մեծանում է բնակելի շենքերն ու կուլտուր-կենցաղային օբյեկտները ժամանակին գործարկելու պահանջը, երբ յուրաքանչյուր կառույցի ղեկավար այժմ միանձնյա պետի իրավունքներ ունի, շինարարության գործնական կառավարման սիստեմի կատարելագործումը առաջնահերթ խնդիր է դառնում:

Շինարարության գործնական կառավարման ժամանակակից առաջավոր մեթոդը ցանցային կառավարումն է: Այդ մեթոդի էությունն այն է, որ միասնական փաստաթղթում՝ ցանցային գրաֆիկում, իրենց արտահայտությունն են գտնում շինարարական բոլոր պրոցեսները, կոնստրուկցիաների, շինանյութերի, սարքավորման մատակարարումները և շինարարության համար անհրաժեշտ մյուս գործոններն ու տարրերը:

Ցանցային գրաֆիկը աշխատանքների սովորական գրաֆիկ է, որը ելնում է օբյեկտը ժամանակին գործարկելու պահանջից և որտեղ աշխատանքների յուրաքանչյուր տեսակ համարակալվում ու կոչվում է «իրադարձություն» (событие), կամ տվյալ աշխատանքների վերջնական արդյունք։ Կառավարման այդպիսի սիստեմի անցնելու պատճառն այն է, որ երկար ժամանակի համար սահմանված պլանային դիրեկտիվ ցուցանիշները հաճախ չեն համապատասխանում ռեալ պայմաններին և մեծ շտկումներ են պահանջում։ Ցանցային կառավարման անցնելուց առաջ, նախ պետք է կազմակերպել շաբաթական պլանավորում՝ ըստ օրերի, ամեն շաբաթ օրը կատարողներին հանձնելով հաջորդ շաբաթվա առաջադրանքը։ Ըստ օրերի շաբաթական գրաֆիկը շինարարության ժամանակակից գործնական ղեկավարման ելակետն է և այն պետք է խորապես կշռադատվի և առավելագույն չափով շաղկապվի հղած ռեսուրսների ռեալ հնարավորությունների հետ։ Ցանցային կառավարման անցնելու նախապատրաստությունը պետք է կատարվի գերատեսչության ողջ սիստեմում՝ ամենուրեք, քանի որ շինտեղամասի կամ վարչության շաբաթական գրաֆիկի մեջ մտցված իրադարձությունների 50 տոկոսից ավելին կախում չունի տեղամասի կամ վարչության պետից, հաճախ նաև՝ տրեստի կառավարչից։

Շինարարության մեջ ցանցային կառավարման կիրառումը անխզելիորեն կապված է կիբեռնետիկայի և ժամանակակից հաշվողական տեխնիկայի արմատավորման հետ։ Ցանցային կառավարման անցնելիս շինարարական արտադրության կիբեռնետիկ եղանակը հնարավորություն է ընձեռում սահմանազատելու ղեկավարների և աշխատողների իրավունքներն ու ֆունկցիաները կառավարման բոլոր օղակներում։ Կիբեռնետիկայի օրենքները բացառում են ամեն մի ավելորդ ինֆորմացիա որևէ հարցի լուծման մասին, դրանով իսկ կոնկրետություն է ստեղծվում գործնական կառավարման մեջ։ Այսպիսով, ցանցային կառավարման անցնելու համար առաջնահերթ է դառնում նաև շինարարության բոլոր էտապների գործնական ղեկավարման սխեմայի ստեղծումը՝ կիբեռնետիկայի բազայի վրա։

Շինարարության բոլոր ոլորտների կառավարման մեջ վճռական նշանակություն է ստանում հաշվողական տեխնիկան։ Ժամանակակից հաշվողական մեքենաների օգնությամբ, բացի հաշվապահական սովորական հաշվարկներից, կարելի է հաշվարկել ու բաշխել նյութատեխնիկական ֆոնդերը, որոշել օբյեկտների ու արտադրական կարողությունների գործարկման ռեալությունը և, որ գլխավորն է՝ հաշվողական մեքենաներով սիստեմատիկ հաշվարկներ են կատարվում ըստ ցանցային գրաֆիկների աշխատանքը կազմակերպելիս, որոշելով տվյալ էտապում լիմիտավորված անհրաժեշտ աշխատանքների ցանկը։

Շինարարությունը հմտորեն կառավարելու համար պետք է ունենալ ճըշգրիտ, ամբողջական ինֆորմացիա շինմոնտաժային աշխատանքների վիճակի, կարիքների ու դժվարությունների մասին։ Շինարարության մեջ ցանցային կառավարման գործում վճռական նշանակություն ունեն դիսպետչերական ծառայությունը և ինֆորմացիան։ Ճիշտ որոշում ընդունել կարելի է միայն կապի ժամանակակից տեխնիկական միջոցների օգնությամբ՝ ամբողջական ինֆորմացիայի առկայության դեպքում։ Ցավոք, մեր շինարարական կազմակերպությունների մեծ մասը և խոշոր կառույցները դեռևս բավարար չափով չեն զինված կապի ժամանակակից միջոցներով։ Հեռուստատեսային, ռադիո և հեռախոսային կապը կնպաստի կառույցներում դիսպետչերական ծառայության



ճկուն կազմակերպմանը։ Պետք է վերջ տալ դիսպետչերական ծառայության վերաբերյալ սխալ կարծիքին, ըստ որի վերջինս պիտանի է միայն մատակարարման հարցերի ոլորտում։ Մինչդեռ դիսպետչերական ծառայությունը պետք է կապ պահպանի և կազմակերպության ղեկավարին սիստեմատիկաբար հաղորդի ըստ օրերի շաբաթական գրաֆիկի կատարման, աշխատանքի ընթացքում ծագող խափանումների մասին։

Լենինգրադի, Մոսկվայի, Կիևի շինարարական առաջավոր կազմակերպությունների փորձը ցույց է տալիս, թե որքան օգտակար է շինարարության մեջ ցանցային պլանավորման և կառավարման կիրառումը։ Բավական է բերել Կիևի տնաշինական կոմբինատի օրինակը. ցանցային կառավարման ու ավտոմատացման անցնելուց հետո (որի վրա ծախսվեց 100 հազար ռուբլի) արտադրանքի խոտանը կրճատվեց 50 տոկոսով, իսկ մինչ այդ կուտակված կոնստրուկցիաների քանակը պակասեց 30 տոկոսով։ Կառավարման նոր սիստեմի անցնելու ծախսերը փոխհատուցվեցին 9 ամսում։

Շինարարության մեջ ցանցային պլանավորման ու կառավարման սիստեմի առավելություններն անվիճելի են. այն շինարարական արտադրական գործնական ղեկավարման հուսալի և ճիշտ սիստեմ է։ Կառավարման այդ միջոցի կիրառման դեպքում նախագծերի, նախահաշիվների, շինարարության տեխնոլոգիայի խոր մշակմանը զուգընթաց, ղեկավարների ուշադրությունը կենտրոնանում է նեղ տեղերի վրա։

Զնայած շինարարության ցանցային պլանավորման ու կառավարման սիստեմի բացահայտ առավելությանն ու արդյունավետությանը, այն մեր հանրապետությունում անբավարար է արմատավորվում։ Առաջին լուրջ դժվարությունը ծագում է նրանից, որ ցանցային գրաֆիկը ելնում է օբյեկտը ժամանակին գործարկելու պահանջից, մինչդեռ շինարարները պետք է կատարեն նաև պլանը՝ դրամային արտահայտությամբ, այսինքն՝ անհրաժեշտ է լինում կատարել ոչ թե, այսպես կոչված, «կրիտիկական ուղու» վրա կանգնած աշխատանքները, այլ նրանք, որոնք ձեռնտու են և ապահովում են պլանի կատարումը։ Եվ քանի դեռ շինարարական կազմակերպությունների գործունեության չափանիշը պլանի կատարումն է և ոչ օբյեկտի ժամանակին գործարկելն ու շահութաբերությունը, շինարարների համար դժվար կլինի աշխատել ցանցային գրաֆիկներով։

Ցանցային պլանավորման ու կառավարման արմատավորման երկրորդ լուրջ դժվարությունն այն է, որ ցանցային գրաֆիկի մեջ մտած մի շարք աշխատանքներ ու գործողություններ կախում չունեն տվյալ կառույցի ղեկավարներից, մանավանդ, եթե կառույցը խոշոր է. օրինակ, նախագծային տեխնիկական փաստաթղթերի հանձնումը, տեխնոլոգիական սարքավորումների մատակարարումը, մետաղյա ու այլ կոնստրուկցիաների պատրաստումը և այլն։ Պրակտիկան ցույց է տալիս, որ ոչ տվյալ կառույցի ղեկավարը և ո՛չ էլ գերատեսչությունը չեն կարող ներգործել նախագծային ինստիտուտների, մատակարարող գործարանների, մասնագիտացված կազմակերպությունների և այլ գերատեսչությունների աշխատանքների ընթացքի վրա։ Ուստի, ցանցային պլանավորման ու կառավարման անցնելիս պետք է, նախ՝ կառույցի համար աշխատանքներ կատարող կազմակերպություններին օբյեկտիվ կերպով և ժամանակին իրազեկ դարձնել այդ աշխատանքների կատարման ժամկետների

*խախտումներին։ Երկրորդ, ժամանակն է, որ ուղղակի նյութական պատասխանատվություն սահմանվի ժամկետների խախտման համար։*

*Շինարարության մեջ ցանցային կառավարման հաջող արմատավորման համար անհրաժեշտ է բարելավել կապիտալ շինարարության պլանավորումը. կարողությունների գործարկման ժամկետները պետք է հուսալիորեն շաղկապել սարքավորման մատակարարումների ժամկետների, նյութատեխնիկական մատակարարման ֆոնդերի, ֆինանսական ապահովվածության, նյութական բազայի հետ։*

*Այդ և մյուս դժվարությունները հաղթահարելի են։ Պետպլանի, պետշինի, Հայշինտեխկազմ տրեստի, շինարարական, նախագծային կազմակերպությունների ու գերատեսչությունների խնդիրն է՝ որքան հնարավոր է շուտ անցնել ցանցային պլանավորման ու կառավարման սիստեմին։ Դրա համար անհրաժեշտ է ինժեներա-տեխնիկական աշխատողներին, կառույցների ղեկավարներին սովորեցնել ցանցային կառավարման գործը, և կազմակերպել շինարարության մեջ այդ առաջավոր մեթոդի մասսայական արմատավորումը։*

*Շինարարության ցանցային պլանավորման ու կառավարման արմատավորումը շինարարներին կօգնի հաջողությամբ լուծելու ՍՄԿԿ XXIII և ՀԿԿ XXIV համագումարների առաջադրած խնդիրները։*

Է. ՇԱՀԻՆՅԱՆ
Շինարարության մինիստրության արտադրական
վարչության գլխավոր ինժեներ

## ԱՆՏԱՌԱՅԻՆ ԵՎ ՓԱՅՏԱՄՇԱԿՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԱՌԱՋՆԱՀԵՐԹ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Մեր կուսակցության XXIII համագումարը երկրի անտառային, ցելյուլոզի-թղթի և փայտամշակման արդյունաբերության զարգացման համար լայն հեռանկարներ նախանշեց։ Համագումարի դիրեկտիվներում փայտամշակման արդյունաբերության աշխատողները տեսնում են իրենց կոնկրետ խնդիրները և դրանց լուծման ուղիները։*

*Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը ծանր արդյունաբերության առավելագույն զարգացման հետ մեկտեղ մեծ ուշադրություն են նվիրում ժողովրդական սպառման առարկաների արտադրությանը։ Մեր երկրում ամեն տարի ավելանում է անտառանյութերի, փայտամշակման արդյունաբերության արուրքի, թղթի, ստվարաթղթի, կահույքի և այլ արտադրանքների արտադրությունը։*

*Հայկական ՍՍՀ փայտամշակման արդյունաբերությունն այժմ արդեն կարևոր դեր է խաղում բնակչությանը ժողովրդական սպառման առարկաներով ապահովելու գործում։ Անցյալ (1959—1965 թթ.) յոթնամյակում Հայաստանի անտառային և փայտամշակման արդյունաբերության մինիստրության սիստեմը նշանակալի հաջողությունների է հասել։ Արտադրության աճը յոթնամյակում, նախատեսված 184 տոկոսի փոխարեն, կազմել է 189 տոկոս։ Այդ ժամանակամիջոցում կառուցվել են մի շարք նոր ձեռնարկություններ։ Դրանցից*



*են՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան կահույքի խոշոր ֆաբրիկան (որը 3,5 միլիոն ռուբլու արտադրանք է տալիս), դաշնամուրի ֆաբրիկան (որի արտադրողականությունը մեկ տարում հասնելու է 10 հազար դաշնամուրի), հայելիներ և ֆուրնիտուրա արտադրող ֆաբրիկան (որի կարողությունն է՝ 50 հազար քառակուսի մետր հայելի, 50 հազար քառակուսի մետր հաստացված ապակի և 400 հազար ռուբլու կահույքի ֆուրնիտուրա) և Իջևանի փայտամշակման կոմբինատում՝ փայտա-տաշեղային սալիկների արտադրամաս (12 հազար քառակուսի մետր արտադրանքի կարողությամբ)։ Բացի նոր ձեռնարկությունների շինությունից մեծ գործ է կատարվել եղածները վերակառուցելու և կատարելագործելու ուղղությամբ։*

*Յոթնամյակի ընթացքում հիշյալ ձեռնարկությունները հագեցվել են ժամանակակից նորագույն տեխնիկայով։ Ներդրվել են կահույքի ֆաներապատման հիդրավլիկ մամլիչներ, կահույքամասերը վերջնամշակող լաքապատ մեքենաներ, ողորկող ու փայլեցնող հաստոցներ և այլ սարքավորումներ։ Կահույքի բոլոր ֆաբրիկաներում մոնտաժված են հիդրավլիկ մամլիչներ։ Զգալիորեն բարելավվել է արտադրության տեխնոլոգիան։ Արդյունաբերական ձեռնարկություններում մեծ աշխատանք է կատարվել շոգեչորացման տնտեսության ընդլայնման ուղղությամբ։ Ստեղծված են կաթսայական և չորացման հզոր կամերներ։ Այս ամենը մեր ձեռնարկություններին հնարավորություն ընձեռեց յուրացնելու և թողարկելու ժամանակակից նոր կահույք։*

*Հանրապետության կահույքի ֆաբրիկաները մեծ ասորտիմենտով ու զգալի քանակությամբ կահույք են արտադրում (ճաշասեղաններ, գրասեղաններ, զգեստի և սպիտակեղենի պահարաններ, գրապահարաններ, դիվան-մահճակալներ, բազկաթոռներ, ընթերցասեղաններ, մահճակալներ, կախիչներ, տարբեր տեսակի աթոռներ, թախտ-սնդուկներ և այլ իրեր)։ Լայն ասորտիմենտով պատրաստվում է խոհանոցային կահույք։ Յուրացվել է ու արդեն թողարկվում է մանկական, բժշկական և փոքրածավալ կահույք։ Վերջերս ընդլայնվել է նաև մեկ, երկու, երեք սենյականոց բնակարանների հավաքովի կահույքի արտադրությունը։*

*Կահույքի ձեռնարկությունները կատարում են պետական հիմնարկների ու կազմակերպությունների համապատասխան պատվերները։ Դրանց արտադրած կահույքով են կահավորվել Սունդուկյանի անվան թատրոնը, Արմենիա հյուրանոցը, պետական համալսարանը, պոլիտեխնիկական ինստիտուտը։ Մեծ չափերի է հասնում դպրոցական կահույքի, դպրոցական նստարանների, ուսանողական սեղանների, լաբորատորական կահավորանքի արտադրությունը։ Հանրապետության կահույքագործները յուրացնելով կահույքի արտադրության նորանոր տեսակներ, իրենց առջև նպատակ դրեցին բարձրացնել նաև արտադրանքի որակը, այն հասցնել համաշխարհային ստանդարտին։ Այս բնագավառում որոշակի հաջողությունների հասնելով հանդերձ, դեռևս կան նկատելի թերություններ։ Երևանի Մյասնիկյանի և Կույբիշևի անվան, Կիրովականի, Ստեփանավանի կահույքի ֆաբրիկաներում արտադրանքի որակի բարձրացումը մնում է առաջնահերթ խնդիր, որի լուծման համար պահանջվում է վճռական ու հիմնական միջոցների ձեռնարկում։ Հայաստանի կոմկուսի XXIV համագումարը փայտամշակման արդյունաբերության բնագավառի աշխատողների առջև մարտական խնդիր դրեց՝ սպառողին տալ բարձրորակ կահույք։*

*Ինչպես հայտնի է, որոշ ձեռնարկություններում դեռևս ցածր է արտա-*

դրության տեխնիկական մակարդակը, պատշաճ ուշադրություն չի նվիրվում արտադրության պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանը, նկատվում են արտադրական տեխնոլոգիայի խախտման դեպքեր։ Այդ է պատճառը, որ թողարկվող կահույքի մի մասը չի համապատասխանում ստանդարտին և իր որակով ու ասորտիմենտով չի բավարարում բնակչության աճող պահանջմունքները։ Իսկ մենք պարտավոր ենք նվաճել գնորդի հարգանքը։ Վերջին հաշվով նա է ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ձեռնարկության աշխատանքի վերջնական գնահատական տվողը։

Մինիստրության ձեռնարկությունների կողմից թողարկվող կահույքի ցածրորակության հիմնական պատճառը ֆաբրիկաների դիրեկտորների ու գլխավոր ինժեներների անհրաժեշտ պահանջկոտության և տեխնիկական նորմալ պայմանների բացակայությունն է։ Թողարկվող արտադրանքի որակի վրա բացասաբար է անդրադառնում նաև ձեռնարկությունների ոչ ռիթմիկ աշխատանքը։ Յուրաքանչյուր ամսվա երկրորդ կեսին գրոհայնության հետևանքով խախտվում է տեխնոլոգիան, ատաղձագործական սալիկների ներդրման ու ֆաներապատման, ինչպես և կահույքի վերամշակման ընթացքում չի պահպանվում անհրաժեշտ պահաժամը։

Ձեռնարկության անհամաչափ աշխատանքը դիրեկտորները սովորաբար բացատրում են նյութատեխնիկական մատակարարման ընդհատումներով։ Ինչ խոսք, կահույքի որակը որոշակիորեն գցում է նյութերի ոչ ժամանակին ստացումն ու մի շարք նյութերի՝ փշատերև տեսակների փայտանյութի, սոսնձված ֆաներայի, ֆուրնիտուրայի ցածրորակությունը։ Բայց գլխավորն այդ չէ։ Այս ամենը հետևանք է այն բանի, որ արտադրության որակի բարձրացման համար դեռևս անհրաժեշտ պայքար չի ծավալվում։ Արտադրանքի ցածր որակը հետևանք է նաև ձեռնարկություններում տիրող անտնտեսվարության։ Հումքը, նյութերը, պատրաստի արտադրանքի մի մասը մնում է բաց երկնքի տակ կամ ոչ-հարմարավետ տեղում։ Կահույքի ձեռնարկություններն առայժմ անբավարար են ապահովվում բարձրորակ ֆուրնիտուրայով ու անհրաժեշտ ասորտիմենտով։ Այս հանգամանքը զգալիորեն գցում է արույրքի տեսքը։ Մեր կահույքագործները պետք է լավ իմանան, որ բարձրորակ կահույք չի կարելի պատրաստել կեղտոտ, հնացած արտադրամասերում, որ անհրաժեշտ է մշտապես հոգ տանել մաքրության, կարգ ու կանոնի մասին, հասարակական վերահսկողության տակ առնել յուրաքանչյուր տեղամաս, ֆաբրիկայի ողջ տերիտորիան։

Մինիստրության կոլեգիան իր նիստում մանրակրկիտ ուսումնասիրել է թողարկվող արտադրանքի որակի բարելավման ուղիները և համապատասխանորեն յուրաքանչյուր ձեռնարկության համար առանձին որոշում է ընդունել, որը, պետք է ենթադրել, կխթանի թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը։

Կահույքի որակի բարձրացման գործում մեծ դեր ունեն ձեռնարկության կուսակցական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունները. ադմինիստրացիայի հետ միասին նրանք խոտանի և ոչ մի դեպք չպետք է առանց վերլուծման թողնեն։ Յուրաքանչյուր կոլեկտիվ պետք է բարձր պահի իր ֆաբրիկայի պատիվը։

Շատ և բարձրորակ կահույք արտադրելու գործում վճռական է կադրերի դերը։ Մինչդեռ մեր ձեռնարկությունները անբավարար են համալրված ինժեներա-տեխնիկական կադրերով։ Այս դժվարացնում է նոր տեխնոլոգիայի ներդրման ու տեխնոլոգիական պահանջների պահպանման վերահսկողությունը։ Արդեն որոշակի աշխատանք է տարվում այդ թերությունները վերացնելու համար։ Բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մի մասը առանց արտադրությունից կտրվելու միջնակարգ և բարձրագույն կրթություն են ստանում։ Մոսկվայի և Լենինգրադի ինստիտուտներում հեռակայում են 16 հոգի։ Երևանի մեքենաշինական տեխնիկումի երեկոյան բաժնում ատաղձա-կահույքային արտադրության նոր ֆակուլտետ է բացվել։ Սովետական Միության արդյունաբերական քաղաքներից մշտական աշխատանքի են հրավիրվել փայտամշակման արդյունաբերության մասնագետները։ Սակայն, դեռևս որակավորված կադրերի մեծ պակաս կա։ Բավական է նշել, որ 42 դիրեկտորներից ու գլխավոր ինժեներներից միայն 17-ն ունեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն։ Մինչդեռ կյանքը մեզ նորանոր և մեծագույն պահանջներ է ներկայացնում։

Աճում և կատարելագործվում է արտադրության տեխնիկան և տեխնոլոգիան։ Այս պայմաններում սուր կերպով դրվում է ձեռնարկությունները որակավորված մասնագետ կադրերով համալրելու խնդիրը։ Վ. Ի. Լենինը դեռևս սովետական իշխանության արշալույսին պարզորոշ թվել է այն պահանջները, որոնք ժողովուրդը, կուսակցությունը իրավացիորեն ներկայացնում են աշխատողների այդ մեծ ջոկատին։ Նա ասում էր, որ կառավարման համար պետք է գիտակ լինել, պետք է լիովին ու ճշտորեն իմանալ արտադրության բոլոր պայմանները, նվաճել տվյալ արտադրության ժամանակակից տեխնիկայի բարձունքները, յուրացնել գիտական հանրահայտ սկզբունքները։ Ահա այն նախապայմանները, որոնք մենք, ինչ գնով էլ լինի, պետք է ստեղծենք։

Վատ է այն ղեկավարը, որը չի հետևում տեխնիկայի նորություններին։ Նա չի կարող ժամանակին զորավիգ լինել առաջավոր տեխնիկական մտահղացումներին, չի կարող գնահատել գյուտարարների և նորարարների խելամիտ առաջարկությունները, անտարբեր կանգնի հարևան կոլեկտիվում արդարացված փորձի կողքով։

Մեր հանրապետության կահույքագործների անհետաձգելի խնդիրն է՝ նորագույն տեխնիկայի ներդրման ճանապարհով բարձրացնել արտադրության կուլտուրան, աշխատանքի արտադրողականությունը, խնայել հումքն ու նյութերը, բարելավել արտադրության որակը։ Այդ նպատակով վերջերս մի շարք միջոցառումներ են իրագործվել։ Արդեն չորս ֆաբրիկայում տեղակայվել են հիդրավլիկ մամլիչներ, այդ թվում՝ երկու մամլիչ Լենինի անվան ֆաբրիկայում և մեկական՝ Կամոյի, Ստեփանավանի ու Արտաշատի ֆաբրիկաներում։ Դրա շնորհիվ հիշյալ ֆաբրիկաները լիովին ազատվեցին պտուտակավոր մամլիչների վրա սառեցման եղանակով (ձեռքի աշխատանքով) ատաղձագործական սալիկները ֆաներապատելուց և անցան ատաղձագործական սալիկների ֆաներացման տաք եղանակին։ Այս միջոցառումը նկատելիորեն բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը, բարելավեց արտադրանքի որակը։ Ատաղձագործական սալիկների եզրերը ֆաներապատող էլեկտրաշփմամբ ջերմացնող վայմերի տեղակայման շնորհիվ ամբողջապես մեքենայացվեց եզրերի ֆաներապատման պրոցեսը, որը առաջ ձեռքով էր կատարվում։ Ըստ որում, երեք վայմ տեղակայվեց Երևանի Արաբկիրի, երկուսը՝ Մյասնիկյանի և չորսը՝ Լենինի անվան ֆաբրիկաներում։ Լենինականի և Երևանի , Արաբկիրի ու Լե-

*նինի անվան ֆաբրիկաներում տեղակայվեցին լաքի ծածկույթը չորացնող կոնվեկցիոն մեքենաներ, կահույքի վերջնամշակման տեխնոլոգիական պրոցեսում զգալիորեն կրճատվեց բանվորական ժամանակի կորուստը, միաժամանակ, բարձրացավ արտադրանքի որակը։ Թղթի-ստվարաթղթի արուրքների ֆաբրիկայում տեղակայված է հարթ տպագրական ավտոմատ, որը լրիվին մեքենայացրել է տպագրության պրոցեսը։ Այստեղ արտադրանքի որակի բարելավման հետ մեկտեղ, զգալի չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։*

*1966 թվականին նորագույն տեխնիկայի արմատավորման ուղղությամբ մեծ աշխատանքներ են նախատեսվում։ Սահմանված է արտադրական պրոցեսների հետագա մեքենայացում, նոր, առավել կատարելագործված հոսքերի արմատավորում, արտադրական առանձին գործառնությունների ավտոմատացում, արտադրության մեջ նոր, մասնավորապես, սինթետիկ նյութերի ներդրում։ Մի շարք միջոցառումներից ուշադրության արժանի են նույնատիպ ձեռնարկությունների փորձի հիման վրա կտրող գործիքի ներդրումը, որը ամրանավորում է կարծր միահալվածք թիթեղները և ալմաստե գործիք դրա սրման համար։ Միայն ալմաստե գործիքի արմատավորմամբ կտրող գործիքի կարծրությունը կմեծանա երկու անգամ, և ծախսերն էլ կկրճատվեն նույնքան անգամ։ Նախատեսվում է ալմաստե գործիքը սկզբում ներդնել Լենինականի, Իջևանի, Երևանի Լենինի, Մյասնիկյանի անվան և Արաբկիրի կահույքի ֆաբրիկաներում։*

*Դեռևս անբավարար է մեքենայացված ճկած աթոռների արտադրման շատ գործառնություններ։ Այդ պատճառով էլ արդեն այս տարի լուրջ տեղաշարժ է նախատեսվում արտադրության պրոցեսների առավելագույն մեքենայացման ու ավտոմատացման ուղղությամբ։ Այդ առումով հատկապես արդյունավետ պետք է լինի ոչ-ստանդարտ հաստոցների պատրաստումն ու տեղակայումը, որոնք կատարում են փորակների միաժամանակյա ընտրանք և աղեղի ներքին ու վերին բացվածքի գայլիկոնացում։ Այդ հնարավորություն կընձեռի միացնելու երեք գործառնություն, որոնք կատարվում են տարբեր բանվորական տեղամասերում և, բացի այդ, նշանակալի չափով կբարելավվի արտադրության որակը, քանի որ հաստոցը աթոռի հավաքման կանոնավոր բազա կըստեղծի։ Պլանով նախատեսված է թղթի արուրքի ֆաբրիկայի արտադրության հետագա ավտոմատացում, որը հատկապես արդյունավետ կլինի գծավոր տետրակի ագրեգատի տեղակայմամբ։*

*1966 թվականին պետք է յուրացնենք հետևյալ նոր տեսակի արուրքների արտադրությունը. Իջևանի փայտամշակման կոմբինատում՝ փայտա-տաշեղային սալիկները, հայելիներինը՝ վակուում ապարատներում ալյումինացման մեթոդով, կահույքի ֆուրնիտուրայինը՝ հայելիների ֆաբրիկայում, փայտի փոխարեն ջերմաթիթեղներից կահույքի արկղների արտադրությունը, դաշնամուրի ֆաբրիկայում՝ դաշնամուրի նոր մոդելինը, բացի այդ, կահույքի ֆաբրիկաներում, համամիութենական ժողովրդական նվաճումների ցուցահանդեսի օրինակներով, նախատեսված է ներդնել ինչպես 15 միավորի հասնող նոր մոդելների սերիական արտադրությունը, այնպես էլ Միության կահույքի առաջավոր ձեռնարկությունների կոնստրուկտորական բյուրոների մշակած ժամանակակից նմուշները։*

*Պետք է խոստովանել, որ նորը միշտ հարթ ճանապարհով չի ընթանում։*



*Կահույքի արդյունաբերության մեջ էլ ամեն նոր գործ անիրականալի է թվում ոչ միայն այն բանի համար, որ իրոք դժվարին է, այլ ուղղակի հնին կառչած լինելու պատճառով։ Հարկավոր է առանց վախենալու, համարձակորեն հրաժարվել հնից, անարդյունավետությունից։ Նորի արմատավորման գործում վճռական դեր ունեն գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Այս ուղղությամբ որոշակի գործ են կատարել Մյասնիկյանի անվան կահույքի ֆաբրիկայի ռացիոնալիզատորները։ Նրանք հաջողությամբ լուծել են ատաղձագործական սալիկների լաքապատման վերջնամշակման խնդիրը. այն լրիվին բավարարում է այժմյան խիստ պահանջները։ Իր բեղուն աշխատանքով աչքի է ընկնում Հայկական ՍՍՀ վաստակավոր ռացիոնալիզատոր Ս. Ասատրյանը։ Ետ չեն մնում նաև դաշնամուրի ֆաբրիկայի ռացիոնալիզատորները։ Ֆաբրիկայում լավագույն ռացիոնալիզատոր է վերանորոգման մեխանիկական արտադրամասի պետ Գ. Մամիկոնյանը։ Նրա գծագրերով ու ղեկավարությամբ պատրաստված է հինգ ավտոմատ և կիսավտոմատ հաստոց։*

*Սակայն մինիստրության առանձին ձեռնարկություններ, ինչպես Երևանի ճկած կահույքի, Արտաշատի կահույքի, հայելիների ֆաբրիկաները արտադրության ռացիոնալիզացման ուղղությամբ էական բան չեն արել։ Նշված ձեռնարկությունների դիրեկտորներից պահանջվում է, որ նրանք կարճ ժամկետում կազմակերպական-տեխնիկական միջոցառումներ մշակեն ռացիոնալիզացման ուղղությամբ և այն հասցնեն պահանջվող բարձրության։*

*Մինիստրության անհետաձգելի խնդիրն է՝ հաջողությամբ ավարտել կապիտալ շինարարությունը, որը հնարավորություն կընձեռի ընդլայնել արտադրական բազան։ Այս տարի սկսվել է թղթի-ստվարաթղթի խոշոր ֆաբրիկայի շինարարությունը։ Ներկայումս Երևան քաղաքում գործում է թղթի-ստվարաթղթի ոչ մեծ ֆաբրիկա, որը փաթաթելու թուղթ և արկղեր պատրաստելու ստվարաթուղթ է մշակում։ Ֆաբրիկայի սարքավորումների մեծ մասը բարոյական և ֆիզիկական մաշվածք ունի, որի հետևանքով տարեկան մշակվում է 140 տոննա փաթեթելու թուղթ։ Այդ հանրապետության պահանջարկի աննշան մասն է բավարարում։ Կառուցվող թղթի ֆաբրիկայի նախագծային կարողությունը տարեկան 20 հազար տոննա է։ Այն հագեցած է լինելու Լեհաստանից ստացված ժամանակակից կատարելագործված սարքավորումով։ Շինարարությունը հաջող է ընթանում և բոլոր նախադրյալները կան այն 1967 թվականին շահագործման հանձնելու համար։ Այս տարվա երկրորդ կեսից Մասիս կայարանի շրջանում կսկսվի 60 հազար տոննա արտադրողականություն ունեցող ծալքավորված ստվարաթղթից փաթեթներ արտադրող խոշորագույն ֆաբրիկայի շինարարությունը։ ՍՍՀՄ-ի և արտասահմանյան երկրների փորձը ցույց է տալիս, որ ծալքավորված ստվարաթուղթը արկղեր պատրաստելու լավ նյութ է։ Ստվարաթղթի արկղերը ճնշող մեծամասնությամբ կարող են փոխարինել փայտից և ֆաներայից շինված արկղերին։*

*1967 թվականին մենք մտադիր ենք սկսել կահույքի նոր ֆաբրիկաների շինարարությունը Կիրովականում և Լենինականում, որոնցից յուրաքանչյուրն տարեկան թողարկելու է 3 և կես միլիոն ռուբլու արտադրանք։*

Լ. ԵՐԶՆԿՅԱՆ
Հայկական ՍՍՀ անտառային, ցելյուլոզային թղթի
և փայտամշակման արդյունաբերության մինիստր

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

## ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՐՈՆԱԿԱՆ ՄՆԱՑՈՒԿՆԵՐԻ ՀԱՂԹԱՀԱՐՈՒՄԸ

*Նոր մարդու, նրա հոգեբանության ու բարքերի ձևավորումը հարթ ու խաղաղ պրոցես չէ։ Դա հնի և նորի, մեռնողի ու ապրողի միջև անհաշտ գոտեմարտ է, որտեղ նորի հաղթանակին խոչընդոտում են անցյալի մնացուկները, ինչպես և կրոնական հավատալիքները։*

*Այդ պայքարում, ինչպես նկատում էր Վ. Ի. Լենինը, ամենահերթական խնդիրներից է կուլտուրական հեղափոխությունը, որի ընթացքում նեղանում է իմացական այն օբյեկտիվ հիմքը, որն իր մեջ թաքցնում է իրական աշխարհի խեղաթյուրված արտացոլման հնարավորությունը։*

*Կուլտուրայի, գիտության զարգացման բազայի վրա ավելի է ընդլայնվում մարդու մտահորիզոնը։ Որքան խոր է նա թափանցում բնության ու հասարակության «գաղտնիքների» մեջ, ճանաչում նրանց զարգացման օրենքներն ու օրինաչափությունները, այնքան ավելի ու ավելի է բացահայտվում կրոնի հակագիտական բնույթը և այն զրկում է իր «իմացաբանական» արմատներից։*

*Իրականության ճանաչումը դիալեկտիկական բարդ պրոցես է, որի նախնական աստիճաններում իրական պատճառների հետևանքով առանձին հասկացություններ, գաղափարներ կտրվում են իրականությունից, երևակայականը ընկալվում է իրականության, սովորական երևույթները՝ գերբնականի, պատահականը՝ անհրաժեշտի, երևույթը՝ էության տեղ և այլն։*

*Աթեիստական մեր պրոպագանդը ելնում է կուլտուրական հեղափոխության լենինյան ըմբռնումից, ըստ որի, բավական չէ միայն գերագույն էակի և նախապաշարումների հերքումը, այլ անհրաժեշտ է մարդկանց դաստիարակել գիտա-մատերիալիստական աշխարհհայացքով, նրանց ներարկել ժամանակակից գիտության տվյալներից բխող անսասան համոզումներ։*

*Գաղտնիք չէ, որ մեր ապրած այս բուռն դարաշրջանում անհաշտ պայքար է ընթանում բուրժուական և մարքսիստական աշխարհըմբռնումների միջև։ Չկարողանալով դիմակայել կոմունիզմի առաջխաղացին, իր դարն ապրած բուրժուական գաղափարախոսությունը բազմաթիվ եղանակներով ու մեթոդներով օգտագործում է կրոնական հաշիշը մարդկային զանգվածների բթացման նպատակով։ Միջազգային ռեակցիոն բուրժուազիան, վիթխարի միջոցների վատնումով, փորձում է սոցիալիստական երկրների մարդկանց հոգում սերմանել կրոնական հավատալիքներ, վարկաբեկել մարդու ստեղծագործ կարողությունն ու նրա ամենազոր բանականությունը։*

*Նոր չէ, որ հետադիմական ուժերը կառչում են խավարամոլության բաշնից՝ կրոնական հավատալիքներից։ Հասարակական-պատմական մեծագույն շրջադարձերի պահերին կրոնը հանդիսացել է այն վահանը, որը պարտվող հետադիմականը դեմ է տվել առաջավոր մտքի նիզակներին։*

*Կրոնական նախապաշարումների հաղթահարումը կոմունիզմի կառուցման օրինաչափություններից մեկն է, առանց որի հնարավոր չէ արգասալի դարձնել մարդկության առաջընթացը կյանքի բոլոր մարզերում։ Եվ այդ առումով անհրաժեշտ է շեշտել, որ սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և կուլտուրական մեծագույն առաջընթացի շնորհիվ ՍՍՀՄ բնակչության մեծագույն մասը զերծ է կրոնական դավանանքից։ Դա նշանակում է, որ պատմության մեջ առաջին անգամ մարդկային զանգվածները մատերիալիստական սկզբունքների վրա են խարսխում իրենց առօրյա կյանքը, բարոյականությունն ու բարքերը։*

*Ընթանալով կուլտուրական հեղափոխության հունով, սովետական բազմամիլիոն քաղաքացիներ կրոնին և կրոնական մորալին հակադրում են անհամեմատ բարձր ու ճշգրիտ աշխարհհայացք, ավելի վսեմ ու մարդկային բարոյականություն։ Դա մարքսիզմ-լենինիզմն է, կոմունիստական մորալը։*

*Սովետական իշխանության տարիներին անհավատների աստիճանական աճումը միանգամայն բնականոն պրոցես է, որը, հիրավի, արդյունք է այն մեծագույն վերափոխումների, որոնք տեղի են ունեցել սոցիալիստական հասարակության կառուցման ժամանակամիջոցում, մարդկանց գիտակցական, հոգեբանական, բարոյա-կենցաղային ոլորտներում։ Իրենց գիտատեխնիկական, ինտելեկտուալ կարողությունների փայլուն սխրանքներով սովետական մարդիկ վաղուց ընթանում են պատմության հետախույզների շարքերում։*

*Անդրադառնալով կրոնական հայացքների վերջնական անհետացման խնդրին, Կ. Մարքսը գրել է. «Իրական աշխարհի կրոնական արտացոլումն առհասարակ կարող է անհետանալ միայն այն ժամանակ, երբ մարդկանց ամենօրյա պրակտիկ հարաբերությունները կարտահայտվեն նրանց իրար և բնության հանդեպ ունեցած բանական և պարզ կապերով»* (К. Маркс, Ф. Энгельс, Сочин., т. 23, стр. 90)*։ Սակայն զարգացման այս աստիճանին հասնելու համար տակավին մեզ շատ անելիքներ ունենք, որովհետև կրոնական հավատալիքների հաղթահարումը սերտորեն կապված է առհասարակ անցյալի մնացուկների վերացման հետ։ Իսկ այս դեպքում մեր ճանապարհին կան զգալի դժվարություններ, որոնց ճիշտ հաշվառումը մեր պարտականությունն է։*

*Այն հսկայական փոփոխությունները, որոնք կատարվում են մեր ընդհանուր զարգացման ընթացքում գյուղի ու քաղաքի տարբերությունների վերացման, կենցաղում կանանց վիճակի արմատական բարելավման բնագավառներում, մասսաների կուլտուր-գիտական մակարդակի բարձրացմամբ՝ մեծապես նպաստելու են աթեիստական հայացքների տարածմանն ու արմատավորմանը։*

*Զինելով հասարակությանը նորագույն գիտա-տեխնիկական հարուստ բազայով, կոմունիզմը գալիս է ամբողջ հասարակական կյանքը կազմակերպելու կատարյալ պլանային սկզբունքներով և դրանով իսկ ապահովում բնության*

ուժերի կառավարումը հօգուտ մարդկության: Ոչ միայն առաջավոր տեխնիկա և նյութական բարիքների առատություն, այլև մարդկանց միջև կատարյալ հումանիստական հարաբերությունների հաստատում է բերում կոմունիստական հասարակությունը, այդպիսով իսկ ապահովում կրոնի լիակատար հաղթահարումը հասարակական կյանքից:

Սակայն կրոնական հավատալիքների վերացումը պահանջում է մարդկանց հասարակական հարաբերությունների, նրանց աշխարհայացքի ու բարոյական կոփվածքի ամենօրյա մշակում ու կատարելագործում գիտական կոմունիզմի ոգով: Այս ուղղությամբ պետք է ընթանա մեր երկրում մարդկանց դաստիարակության ընթացքը, նրանց էմոցիոնալ աշխարհի ձևավորումն ու հարստացումը: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXII համագումարը գտավ անհրաժեշտ լուրջ միջոցառումներ մշակել աթեիստական պրոպագանդի ու դաստիարակության ցանցում լայն մասսաներին՝ հատկապես աճող սերնդին ներգրավելու համար: Ազգաբնակչության ընդհանուր կուլտուրական մակարդակի բարձրացումը չի բացառում, այլ մեզ թելադրում է իրոք արդյունավետ ձևերով և ներգործման ակտիվ մեթոդներով վարելու աթեիստական պրոպագանդը, մարդկանց մատերիալիստական աշխարհայացքի զարգացումը: Ոչ միայն գիտության, այլև գրականության, արվեստի, մանկավարժության, մամուլի օրգանների, քաղաքական-հասարակական կազմակերպությունների ամենօրյա ակտիվ գործունեությամբ կապահովվի կրոնական նախապաշարմունքների հաղթահարումը:

Մասսաների կուլտուրական հետամնացության հաղթահարումը, ժողովրդական ինտելիգենցիայի ստեղծումը հենց այն միջոցներն են, որոնցով նոր հասարակությունը կռվում է կրոնական հավատալիքների դեմ, խարխլում կրոնի իմացաբանական հիմքերը:

Ի հակադրություն նախորդ գաղափարախոսությունների, սոցիալիստական կուլտուրան բացառում է ինչպես իդեալիզմը, այնպես էլ կրոնը: Սոցիալիստական կուլտուրայի իդեական հիմքը մարքսիստական-լենինյան տեսությունն է՝ մարդկային կուլտուրայի բարձրագույն արգասիքը:

Կուլտուրական հեղափոխությունը, նոր ինտելիգենցիայի ստեղծումը, ժողովրդական լայն զանգվածների գիտակցության մեջ մատերիալիստական աշխարհայացքի արմատավորումը հասարակական առաջընթացի կարևոր պայմանն են: Ճիշտ է, տնտեսական բազիսն է հասարակության զարգացման հիմքերի հիմքը, բայց այն դեռ ամեն ինչ չէ: Հասարակական կյանքը ենթադրում է բազիսի և վերնաշենքի միասնություն, նրա առաջընթացը պայմանավորված է նյութական ու հոգևոր կողմերի զարգացմամբ: Հենց այս գործում էլ խոշոր նշանակություն ունի կուլտուրական հեղափոխությունը, որի իրականացման համար նյութական համապատասխան բազայի հետ մեկտեղ անհրաժեշտ էին նաև մարդիկ՝ կուլտուրայի կենդանի կրողներ ու անմիջական տարածողներ: Բայց ինչպե՞ս վարվել, երբ բանվոր դասակարգի և գյուղացիության շրջանում այդպիսի մարդիկ քիչ էին: Սովետական իշխանությունը, կենսագործելով Լենինի ցուցումները, դիմեց կոմպրոմիսի՝ սոցիալիստական շինարարության մեջ ընդգրկելով բուրժուական ինտելիգենցիայի առաջադեմ խավին:

Բուրժուական ինտելիգենցիայի կողմից գիտական ու տեխնիկական գիտելիքների արմատավորումը կյանքում մարդկանց զինում էր բնության ու հասարակության «գաղտնիքների» իմացությամբ, և դրանով իսկ սահմանափակվում, նեղանում էր կրոնի իմացաբանական բազան: Իհարկե, բուրժուա-



կան ինտելիգենցիայի որոշ մասը սուբյեկտիվորեն աթեիզմի հակառակորդն էր, բայց նրա հանրօգուտ աշխատանքը չէր կարող դրական ազդեցություն չունենալ աշխատավորության հոգեբանության ու աշխարհայացքի, կրոնի նկատմամբ նրա քննադատական վերաբերմունքի վրա:

Բավականաչափ դժվար էր բուրժուական ինտելիգենցիայի օգտագործումը հատկապես այն բնագավառներում (օրինակ՝ լուսավորության սիստեմում), որոնք անմիջականորեն կապված էին մարդկանց աշխարհայացքի ձևավորման հետ: Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունը և սովետական իշխանությունը սկզբից ևեթ ձեռնամուխ եղան ժողովրդական ինտելիգենցիայի ստեղծմանը, որի միջոցով միայն կարելի էր մինչև վերջ լուծել կուլտուրական հեղափոխության վիթխարի խնդիրները:

Կուլտուրական հեղափոխության ամենաառաջնահերթ խնդիրը Լենինը համարում էր անգրագիտության վերացումը: Նա գրում էր. «...արդեն իսկ այն հանգամանքը, որ կարիք եղավ անգրագիտության վերացման արտակարգ հանձնաժողով ստեղծել, ապացուցում է, որ մենք (ինչպե՞ս ասենք, որ մեղմ դուրս գա) մի տեսակ կիսավայրենիներ ենք, որովհետև մի երկրում, որտեղ կիսավայրենի մարդիկ չեն ապրում, այնտեղ ամոթ կլիներ անգրագիտության վերացման արտակարգ հանձնաժողով ստեղծել—այնտեղ անգրագիտությունը վերացնում են դպրոցներում» (Երկեր, հ. 33, էջ 67):

Սոցիալիստական կուլտուրայի ստեղծման խնդիրները, ինչպես նշում էր Վլադիմիր Իլյիչը, անբաժան են մասսաներին մարքսիստական գաղափարախոսությամբ զինելու խնդիրներից: Կուլտուրական հեղափոխության գլխավոր խնդիրներից մեկը նա համարում էր սոցիալիստական հասարակության ակտիվ կառուցողի, նոր մարդու դաստիարակումը: Նոր մարդու նոր աշխարհայացքի ձևավորմամբ ու արմատավորմամբ զբաղվում էին հատկապես կոմունիստները, կոմերիտականները, հեղափոխական գվարդիայի մարտիկները, համոզված լենինյանները, որոնք և հանդիսանում էին մարտնչող աթեիզմի իրական կրողները:

Նոր սերնդի ուսուցման ու դաստիարակության և, հատկապես, աթեիստական ոգով դաստիարակելու գործում մեծ է հանրակրթական դպրոցի դերը: Սակայն դժվարությունն այն էր, որ դպրոցական դաստիարակներն ու մանկավարժները ի վիճակի չէին գիտական աթեիզմի գաղափարները հիմնավորապես պատվաստելու մատաղ սերնդին: Այստեղ ևս հրամայական էր դառնում կոմունիստական, սովետական մտավորականության բանակի ստեղծումը, առանց որի, չէր կարելի երազել մասսաների իրոք աթեիստական դաստիարակության մասին: Ուրեմն, հարցը պետք էր լուծել հիմնավորապես, հաշվի առնելով գալիք կյանքի բարդ պահանջները: Միլիոնավոր պատանիներին ուսուցելու հետ միասին, անհրաժեշտ էր սովորեցնել և ուսուցիչներին, սովորեցնել նաև աթեիստորեն:

Հանրակրթական դպրոցը ո՛չ միայն կոմունիզմի սկզբունքների տարածման օջախ է, այլև բանվոր դասակարգի գաղափարական և կազմակերպական ազդեցությունը գյուղացիական մասսաների վրա տարածողը, մատերիալիստական աշխարհայացքի պատվաստման միջոց: Իրոք, քանի դեռ մասսաներն անգրագետ են, հնարավոր չէ հասարակությանը գիտական-մատերիալիստական աշխարհայացքով դաստիարակել ու կրթել: Գրագիտությունը, թեկուզ և տարրական, մարդկանց ավելի ու ավելի է զինում բնության ու հասարակու-

թյան զարգացման օրինաչափությունների իմացությամբ։ Առանց անգրագիտության վերացման հնարավոր չէր լայնորեն տարածել կուլտուր-լուսավորական և հակակրոնական գաղափարները քաղաքի և գյուղի աշխատավորության շրջաններում։

Սովետական իշխանության տարիներին երկիրը դարձել է համատարած գրագիտության, մասսայական կուլտուրայի ու առաջավոր գիտության երկիր։

Այս հանգամանքը նպաստավոր և մեծագույն ազդակ է աթեիստական հայացքների հիմնավոր արմատավորման համար, հավատացյալների շարքերի հարաճուն մաղման համար։ Այժմ հարցը դրված է հետևյալ կերպ. մենք պետք է սովորենք ամբողջովին և խելոք (առանց որևէ վարչարարության կամ հավատացյալների զգացմունքների ծանակման) վարել գիտական-աթեիստական պրոպագանդան։ Իսկ դա նշանակում է, որ շարունակվում է կուլտուրական հեղափոխությունը, որը կոչված է բոլոր աշխատավորներին դաստիարակելու աշխարհի առաջավոր գաղափարներով՝ մարքսիզմ-լենինիզմով։

Գիտության ու տեխնիկայի անընդհատ կատարելագործումները, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացումը, կուլտուրական հեղափոխություն և այլն, իրենց հերթին, խթանում են արտադրողական ուժերի բուռն զարգացումը, նոր պահանջներ առաջադրում աշխատավորներին։ Նորագույն տեխնիկան օգտագործելու և զարգացնելու համար աշխատավորը պետք է տիրապետի գիտության հիմունքներին, հարստացնի գիտելիքները։ Աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, իր հերթին, մահացու հարված է կրոնական խավարամոլությանն ու նախապաշարումներին, որովհետև գիտության հիմունքներին ծանոթ, ժամանակակից տեխնիկայի սկզբունքները յուրացրած մարդն ավելի լավ է ճանաչում զարգացման օբյեկտիվ օրենքներն ու օրինաչափությունները։

Մասսաների աթեիստական դաստիարակության գործը կայուն հիմքերի վրա դնելու համար, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը լուրջ ուշադրություն էին նվիրում աթեիստական կադրերի պատրաստմանն ու դաստիարակությանը։ Այդպիսի կադրեր էին պատրաստվում բուհերին, կոմբուհերին, տեխնիկումներին կից հատուկ կուրսերում ու սեմինարներում, բանվորական ու գյուղացիական համալսարաններում, հակակրոնական ռադիո-համալսարանների միջոցով և այլն։ Աթեիստական կադրերի պատրաստման գործում զգալի տեսական ու մեթոդական օգնություն են ցույց տվել «Մարտնչող մատերիալիստ-դիալեկտիկների ընկերությունը», «Антирелигиозник», «Անաստված» գիտա-մեթոդական ամսագրերը, հակակրոնական, ուսումնական բազմաթիվ ձեռնարկներ և այլն։ Պետք է նշել, սակայն, որ այդ կադրերի պատրաստումը հայրենական պատերազմի ընթացքում դադարեցվեց և հետագայում գրեթե չվերականգնվեց։ Իսկ դա չէր կարող բացասաբար չանդրադառնալ ինչպես մասսաների աթեիստական դաստիարակության, այնպես էլ կրոնի դեմ մղվող պայքարի վրա։

Անհրաժեշտ է, միաժամանակ, նշել, որ աշխատավորների դաստիարակության, մարդկանց կրոնական հայացքների հաղթահարման գործում չի կարելի բավարարվել միայն գիտա-լուսավորչական պրոպագանդայով։ Մարդ կարող է իմանալ ամպրոպի, կայծակի, բնության մյուս տարերային ուժերի պատճառը, ծանոթ լինել տեխնիկային, բժշկությանը, գիտությանը, բայց մնալ հավատացյալ։ Ահա թե ինչու քաղաքականությունից, կյանքից կտրված զուտ կուլտուրական միջոցառումները դեռևս արդյունավետ չեն կարող լինել մասսաների դաստիարակության գործում։ Տեսությունն արժեքավոր է, երբ այն կապված է պրակտիկայի հետ։ Պրոպագանդան ուժեղ ու ազդու է, երբ նրա ելակետը աշխատավորների դասակարգային շահերն են։ Բավական չէ միայն բացահայտել կրոնի սոցիալական արմատները, ցույց տալ նրա շահագործողական բնույթը կամ աթեիստական պրոպագանդան փոխարինել եկեղեցու և հոգևորականության դեմ պայքարելով։ Դա վնասակար ծայրահեղություն է։ Կուսակցությունը գտնում է, որ գիտելիքների պրոպագանդան պետք է կրի ո՛չ միայն լուսավորչական, այլև աթեիստական բնույթ։ Միևնույն երևույթի երկու կողմերն են դրանք, որոնք պայմանավորում, լրացնում են միմյանց։

Կուլտուրական հեղափոխության նշանակալից հաջողություններից մեկն էլ լայն մասսաներին արվեստին ու գրականությանը հաղորդակից դարձնելն էր։

Գեղարվեստական պատկերներով իրականության արտացոլումն արվեստի յուրահատկությունն է, որը մեծ ազդեցություն է գործում հասարակական կյանքի վրա, ձևավորում է մարդուն, ակտիվ ազդում նրա զգացմունքների, մտքի, կամքի, բարոյական սկզբունքների վրա։ Գաղտնիք չէ, որ կրոնական արարողություններն ու ծեսերը սովետական առանձին մարդկանց գրավում են ամենից առաջ իրենց գունեղությամբ։ Եկեղեցական երաժշտությունը, խմբերգերը և այլն հավատացյալներին եկեղեցու ոլորտում պահելու փորձված ձևեր են, որոնք անընդհատ կատարելագործվում են։ Կրոնական սովորույթների ու հավատալիքների ստեղծման ընթացքում եկեղեցու սպասավորները հատուկ ուշադրություն են նվիրում մարդու հոգեբանության առանձնահատկություններին։ Եկեղեցին ոչ մի միջոցի առաջ կանգ չի առնում՝ մարդու բնավորության, հոգեկան աշխարհի վրա ազդելու համար։ Այդ առումով եկեղեցին բացառիկ նշանակություն է տալիս կրոնի պաշտամունքային տարրի թատերացմանը։ Հետևապես, այնտեղ, ուր բացակայում է մասսաների էսթետիկական պատշաճ դաստիարակությունը, այնտեղ դժվարանում է կրոնի դեմ մղվող պայքարը։

Կուլտուրական հեղափոխությունն ամբողջական լինել չէր կարող առանց գիտական գիտելիքների, որոնց լայն տարածումը կրոնի դեմ պայքարի արդյունավետ միջոցներից է։ Գիտության ամեն մի առաջընթաց քայլ, նոր, կործանիչ հարված է կրոնին։

Գիտության, տեխնիկայի, արդյունաբերության զարգացումը, տիեզերքի պրակտիկ հետազոտումը մարդուն ազատում են բնության տարերային ուժերին կուրորեն ենթարկվելուց, հետևապես և կրոնի մեջ «փրկություն գտնելու» ակնկալությունից։

Կրոնական հավատալիքներն արհամարհանքով դեն է շպրտում միայն բարձր գիտակցությամբ օժտված մարդը։ Վ. Ի. Լենինը գրում էր, որ սոցիալիզմը «գիտությանը մասնակից է դարձնում կրոնական մշուշի դեմ մղվող պայքարին և բանվորին ազատագրում է հանդերձյալ կյանքի հավատից նրանով, որ բանվորին համախմբում է երկրային լավագույն կյանքի իսկական պայքարի համար» (Երկեր, հ. 10, էջ 93)։ Գիտության զարգացումը նորի բացահայտումն է։ Գիտությունը ֆետիշներ չի ճանաչում, մերժում և հերքում է այն ամենը, ինչն իր դարն ապրել է, ինչը խոչընդոտում է նորի զարգացմանը։

Գիտական իմացությունը բարդ ու երկարատև պրոցես է։ Գիտությունը երբեք չի բավարարվում անցյալով։ Այն ծագել է բնության տարերային ուժե-

րի դեմ մարդու մղած պայքարի պրոցեսում և անընդհատ զորեղանում է այդ պայքարում։ Գիտությունը ուղղակի հակադիր է կրոնին։ Այն մարդուն օգնում է ազատվելու ճնշումից, ենթարկվածությունից, լճացումից. մինչդեռ կրոնը լճացնում է նրան, սպանում նրա մեջ մարդկայինը։ Կրոնական դոգմատիկան իր առջև խնդիր է դնում հավատացյալի մեջ խեղդել կյանքի ռեալ զգացումը։

Վերոհիշյալից չի կարելի հանգել այն եզրակացության, թե կրոնի (ինչպես և լուսավորչական կրոնի) մեջ ոչ մի փոփոխություն չի կատարվել, որ եկեղեցին անտարբեր, չեզոք է հասարակական կյանքի տարբեր բնագավառների նկատմամբ։ Ամենևին. եկեղեցին ստիպված է հրաժարվել բիբլիական անհեթեթություններից, որոնք վերաբերում են արեգակնային համակարգության կառուցվածքին, երկրի կազմավորմանը, կյանքի ու մարդու առաջացմանը։ Այսօր կրոնը փոխում է գիտության դեմ իր մղած պայքարի ձևերը, աշխատելով «քայլել» ժամանակի հետ, փորձելով գիտությունը վերածել հավատքի*։ Եկեղեցին բացեիբաց չի հակադրվում գիտությանը. ամեն կերպ աշխատում է հարմարվել, չի խորշում ոչ մի միջոցից, որպեսզի գիտական, հակակրոնական եզրակացությունները չգիտակցվեն հավատացյալների կողմից։

Սակայն եկեղեցին ո՛չ միայն չի զիջում իր դիրքերը գիտության, կուլտուրայի առաջ, այլև ուժեղացնում ու կատարելագործում է իր պայքարի ձևերը։ Այսպես, կրոնական տեսության ջատագովները օրինակ, ջանում են ապացուցել. քանի որ բոլոր աստղերն ունեն միևնույն տարիքը (հասակը), ապա նրանք ստեղծվել են միաժամանակ արարչի՝ աստծո կողմից։ Բայց ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը գիտականորեն ապացուցել է, որ «աստղերի տարիքն ամենևին միատեսակ չէ, այնպես, ինչպես միատեսակ չէ, օրինակ, մեծ անտառի ծառերի տարիքը» (տե՛ս «Ученые против религии». Московский рабочий, 1964, էջ 120), որ «Գալակտիկայում աստղերի առաջացումը շարունակվում է և այժմ... Մշտապես ծնվում են նոր աստղեր...» Այդ ամենը վճռականորեն հերքում է կրոնի այն թեզը, թե աշխարհն ստեղծել է աստված։

Սոցիալիստական հասարակությունը մեծ հնարավորություններ է ստեղծում գիտության զարգացման և աշխատավորներին գիտելիքներով զինելու համար։ Աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը, գիտության յուրաքանչյուր նորույթ, նոր, վճռական հարված է կրոնին։

Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

---

* Միջազգային աստղաբաշխական միության կոնգրեսի 1952 թ. (Հռոմ) մասնակիցներին Պիոս XII պապն ասել է, որ տիեզերագիտության նորագույն տվյալներն ամենևին էլ չեն զարմացնում հռոմեական եկեղեցուն։ Քանի որ նրանք, իբր թե, ապացուցում են աստծո ամենազորությունը, նրա հավիտենականությունը։



# ՄԵՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

## Ա. ԲԵԿԶԱԴՅԱՆԻ ՆՈՐԱՀԱՅՏ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ

Մինչև այժմ մեզ անծանոթ աշխատությունը հեղինակի հայրենիքում հայտնվում է գրվելուց հիսունչորս և հեղինակի մահից՝ քառասուն տարի անց։ Աշխատությունը հետաքրքրական երևույթ է բոլշևիկյան կուսակցության մինչհոկտեմբերյան ժամանակաշրջանի, մասնավորապես, բոլշևիկների արտասահմանյան վտարանդիության պատմության մեջ և նոր նյութ՝ մարքսիստական իրավագիտության համար։ Սակայն, մինչև օրս այն չի հիշատակվել բոլշևիկների պատմությանը նվիրված ոչ մի աշխատության մեջ, ինչպես և մեզ մոտ լույս տեսած իրավագիտական կամ փիլիսոփայական որևէ երկում։

ՀՍՍՀ արտգործժողկոմատի ինֆորմացիոն բաժնի 1921 թվականի հուլիսի 5-ի բյուլետենում ժամանակին հայտնվել է, որ 1911 թվականին գերմաներեն հրատարակվել է Սովետական Հայաստանի ճանրապետության պարենավորման և արտաքին առևտրի ժողկոմ Ալ. Բեկզադյանի գիտական մի աշխատությունը՝ Քաղաքական պրովոկացիան և դրա իրավաբանական անալիզը վերնագրով[1]։ Հեղինակի՝ Ցյուրիխի համալսարանի հասարակական-քաղաքական գիտությունների ֆակուլտետի ավարտական դիպլոմում գրված է, թե Բեկզադյանը պաշտպանել է դոկտորական դիսերտացիա, նշված աշխատության թեմայով։

Առաջինում ճիշտ չեն նշված աշխատության վերնագիրը, հրատարակության տարեթիվը, երկրորդում չկա տարեթիվը, ոչինչ չի ասված աշխատության հրատարակության մասին։ Հեղինակը ինքնակենսագրություններում (կամ որևէ այլ առիթով) ոչ մի անգամ չի հիշատակել իր այդ աշխատության մասին (նա իր մասին չի նշել ուրիշ շատ կարևոր տեղեկություններ ևս)։


INAUGURAL-DISSERTATION

UNIVERSITÄT ZÜRICH

Բայց ահա 1965 թվականի գարնանը Մոսկվայում մեր ձեռքն ընկավ 1956 թվականին Փարիզում լույս տեսած Ե. Զալեսկու Mouvments ouvriérs et socialistes (chronologie et bibliographie), la Russie, t. II (1908—1917) ֆրանսերեն բիբլիոգրաֆիական երկը, որի 76-րդ էջում հանդիպեցինք Ալ. Բեկզադյանի աշխատության ճիշտ վերնագրին. այդտեղ էլ նշված էր, որ գրքից կա Ցյուրիխի social-archiv-ում։

ՀՍՍՀ ԳԱ-ի գլխավոր գրադարանը պահանջներ ներկայացրեց ո՛չ միայն Ցյուրիխի, այլև Փարիզի ու Վիեննայի համապատասխան հաստատություններին։ Ի վերջո ստացվեց աշխատության

---

1 Տե՛ս ՀՍՍՀ ՀՀ և ՍՇ ԿՊԱ, ֆ. 4/114, ց. 1, գ. 5, էջ 15—16, թ. 3։

վտարանդիության մեջ։ Ապրել է Ցյուրիխում և Փարիզում, ավարտել է Ցյուրիխի համալսարանի հասարակական-քաղաքական ֆակուլտետը։ 1911—1912 թվականներին, որպես բոլշևիկների ներկայացուցիչ, Փարիզում մասնակցել է պրովոկատորներին մերկացնող հանձնաժողովի աշխատանքներին, որի նյութերի օգտագործման մասին նա նշում է իր այստեղ քննարկված գիսերտացիայի գրականության ցանկում։ Ի դեպ, այդ նյութերը մինչև օրս չեն հայտնաբերված և գիտական շրջանառության մեջ չեն դրված։ 1911-ի դեկտեմբերին մասնակցել է բոլշևիկների արտասահմանյան սեկցիաների Փարիզի խորհրդակցությանը, որը կայացավ Լենինի գլխավորությամբ։ Այնտեղ ընտրվել է բոլշևիկների արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի անդամության թեկնածու։ Եղել է Ցյուրիխի բոլշևիկյան սեկցիայի հիմնադիրներից ու ղեկավարներից մեկը։ Որպես բոլշևիկյան կենտկոմի ներկայացուցիչ մասնակցել է II Ինտերնացիոնալի Բազելի կոնգրեսին և գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության VIII (Ենայի) համագումարին։ Այդ ամբողջ ժամանակամիջոցում մոտիկ է եղել Վլադիմիր Իլյիչի հետ։

Որպես կուսակցական գործիչ նա հայտնի էր նաև Յուրի անունով։ Մինչև օրս այդ բանը լիովին բացահայտված չլինելու պատճառով, Բեկզադյանի մի շարք ծառայություններ մոռացության են տրվել, դրանով իսկ երբեմն հարուցելով որոշ թյուրիմացություններ։ Այսպես, Լենինի երկերի XXV հատորում տարիներ առաջ Բեկզադյանի Յուրի անունը վերծանված է որպես Գեորգի, տեղիք տալով Գեորգի Սաֆարովի հետ շփոթության։ 1964 թվականին պատմաբան Ի. Մ. Կրիվոգուզը «Вопросы истории КПСС» ամսագրի № 5-ում տպագրված իր հոդվածում Բազելի կոնգրեսին մասնակցած բոլշևիկյան ներկայացուցչության անդամներից Յուրի-Բեկզադյանին ներկայացնում է որպես Զացկի, մինչդեռ Զացկին բոլորին հայտնի մենշևիկ էր, որը չէր կարող լինել բոլշևիկյան պատգամավորության կազմում։ Պատմաբան Ա. Գ. Յակուշինան «Вопросы истории КПСС» ամսագրի 1964 թ. № 12-ում խոսելով 1911 թվականի դեկտեմբերին Փարիզում Լենինի ղեկավարությամբ կայացած վերը նշված բոլշևիկյան խորհրդակցության մասին, չի հիշատակում Բեկզադյանի անունը և այդ պատճառով մեկ հոգով (ընդամենը 13 հոգուց) պակասեցնում է խորհրդակցության մասնակիցների թիվը։ Յուրի-Բեկզադյանը չի հիշատակվում բոլշևիկների արտասահմանյան կազմակերպությունների կոմիտեի կազմում, մոռացության են տրվում նրա մի շարք այլ ծառայություններ։

Ալեքսանդր Բեկզադյանի կյանքի ու ստեղծագործության, և հատկապես այս հոդվածով առաջին անգամ հասարակության ուշադրությանը ներկայացվող նորահայտ աշխատության հետագա ուսումնասիրությունը կնպաստի ո՛չ միայն նրա գործունեության ավյալների ճշտմանը, այլև կօգնի բոլշևիկների արտասահմանյան կազմակերպությունների պատմության դեռևս չլուծված մի շարք հարցերի, չգրված էջերի լուսաբանմանը։

Մեր կարծիքով շատ օգտակար կլինի Ալ. Բեկզադյանի այս և մյուս աշխատությունների հայերեն հրատարակությունը։

Հոդվածի հեղինակը շնորհակալությամբ նշում է, որ օգտվել է Ալ. Բեկզադյանի աշխատության գերմաներեն բնագրից Լ. Դավթյանի կատարած թարգմանությունից։

Հոդվածը գրախոսել է իրավաբանական գիտությունների թեկնածու դոցենտ Ա. Թովմասյանը։



# ԳՐԱԿԱՆԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

## ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ ԿԵՐՊԱՐԸ ՐԱՖՖՈՒ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

*Հայ մտքի ու սրտի աշխարհում Նալբանդյանն իշխել է թե՛ իր կենդանության օրոք և թե, մանավանդ, մահից հետո։ Անցյալ դարի 50-ական թվականներից Նալբանդյանը ոգևորել ու պայքարի է կոչել ազատության ու երջանկության համար մարտնչող սերունդներին։*

*Նալբանդյանով հմայված ու ոգեշնչված հայ դասական գրողների մեջ Րաֆֆին իր ուրույն տեղն ունի։ Նա ո՛չ միայն հարել է ազատության ոսկեբերան երգչին, այլև գաղափարապես գործակցել նրան ու իր ստեղծագործություններում կերտել է նրա կերպարը։*

*Խորապես գիտակցելով Նալբանդյանի դերն ու նշանակությունը՝ Րաֆֆին իր անդրանիկ վեպի՝* Սալբիի *ճակատը զարդարել է նրա անվամբ։*

> «Անմահ Մ. Նալբանդյանցի միշտ օրհնյալ
> հիշատակին խորին մեծարանքով
>
> Ն Վ Ե Ր
>
> Ինձ քաղցր էր այդ պաշտելի Տղամարդի հավիտենական հիշատակը հարգել՝ իմ աշխատությանց երախայրիքն նորան ընծայելով: Թեպետ **Սալբիի** հեղինակը չէ ունեցել պատվելի Հանգուցելո հետ խիստ մոտավոր ծանոթություն, բայց քանի կա և կապրի հայոց լեզուն և գրականությունն, Մ. Նալբանդյանցի անմահ հիշատակը միշտ կունենա յուր վգալի համակրությունքը ամեն մի հայի սրտում մինչև դարերի վերջը»:

*1867 թ. Սալմաստում գրված այս ընծայականը խիստ ուշագրավ է Րաֆֆու՝ Նալբանդյանի նկատմամբ ունեցած վերաբերմունքի տեսակետից։*

*Ընծայականից արվող հիմնական եզրակացությունն այն է, որ Րաֆֆին իր անդրանիկ վեպը Նալբանդյանի հիշատակին է նվիրել ոչ պատահականորեն, այլ նրա հետևորդն ու գաղափարակիցը լինելու պատճառով։* Սալբին *Նալբանդյանին նվիրելը խորապես գիտակցված և կանխորոշված է եղել Րաֆֆու կողմից։ Այդ մտադրությունը նա ունեցել և իրագործել է մինչև ընծայականի գրելը, դեռևս Նալբանդյանի կենդանության օրոք, նրա բանտում գտնվելու շրջանում, իսկ մահվանից հետո փոփոխել ու լրացրել է վեպը, խոտացրել ու ընդարձակել հիմնական կերպարի՝ Ռուստամի բնութագիրը։*

Սալբիում *հեղինակը հանձին Ռուստամի լուսաբանել է Նալբանդյանի կյանքի ու գործունեության կարևոր կողմերը, բնավորության բնորոշ գծերը։*

*Առաջին ապացույցը, որ իրոք* Սալբին *հեղինակը նվիրել է Նալբանդյանին*

նախքան ընծայականը գրելը, այն խոսքերն են, թե «ինձ բաղցր է» (ընդգծումը մերն է.— Մ. Ն.) այդ պաշտելի Տղամարդի հավիտենական հիշատակը հարգել՝ իմ աշխատությանց երախայրիքն նորան ընծայելով»: Այս տողերից երևում է, որ Րաֆֆու վաղեմի բաղձանքն է եղել իր անդրանիկ վեպը Նալբանդյանին նվիրելը: Երկրորդը՝ վեպի գլխավոր հերոսի՝ Ռուստամի բնութագրի մեջ Նալբանդյանի նկարագրին հատուկ և բնորոշ գծերի լուսաբանումն է: Երրորդը՝ նամակներն են «Ռուստամի օրագրություններից», որոնցում միանգամայն ակնառու են Նալբանդյանին հատուկ մտքերը:

Չորրորդ ապացույցն այն է, որ վեպի սյուժետային գծի զարգացումը և հանգույցի լուծումը համապատասխանում են Նալբանդյանի ողբերգական մահվան հանգամանքներին: Ընծայականից ծագում է նաև այն կարևոր հարցը, թե Րաֆֆին ծանո՞թ է եղել Նալբանդյանին, քանի որ նա գրել է. «Թեպետ Սալբիի հեղինակը չէ ունեցել պատվելի հանգուցելո հետ խիստ մոտավոր ծանոթություն»:

Րաֆֆու այս խոսքերը մեզ բերում են այն համոզման, որ նա անձնապես ծանոթ է եղել Նալբանդյանին ու նրա Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ աշխատությանը: Եթե այդպես չլիներ, նրանց միջև գոյություն չունենային անձնական և, մանավանդ, գաղափարական ծանոթություն և կապեր, ինչո՞ւ պետք է Րաֆֆին խոսեր իրենց ծանոթության մասին և, միաժամանակ, վերապահում աներ դրա բնույթի վերաբերյալ: Մեր հետևությունն այն է, որ Նալբանդյանը ցարական կառավարության կողմից մեղադրվել է որպես ըմբոստ հեղափոխական և վախճանվել աքսորավայրում, հետևաբար, եթե Րաֆֆին հայտնի դարձներ իր և Նալբանդյանի «խիստ մոտավոր» ծանոթությունը, հասկանալի է, որ ինքը ևս կհետապնդվեր ու կհալածվեր: Ահա թե ինչու Րաֆֆին պիտի զգույշ արտահայտվեր իր և Նալբանդյանի ծանոթության մասին, վարագուրեր այն: Բազում փաստեր կան, որոնք ապացուցում են թե Րաֆֆին ու Նալբանդյանը գաղափարակիցներ են: Ահա դրանցից մի քանիսը. Րաֆֆու Սալբի վեպի ու նրա առաջաբանի և Նալբանդյանի Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ աշխատության հիմնական մտքերի ընդհանրությունները, որոնք հիմք են տալիս ասելու, որ Րաֆֆին այդ երկը կարդացել է Նալբանդյանին նվիրած իր ընծայականից առաջ: Բայց ինչպե՞ս, որտեղի՞ց էր Րաֆֆին ձեռք բերել Երկրագործությունը, չէ՛ որ այն լույս էր տեսել Փարիզում, Սիմոն Մանիկյան ծածկանվամբ:

Նախ՝ պատասխանենք այն հարցին, թե ե՞րբ և որտե՞ղ կարող էր նա ծանոթանալ Նալբանդյանի հետ, ապա անդրադառնանք Երկրագործությանը:

Րաֆֆին Նալբանդյանի հետ կարող էր ծանոթացած լինել 1860 թ. օգոստոս-սեպտեմբեր և հոկտեմբեր ամիսներին, երբ վերջինս հնդկահայ կտակի վերաբերյալ իր հավատարմագիրը հաստատելու համար եկել էր Թիֆլիս, Էջմիածին, Երևան ու մեկուկես ամիս մնացել Հայաստանում:

Իսկ որտեղի՞ց կարող էր նա ձեռք բերել և կարդալ Երկրագործությունը: Հայտնի է, որ երկն անլեգալ ճանապարհով մուտք է գործել և՛ Ռուսաստան, և՛ Թուրքիա, ունեցել իր ընթերցողները: Այն Րաֆֆին կարող էր ձեռք բերել Փարիզից, Կ. Պոլսից, Ռուսաստանից և Հնդկաստանից, այդ վայրերում ապրող Նալբանդյանի գործակիցների և համակիրների, նրանց մերձավորների և յուրայինների միջոցով: Կասկածից վեր է, որ հայ ժողովրդի բոլոր հատվածները, հակառակ գոյություն ունեցող արգելքներին, բարոյապես ու հոգեպես



անքակտելիորեն կապված էին միմյանց հետ և ձուլման ու ապազգայնացման վտանգի դեմ պայքարում էին միահամուռ ուժերով, միասնական հայրենիքի ստեղծման ու ազատության նվաճման երազներով խանդավառված: Րաֆֆու ծննդավայրում՝ Պարսկաստանում, լինում էին նրա ռուսահայ, արևմտահայ ու ֆրանսահայ համախոհները, նրանցից ոմանք ջերմորեն հյուրընկալվում էին վիպասանի հայրական տանը:

Րաֆֆու հայրենակիցները նույնպես լինում էին Արևմտյան Հայաստանում, Ռուսաստանում, Հնդկաստանում, Ֆրանսիայում: Րաֆֆին ևս ճանապարհորդելիս հյուրընկալվել է Երևանում, Էջմիածնում, Թիֆլիսում, Վանում և այլուր: Պարզ է, որ այդպիսի լայն շփման ու կապերի առկայության պայմաններում նրա համար անհնար չէր Երկրագործությունը ձեռք բերելը: Այս կապակցությամբ հիշենք նաև այն խիստ կարևոր հանգամանքը, որ Հյուսիսափայլը հրատարակվելու շրջանից սկսած Րաֆֆին ոգևորված ու հմայված էր Նալբանդյանով:

> «...Նալբանդյանի գեղեցիկ գրվածքներն ու նրա թարգմանած «Թափառական հրեայի» առաջին հատորը,— *գրում է Ավագ Ավթանդիլյանը*,— մի մի ուղեցույց եղան Րաֆֆին. որոնցով էլ նա իր աշխարհաբարը հարթեց...»:

Նախքան Րաֆֆու ստեղծագործություններում Նալբանդյանի կերպարի կերտմանն անդրադառնալը հարկ ենք համարում ընդհանուր հայացք գցել Սալբիի ու, հատկապես, նրա առաջաբանի և Երկրագործության միջև եղած ընդհանրություններին, դրանց հանգամանալից և ամբողջական քննությունը թողնելով մի այլ առիթի: Խիստ ակնբախ են ընդհանրությունները լուսավորության, հողի և ազգության վերաբերյալ Նալբանդյանի և Րաֆֆու հայացքներում, ինչպես նաև բուրժուական բռնապետական պետությունների գաղութային քաղաքականության ու հոգևորականության քննադատության հարցերում:

Նալբանդյանն իր հրապարակախոսական մարտաշունչ երկի՝ Երկու տողի մեջ և Րաֆֆին իր Սալբիի առաջաբանում ջերմորեն գովատում են Ժան Ժակ Ռուսսոյին և Վոլտերին, որպես «ճնշված մարդկության անմահ բարեկամքի, և ազատության ու լուսավորության պատգամախոսների»: Րաֆֆին խիստ ոգևորված էր նրանով, որ «լուսավոր դարում» այդ «մեծամեծ մտածողների փիլիսոփայությունքը լսելի» էին լինում «պարսկական բարբառում»: Րաֆֆու տեսակետն այն է, որ լուսավորությունն ու բռնությունը անհամատեղելի են: Այդ հարցում արձագանքելով Նալբանդյանին, նա պաշտպանում է այն տեսակետը, որ սարկության ու աղքատության մեջ լուսավորություն տարածել հնարավոր չէ: Անդրադառնալով պարսկահայության «տգիտության մահահրավեր խավերի մեջ» մնալու հարցին՝ Րաֆֆին հանգում է այն եզրակացության, որ դրա պատճառը պետք է փնտրել պարսկական բռնապետության բարբարոսական քաղաքականության, պարսկահայերի ազգային ճնշվածության և հողազրկության ու աղքատության մեջ: Ինչպիսի ջերմությամբ Րաֆֆին փառաբանում էր լուսավորությունն ու նրա առաքյալներին՝ Ռուսսոյին ու Վոլտերին, նույնպիսի ատելությամբ խարազանում և նշավակում էր խավարասերներին ու բռնակալ ավազակներին:

Րաֆֆին պահանջում էր պարսկական կալվածատիրության ձեռքին կենտրոնացված հողը հատկացնել նրա մշակողին՝ աշխատավոր գյուղացուն:

> «Պարսկաստանի հողը՝ որ արդար իրավունքով պիտի բաժանված լիներ հասարակ ժողովրդի մեջ,— *գրում է Րաֆֆին*,— տակավին հին կալվածատիրական ժառանգությամբ, մնացել է խաների, բեկերի, մոլլաների և ավնվականների ձեռքում: Եվ կալվածատիրոջ յուր հողի անիրավ գործադրությունը, ոչ միայն չէ տալիս որևիցե վաստակ նորա մշակող ռայաթին (հպատակին), այլ թողնում էր նորան միշտ ստրուկ, որ գործում էր միմիայն յուր տիրոջ համար»:

Րաֆֆին գիտակցում էր, որ այդ խնդիրը խաղաղ ճանապարհով լուծվել չի կարող, դրա բանալին բռնապետական կարգերի տապալումն է: Այդ հարցը նա դնում-էր վճռական ձևով, հստատատամիտ: Այդ տեսակետից ուշագրավ է նրա ահեղ նախազգուշացումը Նասրեդդին շահին:

> «...Եթե նա կանգուցաներ յուր ժամանակը յուր նախորդների պես, թող գիտցած լինի, որ ժամանակը կկարգադրե յուր պիտույքները,— *գրում էր Րաֆֆին*,— և Պարսկաստանը կվերանորոգվի ինքնուրույն՝ առանց նայելու որևիցե տիրապետողի կամքին: Արդեն Պարսկաստանի արշալույսը սկսել է շառագունել, և արևի ծագումը արդեն գուշակվում է... այնուհետև կհալածվին սև թուխպերը մթին խավարի հետ և ամենայն բան կերթա յուր կարգին...»:

Դժվար չէ նկատել, որ Րաֆֆու այս հայացքը համընկնում է Նալբանդյանի՝ ստրուկը յուր հողով հանդերձ ազատ քարոզելու և կացնի դիմելու հայեցակետին:

> «Եթե վաղօրոք, խելք գործ չդրվի, ստրուկը յուր հողով հանդերձ կատարելապես ազատ չքարոզվի և այս կերպով այն կնճիռը,— *գրում է Նալբանդյանը*,— չլուծվի, ստրուկը կացինով կվճռե գործը»: Որոշակի ընդհանրություն կար հողն իր մշակողին՝ գյուղացուն տալու, և հարստահարության վերացման խնդրում Նալբանդյանի և Րաֆֆու հայացքների միջև: Վիպասանի գործերում բուռն է աշխատանքի փառաբանությունը, նա խորապես հավատացած է, որ գալու է մշակ մարդու «արքայությունը»:

Րաֆֆին անողոք քննադատել է եվրոպական պետությունների «քաղաքակրթության» շղարշով քողարկված կեղծավոր, կեղեքիչ ու մարդակուլ քաղաքականությունը:

> «...Արդարև, լուսավոր կոչված ազգերի այժմյան քաղաքականությունը — այդ մեծ պոռնիկը — յուր կեղծավոր և անուշ լեզվով,— *գրում է Րաֆֆին*,— յուր դիմակավոր դեմքի անգութած փայլողությամբ հրապուրում է քո սերը, բայց հավատացնում եմ քեզ, բարեկամ, որ նորա այն քաղցրախոս շրթունքների մեջ թագուցած է մահաբեր թույնը: Զի թեպետ, անցած, գնացած դարերում, մարդկության առաջին թշնամիքը՝ սրերով ու թրերով էին սպանում ազգությունքը և բռնությամբ էին կողոպտում նոցա գույքը, բայց այժմ խորամանկ քաղաքականությամբ ծծում են յուրյանց կոհերի արյունը, և կողոպտում են նոցա ապրանքը: Եվ այդ ամենամեծ վամպիրները, մինչ այն աստիճան ծանրացուցել են խղճալի կոհերի բունը, մինչ նոքա ամենևին չեն զգում, թե սպառվում է յուրյանց կյանքը...»:

Րաֆֆու այս տողերը հիշեցնում են Նալբանդյանի՝ եվրոպական պետությունների և, մասնավորապես, Անգլիայի գաղութային կողոպտիչ քաղաքականության սպանիչ քննադատությունը. «Քաղաքակրթության» տարածման կեղծ խոսքերով, ոսկե դիմակով ծածկված, Չինաստան ներմուծվող աֆիոնի այնտեղից արծաթ արտահանելու փաստը:

Նա համոզված էր, որ բռնությունը կոչնչանա, ազատությունը և արդարությունը վերջնականապես կհաղթանակեն, ու կգա ճնշված ժողովուրդների երազած «ոսկեղեն դարը»:

Իր ստեղծագործություններում Րաֆֆին անողոք ու վճռականորեն քննադատել է նաև հոգևորականներին: Սալբիում վանքերը՝ «թամբալխանաներ, ծույլերի և տխմարների» բնակարաններ է անվանել նա, ուր հավաքվել են ժողովրդից կտրված պորտաբույծ հոգևորականները: Րաֆֆու գնահատմամբ



ոգետ հոգևորականությունը լուսավորության և մարդկության առաջընթացի թշնամին է, խավարի երկրպագուն:

> «Ամեն մի տերությունք,— *գրում է Րաֆֆին*,— որոնց մեջ գլխավոր տեղը բռնել են հոգևորականք, ամենևին հառաջ չեն գնում: Հին Չինաստանը և խավար Հնդկաստանը մեկ օրինակներ են, բրահմանականությունը և այլն մեր խոսքերի ապացույցներն են...»:

Իր այս քննադատությամբ վիպասանը ձեռք է մեկնում Միքայել Նալբանդյանին, ծափահարում հատկապես Երկու տողում, Հիշատակարանում և Մեռելահարցուկում հոգևորականության սպանիչ քննադատությանը:

Սրանցով չեն սպառվում այն փաստերն ու տվյալները, որոնք վերաբերում են Սալբիի և Երկրագործության միջև եղած ընդհանրություններին, բայց մեր ասելիքը սահմանափակենք այսքանով:

Գաղափարական համախոհության վառ վկայությունն են Րաֆֆու զրույցը գրող Ղազարոս Աղայանի հետ և նամակները: 1868 թվականի հունվարին, Երևանում, Րաֆֆին ծանոթանում է Ղազարոս Աղայանի հետ և հայ գրականության մասին զրուցելիս ասում. «Ես Նալբանդյանցի ուղղության եմ համակրում, իմ կարծիքով միակ ուղիղ ճանապարհը նրա քարոզածն էր»:

1868 թվականի հունվարի 1-ին Ավագ Ավթանդիլյանին հասցեագրած իր նամակում Րաֆֆին այսպես է արտահայտվել Նալբանդյանի մասին նրա մահվանից հետո, երբ արդեն Սալբի վեպը հատուկ ընծայականով նվիրել էր ազատատենչ երգչին. «Քանքարավոր Մ. Նալբանդյանցի ցավալի կյանքը և նորա սգավոր մահը նկարագրող լրագիրը անհամբերությամբ սպասում եմ ստանալ...»:

Այս նամակից ընդամենը 28 օր հետո (1868 թվականի հունվարի 29-ին), Ավթանդիլյանին գրած իր մի այլ նամակում Րաֆֆին գրում է, որ արդեն ստացել ու կարդացել է «անհամբերությամբ» սպասած ամսագիրը և հայտնում է իր բացարձակ դժգոհությունն ու զայրույթը Նալբանդյանի մասին խիստ կարճ և ոչ բովանդակալից գրելու դեմ: «Մի՞թե այդքան կարճ պետք է խոսել այն Տղամարդի մասին, որ այնքան երկար և սրտաշարժ ոճով խոսեցել է մեր ազգային պիտույքների մասին»:

Այդ նույն նամակում Րաֆֆին Ավթանդիլյանին խնդրում է՝ ինչ գնով էլ լինի, ձեռք բերել Նալբանդյանի լուսանկարը և ուղարկել իրեն:

> «Դուք գրած էիք, թե պարոն Նալբանդյանցի լուսանկար պատկերը հիշյալ պարոնի մոտ տեսած եք. բայց ի՞նչ եղավ Ձեր Պոլսուց գրել տված հանգուցելո պատկերն: Արժանապես Մոսյո Թոմասի խոստումնքներն հավիտենականության կարոտություն ունեն, բեր այնքան համբերություն: Լավ է, որ դուք Ձեր այժմյան ծանոթ պարոն Ելիկելեպյանի միջնորդությամբ բերել տաք իմ և Ձեր խնդրած պատկերները»:

Նալբանդյանի նկատմամբ Րաֆֆու տածած ջերմ սիրո և գաղափարական համախոհության վառ արտահայտություններից մեկն էլ այն է, որ նա իր մահվանից մեկ տարի առաջ՝ 1887 թվականին, մտադրություն է ունեցել գրել Նալբանդյանի կենսագրությունը: Հիշյալ հարցի կապակցությամբ հատուկ ուշադրության է արժանի Կ. Մարտիրոսյանի 1887 թվականի մարտի 25-ին, Մոսկվայի Լազարյան ճեմարանի ուսուցիչ Խաչատուր (Քուչուկ) Հովհաննիսյանին գրած անտիպ նամակը, որը մեր ձեռքն ընկավ արխիվային պրպտումների ժամանակ:

Այդ նամակում Կ. Մարտիրոսյանը գրում է.

> «...որովհետև Նալբանդյանի երկասիրությանց հրատարակելու պատճառավ կանայան խոչընդոտներ են պատահում ժառանգների կողմից ամենայն քայլում, ուստի մեկ մնում է

> հրատարակելու մեր ձեռքին գտնվածները: Առաջին հատորի սկզբում դրվելիք կենսագրության մասին գրել եմ արդեն հանգուցելու մտերիմ ընկերներից մեկին՝ բժ. Անանիա Սուլթան Շահին, Ղըլար: Լսելով մեր ձեռնարկության մասին, հայ տաղանդավոր փիլասան պարոն Րաֆֆին ինքն առաջարկեց ինձ կազմելու այդ կենսագրությունը»:

Նշենք նաև, որ Վիեննայի Մխիթարյանների հրատարակած Րաֆֆու երկերին կցված հայտարարություններում (որոնք վերաբերում են հեղինակի այն ձեռագրերին ու անտիպ երկերին, որ պետք է լույս ընծայվեին) ի թիվս այլ գործերի, հիշատակված են նաև կենսագրություններ:

Անհիմն չի լինի մտածել, որ դրանց մեջ, մեր կարծիքով, եղել է նաև Նալբանդյանի կենսագրությունը: Նալբանդյանի նկատմամբ Րաֆֆու տածած անհուն սիրո և գաղափարական գործակցության պերճախոս ապացույցը, նրա կերպարի կերտումն է Նվեր N-ի հիշատակին բանաստեղծության մեջ: Այս բանաստեղծությունը գրված է 1870 թվականին և լույս է տեսել Փունջի առաջին հատորում (1874 թ.): Այստեղ նկարագրված են Նալբանդյանի կրած հալածանքները, բանտարկությունը, նրա հիվանդությունը՝ «բարակացավը» և մահը: Րաֆֆու այս բանաստեղծությունը վրիպել է գրականագետների ուշադրությունից և չի ընկալվել ու վերծանվել որպես Նալբանդյանին նվիրված ներբող:

Նալբանդյանի կերպարը Րաֆֆին կերտել է նաև Սալբի, Ջահրումար, Ոսկե աքաղաղ, Խաչագողի հիշատակարանը և Կայծեր վեպերում: Սալբիում հանձին Ռուստամի նա կերտել է Նալբանդյանի կերպարը, ինքնատիպ հնարանքներով ամբողջացրել նրա բնութագիրը:

Գրողը հատուկ ուշադրության է արժանացրել իր «վիպասանության նազելի» հերոսի՝ Ռուստամի, անվանակոչությունը. «Մահտեսի Ավետիսին ծնվում է մի արու զավակ,— գրում է Րաֆֆին,— որ կոչեցին Հովհաննես, որ յուր պատանեկության հասակում վայելչագեղ և քաջ տղամարդ լինելու համար ստացավ Ֆիրդուսիի հերոսի անունը, Ռուստամ»:

Րաֆֆին ցանկացել է ընթերցողին հասկացնել, որ իր վեպի հերոսի իսկական անունը փոխված է: Հեղինակը նպատակ է ունեցել հատկապես ընդգծել Նալբանդյանի «տղամարդ»՝ ասպետ աննկուն մարտնչող լինելը, ուստի, նրան կոչել է Ֆիրդուսու հերոսի անունով՝ Ռուստամ: Ընդարձակելով իր հերոսի բնութագրությունը՝ վիպասանը երևան է հանել նրա «անզուգական հատկությունները»՝ «լայն և բարձր ճակատը», «թուխ վառվռուն աչքերը, որոնք նապաստակի երկչոտ աչքերի նման դուրս ընկած չեն, այլ՝ առյուծի հպարտ նշաձև աչքեր, նետի պես երկար թերթերունքներով՝ փայլում են երկու աստղերի պես»: Առանձին ուշադրություն է նվիրված Ռուստամի ազատասիրությանը, ազգասիրությանը և քաջասրտությանը: Հեղինակի կարծիքով Ռուստամը այդպիսի բարեմասնություններով է օժտված, որովհետև նա «նահապետական օրհնյալ գերդաստանի զավակ» է, «բնության հարազատ որդի» և առևտրական աշխարհի հետ ոչ մի առնչություն չունեցող մարդ:

Ռուստամը չի հանդուրժում հոգևորականության կույր հնազանդության քարոզը, ըմբոստանում է դրա դեմ. «Նա երբեմն հակառակում էր փրկիչի այն խոսքերին, թե մի երեսին զարկելու ժամանակ, մյուսը պետք է դեմ տալ, առավել հավանություն էր տալիս Մովսիսական փոխարինությանը «ակն ընդ ական, ատամն ընդ ատաման»»:

Աներկբայելի է, որ հողի հարցը խիստ բնորոշ է Նալբանդյանին և այդ խնդիրն արմատապես արծարծելու առումով նա մրցակից չունի հայ գրական-



նության և հրապարակախոսության մեջ. «...մի ազգ, որ չունի երկրի վրա մի կտոր հող և ապրում է օտարի հողի վրա (ընդգծումը մերն է—Մ. Ն.) այդ ազգը կլինի այն հողատիրոջ ծառան, նրա ստրուկը, և այդ ազգի աչքերից երբեք չեն պակասելու արտասուք և լաց», կարդում ենք Սալբիին գրած Ռուստամի նամակներից մեկում: Լուսավորության, մարդկանց իրավահավասարության ու ազատության հարցերը ևս կենտրոնական տեղ են գրավում Նալբանդյանի հրապարակախոսության մեջ, կազմում են նրա բովանդակությունը:

> «Ինչ անեն հայերը, ինչ հող ածեն իրանց գլխներին,— ասում է Ռուստամը,— մի՞թե առանց ուսումի, առանց գիտության և առանց լուսավորության մարդը կարող է կատարյալ մարդ լինել, յուր օգուտը ճանաչել, յուր վնասը հեռացնել, յուր ազգը սիրել և յուր հայրենիքը պաշտպանել...»

Ռուստամը Սալբիին գրում է, որ պարապում է իր ընկերների հետ, «Ես աշխատում եմ բաց անել նրանց միտքը, նրանց աչքը և նրանց ձեռքը»: Այնուհետև նա շեշտում է, որ իր դասերը տեղի են ունենում «լուսնյակի կաթնագույն լույսով, երբ բոլոր չադրների մեջ քնած են լինում հովիվները»:

Դասերը գիշերներն անցկացնելու հանգամանքը ցույց է տալիս, որ դրանք գաղտնի էին, արգելված: Ռուստամն իր ընկերների մեջ «ազգային սեր զարթեցնելու համար» բացի «այլևայլ հնարքներ» գործադրելուց, սովորեցնում է նրանց նաև ազգային երգեր՝ «Թե իմ ալևոր հերքս սևնայրին», «Տե՛ր, կեցո դու զհայս» և այլն: Տարբերություն չկա Ռուստամի և Կոմս Էմմանուելի «Տեր, կեցո դու զհայս» երգի նկատմամբ ունեցած ջերմ վերաբերմունքի միջև: Նույն ձևով են նրանք քննադատել այդ երգի հին լեզուն: Նույնը պետք է ասել նաև հայ կանանց ազգային երգերի և երաժշտության նկատմամբ ունեցած անտարբերության հանդեպ նրանց կարծիքների մասին:

Սալբիում կոնկրետ փաստերով ցույց է տրված Ռուստամի գրական գործունեությունը: «Ոտանավորներ ու երգեր շարադրելու տաղանդ ուներ», ասված է նրա մասին, այնուհետև գրում է, որ ռես Վասակյանցը Ռուստամի սենյակից գաղտնի հափշտակում է վերջինիս Հիշատակարանը ու Ազատ ժամեր (պետք է հասկանալ Ազատն աստված) խորագիրը կրող «բոլոր տաղաչափությունները»-ը և հանձնում պարսիկ Ֆաթալի խանին: Վերջինս կարդալով Ռուստամի «Երանի մի ժամ, երանի մի օր...» պարսկերենի թարգմանված ոտանավորը՝ ասում է. «Արդարև այդ մարդը հասարակ մարդերի կարգից չէ... Այդ մարդը մի վտանգավոր մարդ է» (ընդգծումը մերն է—Մ. Ն.):

Խանի հայ գործակիցը Մելիք Ավազակյանցը, հաստատելով նրա ասածը, ավելացնում է, որ «Ռուստամի թունավոր գրվածքները ցույց են տալիս նրա զարհուրելի մտքերը»: Պարսիկ Ֆաթալի խանի և հայ մելիք Ավազակյանցի հավատարիմ գործակալ ռես Վասակյանցը հաստատելով նրանց ասածները՝ ավելացնում է: «Այդ մարդը, ոչ թե լոկ խոսքերով քամիներ է փչում... այլ նա աշխատում է յուր չար մտքերը կատարելագործել և գործով»: Նա ասում է.

> «Իհարկե և կարեհավանցիները նրա հետ կմիաբանվեին,— ասում է ռեսը,— որովհետև այդ մարդը միշտ և անդադար քարոզում է ազատություն... ազատություն... ազատություն...: (Ընդգծումը մերն է — Մ. Ն.): Թե հայոց ազգը յուր հատուկ իշխանությունը և յուր հայրենի երկիրը պիտի ունենա, թե պետք չէ ծառայել ուրիշ ազգերին, և թե ամեն մի հայ պիտի սիրե յուր կրոնը, լեզուն, գրականությունը և յուր հայրենի հողն ու ջուրը: Նա խաբում է բոլորին, ասելով, թե հայերն էլ մի ժամանակ ունեին տերություն, իշխանություն և զորություն աշխարհի մեջ, և թե այդ հողը, որի վրա տիրում է — նրա խոսքով — բռնակալի գավառը, մեր հոր տունն է, մեր պապերի բնակարանն է»:

դին զգուշացնում է, որ նրան «որոնում են», դրա համար էլ նա պետք է մնա Կարոյի ու Ասլանի մոտ «մինչև անցնի վտանգը»։

Որսորդ Ավոն Մուրադին հայտնում է, որ նրա վարպետի արհեստանոցը բռնագրավել ու վաճառել են, և գանձը պետք է կորի վարպետի «աջ ձեռքի բաղուկը»։ Ավելացնենք նաև այն, որ մինչև վարպետ Գրիգորի բանտարկվելը, Ավոն «շատ անգամ» է եղել նրա արհեստանոցում, «զանազան գործիքներ», այսինքն՝ զենքեր է շինել տվել։ Որսորդ Ավոյի և Կարոյի՝ Մուրադի հետ ունեցած վերոհիշյալ խոսակցություններից ու նախազգուշացումից հետո է, որ քավոր Պետրոսը Մուրադին հայտնում է, թե վարպետն ազատված է։ Մի անգամ ևս հաստատվում է, որ Գրիգորին ազատել են որսորդ Ավոն, Կարոն, Ասլանը և Պետրոսը։ Վարպետ Գրիգորի, քավոր Պետրոսի, որսորդ Ավոյի, Մուրադի և բժշկապետի սերտ կապերը հաստատում են, որ վարպետը և Համրը նույն մարդն են, և Գրիգորը վարպետ է անվանված սովորեցնող և ուսուցիչ լինելու իմաստով։ Վարպետ Գրիգորի բանտարկության և Մուրադի հալածական ու աստանդական վիճակի մեջ ընկնելու հետևանքով խանգարվում է նրա սովորելու գործը, մինչև կրկին նա հանդիպում է իր վարպետին՝ նոր դաստիարակին, Սիբիրում, աքսորավայրում։ Բայց այնտեղ արդեն վարպետ Գրիգորը՝ Համրը, խիստ ծպտյալ է, այդ պատճառով Մուրադը չի ճանաչում, բայց սաստիկ հմայվում է նրանով և աշխատում որքան հնարավոր է արագ և շատ բան սովորել նրանից։

Ջնայած Մուրադի թախանձանքներին, նրան չի հաջողվում իմանալ իր «նոր դաստիարակի»՝ Համրի, անունն ու որտեղացի լինելը։ Որ իրոք Համրը վարպետ Գրիգորն է, ապացուցվում է նաև այն բանով, որ նա և բժշկապետը մտերիմներ են և երկուսն էլ սիրալիր ու հոգատար են Մուրադի նկատմամբ։ Կարևոր փաստերից մեկն էլ այն է, որ Ջալլադը և Համրը Սիբիրից ազատվում են միասին, բայց Պարսկաստանում, մինարեթում, բոլորը ներկա են լինում, բացի Համրից. դրա ապացույցն է և այն, որ վարպետ Գրիգորը բանտից անհայտանալուց հետո ոչ մի տեղ չի երևում, մնում է խորհրդավոր անհայտության մեջ, մինչև Սիբիրում Համր անվամբ հանդես գալը։

Համր անվան մեջ արտահայտված է Նալբանդյանի դատապարտյալ ու աքսորյալ լինելը, որը և կաշկանդել է նրան, կապ դրել նրա լեզվին ու գրչին։ Վիպասանը գրաքննական արգելքներից խուսափելու նպատակով ստիպված է եղել գործադրել եզոպոսյան լեզու, յուրատեսակ պրիոմներ ու ոճ։ Վարպետ հնարանքներով խուսափելով գրաքննական արգելքներից, հաղթահարելով բազում խոչընդոտներ, Րաֆֆին կարողացել է կերտել Նալբանդյանի կերպարը, նրան տալով Համր անունը։ Արդ ապացուցենք մեր ասածը փաստերով։ Խաչագողի հիշատակարանը վեպում Համրի նկատմամբ իր մտքերը Րաֆֆին արտահայտել է Մուրադի, իսկ Կայծերում՝ Ասլանի միջոցով։

Խաչագողի հիշատակարանում Մուրադին Համրի հետ ծանոթացնում է ավազակապետը՝ Ջալլադը, այնուհետև Մուրադը հմայվում է Համրով, աշակերտում նրան և կրթվում ու դաստիարակվում նրա քարոզած գաղափարներով։ Համրի խիստ բարերար դաստիարակության շնորհիվ Մուրադը երես է դարձնում իր նախկին դաստիարակից՝ քավոր Պետրոսից, որը նրան կանգնեցրել էր չարագործությունների ճանապարհի վրա և մտնում նոր հունի մեջ։ Համրի հետ ունեցած իր առաջին ծանոթության մասին նա պատմում է.



> «Ավազակապետը ծանոթացրեց ինձ մի այլ երիտասարդի հետ, որին կոչում էին Համր։ Նրա իսկական անունը ոչ ոք չգիտեր։ Չգիտեին նաև, թե ինչ ազգից էր նա։ Նա միշտ լուռ էր և մտախոհ. մի անգամ գոնե չէին տեսել նրան խոսելիս, և այդ էր պատճառը, որ ընկերները նրան Համր էին կոչում։ Այդ օտարոտի խուլումունջը վաղուց գրավել էր իմ ուշադրությունը։ Նրանում կար մի խորհրդավոր բան, որ յուր լռության մեջ ևս աչքի էր զարկում։ Բավական բարձրահասակ էր նա, նիհար և ցամաք կազմվածքով. դեղնած դեմքը գունաթափվելով, ստացել էր թառամած տերևի գույն, իսկ արագաշարժ աչքերը վառվում էին տենդային բոցով։ Չնայելով յուր տկար հիվանդոտ կազմվածքին աշխատում էր նա չափազանց եռանդով և այդ առիթ էր տվել վերակացուներին բավական մեղմ վարվել նրա հետ, թեև նրա **հսկողության վրա դարձնում էին առանձին ուշադրություն»** (ընդգծումը մերն է—Մ. Ն.)։

Այնուհետև Մուրադը անդրադառնում է իր և Համրի առաջին խոսակցությանը։ Ուշագրավն այն է, որ դրա նյութը լինում է հայ մարդու ճակատագրի հարցը, նրա պանդխտության և գաղթականության խնդիրը։ Ի պատասխան Մուրադի այն զարմանքի, որ նա հեռավոր Սիբիրում՝ աքսորում, լսում է հայերեն բառեր, Համրը հառաչանքով ասում է. «Ինչու եք զարմանում, աշխարհի որ անկյունում չկա հայ։ Արմատից խլված և ցամաքած բույսը տանում է քամին դեպի ամեն կողմ...»։

Մուրադի հետ նա խոսում է հատկապես «կրթական, տնտեսական և հասարակական պայմանների մասին» (ընդգծումը մերն է—Մ. Ն.) և նրան բացատրում, որ ինչպես հասարակությունը, այնպես էլ մարդը հասարակական պայմանների ծնունդ է։ Համրը Մուրադին բացատրում է, որ նրա հանցագործ և դատապարտյալ դառնալու պատճառները թաքնված են Պարսկաստանի հասարակական կառուցվածքի մեջ։

Համրի քարոզած մտքերը **միանգամայն ներհակ էին իշխող գաղափարախոսությանը**։ Համրը հանգամանորեն Մուրադին բացատրում է աշխատանքի նշանակությունը և այդ հարցի վերաբերյալ իր դատողություններն ավարտում «մեկը ամենքի համար, ամենքը մեկի համար» ասացվածքով։

Խաչագողի հիշատակարանը վեպում ի թիվս բազում այլ փաստերի, շեշտված է նաև այն հանգամանքը, որ «կնոջ սերը որպես երևում էր շատ զգալի չէր Համրին, նա յուր կյանքում կամ երբեք չէր սիրել, կամ թե սիրել էր, կրակը վաղուց արդեն հանգել էր նրա սրտում»։

Նալբանդյանի կենսագրությանն ուղղակի առնչվող այս փաստը նշված է միանգամայն ստույգ։

Համրը վայելում է աքսորյալների հարգանքն ու սերը իր քարոզած բարձր գաղափարների և «հնարագիտության» համար։ Համրի «հնարագիտության» մասին Մուրադը պատմում է, որ այն քարանձավի մեջ, ուր նրանց խումբն աշխատում էր, հանկարծ ժայռի մի բավական մեծ կտոր պոկվելով անձավի պատից, ցած գլորվեց և բանվորներից մեկին տակովն արեց։ Երկու հոգով ոչ մի կերպ չկարողացան ետ մղել ժայռը։ Վրա հասավ Համրը։ Նա վերցրեց երկաթե մեծ ձողը. նրա ծայրը դրեց քարի տակ, և այնպիսի մի ուժով շարժեց, որ քարը իսկույն առաջ մղեց և թշվառ դատապարտյալին ազատեց։ «Այդ գործողությունը, որ ավելի հնարագիտության արդյունք էր, քան թե մարմնական ուժի, զարմացրեց մեզ»։

Րաֆֆին այստեղ հանդես է եկել որպես բռնակալության (ժայռի) անհաշտ թշնամի և որպես նրա տապալման արմատական միջոց՝ առաջադրել «երկաթե մեծ ձողը»՝ հեղափոխությունը։ Համրի կյանքի նկարագրությունը շարունակվում է Կայծեր վեպում, ուր և ամբողջանում է նրա կերպարը։

Այստեղ Համբը հանդես է բերված Առաքելոց վանքում, կրոնավորի հագուստով, ծանր հիվանդ։

Նալբանդյանին տանելով վանքը, Րաֆֆին ցանկացել է ցույց տալ, որ Նալբանդյանն էլ հանճարեղ է ու պաշտելի, ինչպես Դավիթ Անհաղթը, Մովսես Խորենացին, Ղազար Փարպեցին, մեծ է նրա երախտիքը նրանց ծառայությունների վերհանման ու գնահատման գործում։ Համբին նա հանդես է բերել որպես «ճշմարիտ գիտնական» և նշել, որ նրանից սովորելով Ցահրադը կդառնա գիտուն հայրենասեր։ Նալբանդյանը նույնպես զրպարտվեց ու հալածվեց ժամանակի տգետ կղերականության ու ազգային մյուս ցեցերի կողմից, ինչպես Մովսես Խորենացին և Ղազար Փարպեցին։ Մահվանից հետո Նալբանդյանի տեղը անմահների պանթեոնն է։ Խիստ ուշագրավ են Համբի արտաքինի, տարիքի, հալածանքների և հիվանդության մասին ստորև բերվող խոսքերը։

> «Այդ կրոնավորի հագուստով երիտասարդը երեսուն և վեց տարեկան հազիվ կլիներ, թեև նրա մորուքը և գլխի խիտ մազերը ձյունի պես ճերմակել էին։ Այդ ճերմակության միջից դուրս էր նայում մի գունաթափ, հիվանդոտ դեմք, խորն ընկած աչքերով, որոնք վառվում էին անբնական փայլով։ Ի՞նչն էր այդպես վաղ ծերացրել նրան։ Ի՞նչն էր այնպես մաշել ու տրորել նրան։ Ոտքերի սրունքները չէին խոնարհվում նրան և, ջլատված մարդու ոտքերի նման դողդողում էին։ Երևում էր, որ երկար տարիներ այդ սրունքները կրել էին իրանց վրա մի ծանրություն,— երկաթի ծանրություն... Նա խոսում էր, և երկարատև հազը իսկույն ընդհատում էր նրան,— մի խուլ և խռպոտ հազ, որ լսվում էր կրծքի խորքից։ Ինձ այնպես էր թվում, որ կոտրած կարասի միջից էր լսվում այդ ձայնը։ ...Նա իր կյանքում շատ է տանջվել, շատ նեղություններ է կրել։ Նրա կյանքն անցել է մի շարք հալածանքների միջից։ Այդ բոլորը մի կողմից, ստացած հիվանդությունը մյուս կողմից, նրան ձգեցին մի տեսակ սրտատոչոր մելամաղձության մեջ»։

Բազմիցս նշվում է, որ Համբը բարակացավով հիվանդ էր և այդ պատճառով նրա սպիտակ թաշկինակի վրա միշտ «կարմիր բծեր» էին երևում, ուներ մշտական չընդհատվող հազ։

Րաֆֆին այլաբանությունների և սիմվոլիկ պատկերների միջոցով կարևոր մտքեր ու հարցեր արտահայտելու և շոշափելու վարպետ է։ Դրա վառ վկայություններից է նաև Համբին այն ժամանակվա հեղափոխական գործիչներին հատուկ եզոպոսյան լեզվով խոսեցնելը (երբ Ռաշիդը և Ցահրադը սուրճը թափում են)։

Ուշադրության է առնված նաև Համբի բնագետ լինելու հանգամանքը։ Վեպում հատկապես ընդգծված է Համբի տաղանդավոր գրող և «հարստահարված մարդու» պաշտպան լինելու հանգամանքը։ Չափազանցություն չի լինի ասել, որ Երկու տողի մեջ արտահայտված Նալբանդյանի հավատամքի գաղափարական բովանդակությունը գրեթե անփոփոխ դրսևորված է Կայծերում։

> «Համբը թողեց գիտությունը և սկսեց բանաստեղծությամբ պարապել։ Նա բնական տաղանդ ուներ և թեթև, սահուն լեզու։ Գրում էր ոտանավորներ, գրում էր կանայան պատկերներ, գրում էր և վեպեր։ Նրա աշխատություններից մի քանիսը տպվեցան, և կարդացվում էին մեծ ախորժանոք։ Բայց շատերը անտիպ մնացին և գրավվեցան նրա կալանավորվելու միջոցին»։

Բանտում եբրաերեն սովորելու և հայ եկեղեցու պատմություն գրելու փաստերը ևս վկայում են, որ Համբը Նալբանդյանն է։ «Բանտի մեջ սկսեց եբրաերեն սովորել, հին կտակարանի հետ լավ ծանոթանալու համար»։ Նալբանդյանի եբրաերեն սովորելու մասին նրա կենսագիր Գրիգոր Տեր-Միքայելյանը գրել է.



> «Այդ միջոցին *(բանտում գտնվելու ժամանակ—Մ. Ն.)* նա ուսումնասիրեց նաև եբրայեցոց ու հունաց լեզուները և համեմատեց մեր աստվածաշունչը եբրայեցոց ու հունաց աստվածաշնչի հետ։ Այս աշխատության արդյունքը, որ կտոր-կտոր թղթի վրա է գրած է. մի ամբողջ շարադրություն չէ, կաշխատեմ, եթե հանգամանքները ներեն, տպել նորա մյուս գրվածների հետ միասին»։

Բերված փաստերը ցույց են տալիս, որ Րաֆֆին Համբի կերպարի մեջ լուսաբանել է հայ ազատագրական պայքարի պարագլուխ, հեղափոխական դեմոկրատ Միքայել Նալբանդյանի կյանքի ու գործունեության էական կողմերն ու հատկանշական գծերը։ Այդ փաստերը վկայում են, որ Նալբանդյանի նկատմամբ Րաֆֆու տածած անկաշառ սերը սոսկ հարգանքի տուրք չի եղել «ազգային թանկագին զոհի» հանդեպ և ոչ էլ անմիջական ոգևորության վաղանցուկ արտահայտություն, այլ տևական ու հետևողական գաղափարական համախոհության և գործակցության արտահայտություն։ Շարադրված փաստերը լիովին համապատասխանում են Նալբանդյանի կենսագրությանը, միաժամանակ ստույգ են և անհերքելիորեն վկայում են, որ Համբը Նալբանդյանն է։

Վերոգրյալ փաստերը լիակատար հիմք են տալիս հանգելու այն եզրակացության, որ Րաֆֆին, իր երիտասարդական հասակից մինչև մահկանացուն կնքելը, անհունորեն սիրել է «պաշտելի Տղամարդին»՝ Նալբանդյանին և ամենահետևողականն է եղել խիզախ մարտնչողի անձնվեր համախոհներից ու գաղափարակիցներից։ Ահա թե ինչու Րաֆֆին առավելագույն ջանքեր է թափել և առիթ ու հնարավորություն բաց չի թողել՝ փառաբանելու, պանծացնելու Նալբանդյանի անունն ու վսեմ գործը։ Րաֆֆին Նալբանդյանի ծառայությունները վեր է հանել և նրա կերպարը կերտել, արհամարհելով վտանգներն ու հալածանքները, քաջ գիտակցելով նրա գլխավորած ազատագրական պայքարի նշանակությունը, հաստատ հավատալով, որ Նալբանդյանն անմահ է, նա կապրի «ամեն մի հայի սրտում մինչև դարերի վերջը»։

Մ. ՆԱՀԱՊԵՏՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու



# Մեր օրերի ՀԵՐՈՍՆԵՐԸ

## ՎԱՍՏԱԿԱԾ ՀԵՐՈՍՈՒԹՅՈՒՆ

Սրանից ուղիղ տասը տարի առաջ, մի առիթով ես եղա Նոյեմբերյանի շրջանի ՁԵՅԹՈՒՆ սովխոզում: Գարուն էր, շռայլող ու գունեղ գարուն, որպիսին լինում է միայն այս ընդարձակ հարթավայրում: Ամեն ինչ սուզված էր կապույտ մշուշի մեջ՝ և՛ շրջակա լեռնապարի անտառները, և՛ հեռաստանները, և՛ հողը իր զմրուխտ կանաչով, և՛ նոր կառուցվող տները, որոնց տանիքին դրվող բարդու գերանները գարնան արևից ու խոնավությունից երկու օրում կանաչ շիվեր էին տալիս: Ամեն-ամեն ինչ սուզված էր կապույտ մշուշի՝ ասես երազի մեջ: Ասենք այս ամայի հարթավայրերում սովխոզ, այն էլ ծիրենու սովխոզ հիմնելը, հիրավի, երազ էր:

Հիմա, տասը տարի անց, կրկին գալով այստեղ, ես նույն կապույտն եմ տեսնում, և նույն կապույտ երազանքն է պարուրում ինձ: Հին ծանոթներից շատերին եմ ճանաչում, միայն թե նրանք, այդ երբեմնի կորովաշատ երիտասարդներից ոմանք ճերմակել են արդեն, թեև դեռևս քաջակորով են ու առույգ: Չկա նախկին խենթ ջանելությունը, որը նրանց անվարան սխրանքի էր տանում: Սակայն նրանք իմաստնացել են փորձությունների ու տվնջյան աշխատանքի մեջ, մնալով նույն խիզախները: Հիմա բազմանդամ ընտանիքներ ունեն, իսկ ոմանք՝ նույնիսկ թոռներ: Հիմա նրանց որդիներն ու դուստրերը կրկնում են հայրերի սխրանքը: Նրանք՝ այդ մատաղահաս տղաներն ու աղջիկները, աշխատանքի են նետվում երազանքով, կրքով, բայց, ի տարբերություն հայրերի, զինված են գիտելիքներով և ուսյալ են ավելի: Իսկ փորձը, հարկավ, ավագներից է գալիս:

Եվ այդ բոլոր խանդավառ անել-ջանելների մեջ, որպես կանաչազեղ անտառի իմաստուն կաղնի, կանգնած է նա՝ բազմահմուտ, վիթխարահասակ, ծերացած, բայց Սոյուծ Մհերի թափով այն մարդը, որին բոլորը՝ մեծից փոքրը «պապ» են կոչում:

Բագրատ Վարդանյան: Յոթանասունհրկու տարեկան է արդեն: Վերջին տասը տարում ասես չի էլ ծերացել: Միայն ձեռնափայտն է ավելացել: Տասը տարի անընդմեջ, զոր ու գիշեր քայլել է սարն ի վեր, սարն ի վար, քայլել է փապարների, մացառների, ջրերի ու փոշու միջով, և ոտքերը կարծես հոգնել են: Բայց միայն ոտքերը: Իսկ աչքերը սրատես են, միտքը՝ սրափ, սիրտը՝ երազանքների, հույսերի, կրքերի, կամքի զորեղ մի բունգք, որը առատաշնորհ՝ այդ ամենը բաշխում է մարդկանց:

Եվ ես ցանկանում եմ պատմել իմ բոլոր հին ծանոթների, կապույտ երազների, և, իհարկե, Բագրատ Վարդանյանի մասին, որոնց համատեղ կյանքը ամենաիրական ու գեղեցիկ լեգենդ է ասես:

1

*Հիմա գիշեր է։ Ջեփյուռն է խաղում պատուհանիս տակ։ Վառարանի մեջ ծիրանի թաց փայտն է ճարճատում, յուրահատուկ խեժահոտ սփռելով ավանային հյուրանոցի փոքրիկ, չվերանորոգված, ու այդ պատճառով էլ անհրապույր, սենյակում։ Հոգնած եմ թեև, բայց քնել ու հանգստանալ չեմ ուզում ամենևին։ Դեռ աչ-*



*քերիս առջև է այդ բարձրահասակ, ասես ժայռակոփ մարդու անհանգիստ հայացքը։ Հաստ, երկաթագամ վերջնածայրով ձեռնափայտը տրկտրկացնելով քայլում էր ամբողջ օրը ու ստեպ-ստեպ հայացքը հառում վեր՝ կկոցված աչքերով դիտելով մթամած երկինքը, հետևում ամպերի շարժմանը։ Այդ զարմանալի հայացքը հաճախ ամպերից կարծես գայթելով ցած էր սահում, ու անշարժանում ծաղկած դեղձենիների վրա։*

*— Վախենամ ձնի,—երեք, թե չորս անգամ ասաց նա ու շարունակեց ճանապարհը։*

*Անհանգստությունը, բնականաբար, փոխանցվեց ինձ։ Ու հիմա, գիշերամուտին, երբ պատուհանիս տակ զարմանալի թեթև մի քամի է խաղում, ես բացում եմ օդանցքը և նայում վեր։ Ամպի ոչ մի կտոր։ Երկնքի մուգ-կապույտ ֆոնին՝ աստղերի թարթող հրացոլք։ Ուրեմն՝ ձյուն չի գա։ Հեռու-հեռվից լսվում է Դեբեդի խուլ քրթմնջոցը, որը խառնվում է մոտակա փողոցի երկու ափերին ձգվող բարձր ու շեղ նոճիների սվսվոցին ու ես ակամա վերհիշում եմ իմ առաջին ծանոթությունն այս վայրերի հետ։*

*Այո՛, կապույտ երազ էր թվում այն ժամանակ ամեն ինչ։ Թեև ջրառատ Դեբեդը հոսում էր ավանի հենց կողքով, բայց հողը պապակ էր ու չոր։ Փոքրիկ մի ջրհան կար միայն, բարակ մի առու, իսկ հողի ծարավը՝ անսպառ էր։ Բայց անցել են այդ ժամանակները։ Հիմա որքան աչքդ կտրի՝ ծառ ու ծաղիկ է, անտառ ու պարտեզ։*

*Հին ժամանակներում, արդյոք շեն կամ ավան եղե՞լ է այստեղ։ Ո՛չ, «Աշխարհացույցը», ո՛չ էլ պատմական որևէ այլ գրավոր աղբյուր այդ մասին ոչինչ չեն ասում։ Ու չեն ասում թեև, բայց պետք է համոզված լինել, որ այս հարթավայրերում, այս քարուտներում ու սարալանջերին շատ արյուն է հեղվել։ Եվ հետո, դարերի մթին լռությունը խախտվել է, և երբ բացվել է խավարի քողը, Դեբեդի ափին երևացել է փոքրիկ մի շեն՝ օտարածին Լամբալու անունով։ Ընդամենը մի քանի տուն, մի քանի ծառ և համատարած աղքատություն։*

*Մինչդեռ շենից քիչ ներքև իր ջրերն էր թավալում Դեբեդը։ Գարնանը հորդահոս, պղտոր ու կատաղի, ամռանը՝ զուլալ ու կապուտակ, հոսում էր գետը թախծալուր մի երգ շուրթին, զմրուխտ ափերին սփռելով ջրերը։ Իսկ ափերից մի տասը մետր վեր հողը ծարավից ճաքում ու ապրիլյան սեզը արևի առաջին այրոցքից խանձվում էր ջրակարոտ։ Այսպես էր ապրում Լամբալուն մինչև 1949 թվականը։*

*...1947 թվականին, մի օր, Բագրատ Վարդանյանը Այրում կայարանից հայրենիք էր ճանապարհում Ղրիմի Նիկիտինսկի բուսաբանա-*



*կան այգու մի խումբ մասնագետների։ Վերջին րոպեներին, երբ գնացքը մեկնելու վրա էր, Վարդանյանը երազանքով ասաց.*

*— Ինչպե՜ս կուզենայի այստեղ ձիթենի աճեցնել։ Հողը պարարտ է, ջուրը՝ անսպառ, օդը՝ մեղմ ու բարեբար։*

*Հյուրերը զարմանքով նրան նայեցին։*

*— Զարմանո՞ւմ եք,— հարցրեց Վարդանյանը,— կարծում եք զառանցո՞ւմ եմ։ Մի՞թե այստեղ չի կարելի ձիթենի աճեցնել։ Չէ՛ որ բնական պայմաններն անզուգական են։*

*— Այո՛, բայց ջուր չկա։*

*— Ինչպե՞ս թե,— և Վարդանյանը ձեռքը պարզեց գետի կողմը,— իսկ մեր սքանչելի Դեբեդը՞, իր անսպառ ջրերով, որն իզուր կորչում է...*

*— Բայց ահռելի աշխատանք է պետք այդ ջուրը վեր հանելու համար։*

*— Կհանե՜նք, ա՜յ, կտեսնեք, ամբողջ ջուրը վեր կհանե՜նք...*

*Հյուրերի մեկնելուց մի քանի շաբաթ անց Բագրատ Վարդանյանը Նիկիտինսկի բուսաբանական այգու իր բարեկամ մասնագետներից ստացավ մի զարմանալի ծանրոց՝ ձիթենու հինգ տունկ։ Վարդանյանը դրանք խնամքով տնկեց Այրումի կոնսերվի գործարանի բակում և շուտով բոլորը զարմանքով համոզվեցին, որ Ղրիմի ձիթենին իրեն ամենևին էլ վատ չի զգում երկրորդ հայրենիքում։*

Երկու տարի անց, 1949 թվականին, այս վայրերով անցնում էր Անաստաս Իվանովիչ Միկոյանը։ Նա տեսավ ձիթենիների կանաչ գանգուրները և խորհուրդ տվեց սարահարթերում ձիթենու սովխոզ հիմնել։ Շուտով ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի և Հայաստանի կառավարության որոշմամբ Դեբեդի աջ ափին սկսեցին ջրհան կայաններ կառուցել, իսկ Ձեյթուն նորաստեղծ սովխոզի դիրեկտոր նշանակվեց այգեգործության վետերանը՝ Բագրատ Վարդանյանը։

## 2

Յուրաքանչյուր երկիր, շրջան, քաղաք ու գյուղ իր ավանդությունն ունի։ Այն ստեղծվում է դարերի ընթացքում, հղկվում, բյուրեղանում և փոխանցվում սերունդներին։ Դեբեդաշենն իր ավանդությունը դեռ չունի։ Դեռ լեգենդներ չեն պատմվում ավանի հիմնադիրների, հերոսների ու հերոսուհիների, նրանց տոհմագրության ու փառքի մասին։ Բայց կպատմեն ու կգրվեն, հաջորդ սերունդներին կհասնի լեգենդը աշխատանքով ստեղծված փառքի մասին։

...Այսպես պատահեց. վաղ առավոտյան գերմանական մեսսերները հարձակվեցին սովխոզի բանավանի վրա, ու կես ժամից հետո այնտեղ, ուր կյանք էր ծաղկում, մոխիր մնաց։ Այրվեց տունը, սպանվեցին կինն ու երեխան, պարտեզում ծաղկած վարդենին սևակնեց։ Հետո հինգ տարի կռվեց ռազմաճակատում, վերադարձավ նախկին սովխոզը, ու զգաց, որ ծերանում է, ճերմակում։ Իսկ երբ առաջարկեցին Ղրիմից տեղափոխվել Հայաստան, ուրախացավ։ Գուցե կմոռանա դժբախտությունը, նորից կսկսի ապրել, կայծակնահար եղած կաղնու պես շյուղեր կտա գարնան զարթոնքի օրերին։ Ու եկավ։ Եվ հիմա նրա աչքերի մեջ մշտապես ինչ-որ վիշտ է դողում։ Եվ ապրում է մեծահասակ ամուրու միայնակ կյանքով։

Նա տանից դուրս է գալիս առավոտ ծեգին, կտրում բանավանի ծուռտիկ փողոցները, լայնահուն առվակն անցնում է ոչ թե կամրջակով, այլ պարզապես ափից մյուսն է ցատկում զարմանալի թեթևությամբ, բարձրանում մոտակա թումբը, մի քիչ իջնում վար ու նստում հաստաբուն, կարճ խուզած ձիթենու տակ։ Ու ծխում է ագահորեն։ Միակ ծխախոտն ամբողջ օրվա ընթացքում։ Ապա կանգնում է, ձեռքով շոյում ծառի բունը, շոշափում վաղուց փորագրված տառերը։ Առանց նայելու էլ գիտե, թե ինչ է գրված։ Այդ իր անունն է և մեկ էլ այն կապույտ, վճիտ աչքերով աղջկա անունը, որին տեսավ այս ծառի տակ։ Հետո այդ աղջիկն իր կինը դարձավ ու այժմ չկա...

Տարիներ առաջ էր այդ, մայիսին, այնտեղ՝ Ղրիմի ձիթենու սովխոզներից մեկում, որտեղ ինքն էլ, կինն էլ գյուղատնտես էին։ Բախտի ինչպիսի՜ խաղ։ Հայաստանում ձիթենու սովխոզ հիմնադրելու համար հենց իր աճեցրած ծառերը տեղափոխեցին այստեղ, դրանց մեջ է և այն ծառը, որի ծաղկաթերթերի տակ ծնվել ու մեռել էր իր սերը...

## 3

Սովխոզում կյանքը կարծես միանգամից փոխվեց։ Հսկայական աշխատանքներ ծավալվեցին։ Սկսվեց երկու խոշոր ջերմոցների կառուցումն ու մեքենաները վարեցին այն խոպանը, որը նախատեսված էր ձիթենու ապագա այգիների համար։

— Առայժմ բանջարեղեն ու կերաբույսեր կցանենք,—առաջարկել էր գլխավոր գյուղատնտեսը,— հետո կտնկենք ձիթենու կտրոնները։

Առաջարկն ընդունվեց միաձայն ու սկսվեց աշխատանքը։ Ամբողջովին փոխվեց նաև նրա կյանքը։ Նոր աշխատանքը նրան ստիպեց մտածել գործի մասին, խոսել, լսել ուրիշներին, ապրել ո՛չ միայն անձնական, այլ ամբողջ սովխոզի կյանքով։ Ու սիրտը ավելի թեթև էր զարկում, ավելի առույգ։ Աշխատանքի ժամին, թե գիշերների խոր լռության մեջ, այդ սիրտը խոսում էր նրա հետ, մերթ ցավագնորեն կծկվում ու մերթ զարկում ուժգին,—առույգ։ Վիշտը դանդաղ էր դուրս սողում մենակյացի սրտից, ու նա ապրում էր իր համար էլ չհասկացված անհանգիստ, փոթորկուն կյանքով։

Նա ուշ էր տուն վերադառնում։ Բոլորը հեռանում էին, դաշտերում լռում էր առօրյա աղմուկը, ագռավի թևերի պես հարթավայրի վրա փռվում էին սարերի երկարավուն, գորշ ստվերները, ցերեկվա լույսերը մարում էին, իսկ նա դեռ շրջում էր, դիտում շրջապատն ու դանդաղ քայլերով վերադառնում։ Բայց միշտ էլ այդ պահերին հորիզոնը դեռ վառվում էր արևի հրով, բոցկլտում էին կլորավուն, գանգուր ամպերի եզրերը։ Արևը դանդաղ էր մայր մտնում։

Շուրջը լռություն էր։ մերթ ընդ մերթ միայն ծղրիդն էր կանչում, ոտքի տակ խշշում էր սիզախոտի անցյալ տարվա ցողունը։ Նա քայլում էր դանդաղ, անցնում ձիթենու տնկարանով, դիտմամբ իջնում ներքև, մի պահ կանգնում ծառի մոտ ու շարունակում ճանապարհը։

Այսպես է եղել։ Հեռու և մոտ վայրերից մասնագետներ են եկել, եկել են բանվորներ ու բանվորուհիներ ու ստեղծվել է բանավանը՝ Դեբեդաշեն անունով։ Եկել է գյուղատնտես մի՝ Լեոն Հայրապետյան անուն-ազգանունով, և ապա գյուղատնտես մի այլ՝ Սուրեն Հովհաննիսյան, նրանց փոխարինել են Միքայել Բաբաջանյանը և Վաչագան Միքայելյանը։ Խոպանում առաջին ծառը տնկել է երիտասարդ գյուղատնտես Օֆելյա Հովսեփյանը, նրան են հետևել սովխոզի հիմնադիր բանվորներ՝ Հմայակ Կարապետյանը, Սեդրակ Մինասյանը, Արարատ, Վռամ, Ռոզա և Ջալադին Հարությունյանները, Հովհաննես և Լեոն Ֆրանկյանները, նորաստեղծ ջերմոցներում, որտեղ կտրոններով ձիթենի էր աճեցվելու, աշխատանքի անցան Նինա Մուսինյանը, Ոսկի Բաբաջանյանը, հենց նույն 49 թվականին սկսվել և ավարտվել է առաջին ջրհան կայանի կառուցումը, չորս տարի անց շարք է մտել երկրորդ ջրհան կայանը։ 50 թվականին սովխոզում տնկվել է 180 հեկտար այգի, իսկ 61-ին այդ թիվը հասել է 850-ի։ Ձիթենիների շուքի տակ ջահել սրտերը սեր են մրմնջացել ու սերունդներ են ծնվել։ Ղրիմից բերված ձիթենիները փթթում են այսօր էլ և կտրոններով ծառեր են աճեցվում։ Ձմռանը մարդիկ անհանգստանում են. հանկարծ խիստ ցրտեր չլինե՞ն։ Բայց գարուն է գալիս ծաղկապաճույճ ու անցնում է անհանգստությունը։

Ի դեպ, սովխոզը հիմնադրելու հենց առաջին օրերից պարզվեց, որ բոլոր հողամասերում հնարավոր չէ ձիթենի տնկել։ Ինչո՞ւ։

Այստեղ արդեն նրանց օգնության ձեռք մեկնեցին օդերևութաբանները։ Ձիթենիները տնկելուց առաջ, գետի աջ ափին, ավանից քիչ հեռու՝ սարն ի վեր, երեք շարքով հարյուրավոր ջերմաչափեր դրվեցին։ Ամեն օր, օրվա ու գիշերվա տարբեր ժամերին, մարդիկ գրանցում էին ջերմաստիճանը։ Արդյունքներն ամփոփելուց հետո վերջապես ընտրվեց այն 40 հեկտարանոց հողամասը, որտեղ այսօր արդեն ծաղկում է ձիթենու այգին։

Եվ ո՛չ միայն ձիթենու։ Սովխոզի հեռանկարները որոշելիս, նախատեսված էր տնկել 900 հեկտար ձիթենու այգի, հինական հեկտար նուռ և սերկևիլ, 75 հեկտար թուզ, 25 հեկտար մանրակաղին։ Սակայն ամեն ինչ գլխիվայր շուռ եկավ, երբ պարզվեց, որ այս հողերը տանձի, խնձորի, սալորի զանազան տեսակների, ծիրանի և տասնյակ այլ մրգատեսակների առատ, ոչ մի տեղ չտեսնված բերք կարող են տալ, իսկ ձիթենու 40 հեկտարանոց այգին սովխոզին և պետությանը առայժմ կոպեկի եկամուտ չի տալիս, որովհետև ջուրը չի բավարարում։ Ջրային տնտեսության հարցերով զբաղվող տեղական կազմակերպությունները և գյուղատնտեսության մինիստրությունը վնասակար անտարբերություն են ցուցաբերում այս արժեքավոր կուլտուրայի աճեցման, տարածման և նրա արդյունաբերական նշանակությունը բարձրացնելու նկատմամբ։

Ոմանք կարող են այստեղ առարկել. հապա ինչպե՞ս է, որ մյուս 800 հեկտարը ջրվում է և հրաշալի բերք է տալիս։ Պատասխանում եմ (ավելի ճիշտ շարադրում եմ Բագրատ Վարդանյանի և մյուս մասնագետների կարծիքը), որովհետև, եթե ջրվեն ձիթենու այգիները, ապա ջուրը չի բավարարի պտղատու մյուս այգիներին։ Եվ որովհետև մյուս ծառատեսակներն ավելի նվազ դիմացկուն են երաշտի նկատմամբ, ապա, մեկ տարվա ընթացքում ծիրանի, դեղձի և մյուս պտղատու այգիները շարքից դուրս կգան։ Իսկ ձիթենին, թեև արդեն երրորդ տարին է, չի ջրվել, դեռ կանգուն է, փթթում է ու ծաղկում, միայն բերք չի տալիս։ Որ ջուրը քիչ է առայժմ և չի բավարարում սովխոզի պահանջները (դեռ չխոսենք հարևան սովխոզների մասին), ցայտուն երևում է այսօր իսկ։ Ընտիր դեղձի 30 հազար տունկ կա այժմ Ձեյթունի տնկարաններում։ Դրանք հանվել և տեղավորվել են հողե խրամատների մեջ և արդեն ծաղկել են։ Ես անցա այդ խրամատների երկայնքով ու տեսա փարթամ, առողջ ծաղիկները։ Տեսա նաև, թե ինչպես լցվեցին Բագրատ Վարդանյանի աչքերը։

— Ի՞նչ անեմ,—ասաց նա,—այստեղից հանել և տնկել չեմ կարող, թեև հողամասն էլ է պատրաստ։ Ջուր չկա, կչորանան, կկորչեն։ Ծառը պետք է ժամանակին ջրել, սնել, թե չէ վաղ կծերանա։

Ինչպես հայտնի է, արդեն պատրաստ է Այրումի ջրհան կայանի երկրորդ հերթը։ Այն կառուցելու համար պետությունը հսկայական միջոցներ է ներդրել, սակայն շրջանային ջրային տնտեսությունը դեռևս չի ավարտել ջրամատակարարման ներքին ցանցի կառուցումը։ Հիրավի, զայրացնող վերաբերմունք։

## 3

Վաղ արշալույսին գարնանային թեթև քամուց սվսվացին պատի տակ աճած նոճիները ու տարօրինակ գեղեցիկ գույներով լցրին պատուհանն ու սենյակը։ Հետո դայլայլեցին սոխակները։

Թռչունները ծլվլացին ճյուղի վրա, խաղացին և ապա թռան, անհայտացան լուսաբացի վճիտ հեռուներում։ Պատշգամբի առջևով անցան այգի գնացող աղջիկներն ու կարկաչեց նրանցից մեկի վճիտ ծիծաղը։ Տեսնելով բարձրահասակ, հնամյա կեպին մինչև ունքերն իջեցրած մարդուն, նրանք մի պահ շփոթվեցին։

— Բարի լույս, պա՛պ...

Եվ թռչունների երամի պես անհայտացան ծառուղու ոլորանում։

Վարդանյանը բեղի տակ թեթև ժպտաց ու դարձավ ինձ.

— Գնա՛նք, տղաս, թե չէ մարդիկ կասեն՝ պապը քնով է անցել, ծերացել է արդեն։

Ճանապարհնե՜ր, ճանապարհնե՜ր, դաշտամիջյան ճանապարհնե՜ր։ Ոչ թե ճանապարհներ, այլ

պարտեզներով, միջնակարգ դպրոցով, ակումբով, ամառային լողավազանով, զբոսայգով, որը ծառատեսակների ու թփերի մի յուրօրինակ թանգարան է. Վարդանյանը երազում է կառուցել ձմեռային սպորտ դահլիճ, 900 տեղանոց նոր ակումբ... Կգա գրողը և կգրի, որ սովխոզը Դեբեդից կրկնակի անգամ ավելի ջուր կստանա առաջիկայում և հինգ տարի անց այգիների տարածությունը կհասնի 1138 հեկտարի։

1—5 ապրիլի, 1966 թ.

Դեբեդաշեն, Ջեյթուն սովխոզ։



Այս ակնարկն արդեն պատրաստ էր, երբ հրապարակվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Բագրատ Արտեմի Վարդանյանին սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում շնորհելու մասին։

Որքան ուրախ եմ, որ մինչև այժմ չի տպագրվել։ Հիմա ես կարող եմ ընթերցողին պատմել նաև ազնիվ դափնու պատմությունը, որն անուշադրության պատճառով բաց էի թողել։ Աններելի սխալ։ Չէ՛ որ դափնին մարդկության մշակած ամենահին կուլտուրաներից մեկն է, և օգտագործվել է ոչ միայն որպես հիանալի համեմունք, այլ փառքի ու հերոսության պսակ։

Լարուրուս Նոբիլիս։ Հին հույները ազնիվ դափնու ընձյուղներից հյուսած պսակներով էին զարդարում իրենց մեծերին՝ ռազմի հերոսներին, ճարտասաններին, փիլիսոփաներին, գրողներին, օլիմպիական խաղերի հաղթողներին։

Այն օրերին, երբ Բագրատ Վարդանյանը դափնի էր ներմուծում սովխոզ, չէր էլ խորհում, որ այն աշխատանքային հերոսների ճակատը պսակելու համար պետք կգա մի օր։ Նա նկատի ուներ դափնու տնտեսական նշանակությունը և մեկ էլ՝ չէր կարող սանձել բնածին հետախույզ-մասնագետի հետաքրքրասիրությունը. սովխոզում ինչպե՞ս կաճի դափնին։ Այն այստեղ և ամենուր՝ սովխոզի որ անկյունն էլ նայեք, այսօր աճում է ու բուրում։

Եվ արդ, երբ բոլորել է նրա յոթանասուներկու տարին, վաթսունամյա աշխատանքային ուղին պսակվել է փառքով, թո՛ղ որ իր աճեցրած ազնիվ դափնին էլ դափնեպսակ դառնա՝ զարդարի ծերունազարդ աշխատավորի ազնիվ վաստակը։

Ռ. ԱՐԱԼՅԱՆ




ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան,
ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06028 Պատվեր 1686 Տիրաժ 10 860 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 7/VII 1966 թ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի
պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան,
Երևան, Թումանյան փ. № 51։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԲՐԵԺՆԵՎ Լ. Ի.—ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXIII համագումարին։ *1966 թվականի մարտի 29-ին։ Եզրափակման խոսք 1966 թվականի ապրիլի 4-ին։ Ե., «Հայաստան» հրատ. 1966, 152 էջ։*

ՔՈՉԻՆՅԱՆ Ա. Ե.—Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հաշվետու զեկուցումը Հայաստանի կոմկուսակցության XXIV համագումարին. *(1966 թվականի մարտի 3-ին)։ Ե., «Հայաստան» հրատ. 1966, 91 էջ։*

ՄՈՒՐԱԴՅԱՆ Բ. Հ.—ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի՝ ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվների նախագծի մասին։ *Զեկուցում ՀԿԿ XXIV համագումարում 1966 թվականի մարտի 4-ին։ Ե., «Հայաստան» հրատ. 1966, 49 էջ։*

Կ. ՄԱՐՔՍ, Ֆ. ԷՆԳԵԼՍ, Վ. Ի. ԼԵՆԻՆ—Պատմական մատերիալիզմի մասին։ *Մ., Քաղհրատ. 1966, 477 էջ։*

*Այս քրեստոմատիայում զետեղված են պատմական մատերիալիզմի մասին մարքսիզմ-լենինիզմի կլասիկների ասույթները, որոնք քաղվածաբար բերված են նրանց երկերից։*

Կոմունիզմի կառուցումը և մարդու հոգևոր աշխարհը։ *Մ., «Наука» հրատ., 1966, 639 էջ։*

*ԽՍՀՄ ԳԱ փիլիսոփայության ինստիտուտի կոլեկտիվ ուսումնասիրությունն է «Սոցիալիզմը և կոմունիզմը» սերիական գիրքը։ Գրքում հետազոտված է կոմունիստական դաստիարակության էությունը։ Հեղինակային կոլեկտիվի ուսումնասիրության նյութ են դարձել սոցիալիստական գիտակցության զարգացման օրինաչափությունները և նրա վերաճումը կոմունիստական գիտակցության, կոմունիստական հասարակության մարդու հոգևոր կերպարի ձևավորման ու կոմունիզմի մշակույթների զարգացման օրինաչափությունները և այլն։*

ԱՎԵՏԻՍՅԱՆ Հ. Ա.— ՌԱՖՖԻ ԽԻՏԱՐՈՎ։ *Ե., «Հայաստան» հրատ. 1966, 183 էջ։*

*Հեղինակն արխիվային նյութերի, գրականության, ընկերների հուշերի և Խիտարովի աշխատությունների հիման վրա շարադրել է բոցավառ բոլշևիկ Ռաֆֆի Մովսեսի Խիտարովի—Խիտարյանի (1901—1939 թվականների) կյանքի և ակտիվ գործունեության մասին։ Հեղինակը ցույց է տալիս Ռաֆֆու հեղափոխական գործունեությունը Կովկասում (1916—1921 թվականներին), կոմերիտական գաղտնի աշխատանքը Գերմանիայում (1921—1925), Կոմերիտ-ինտերնացիոնալում՝ գործկոմում (1921—1931 թթ.) և Չինաստանում (1927 թ.)։ 26 տարեկան հասակում Ռաֆֆին եղել է Կոմերիտինտ. Գործկոմի գլխավոր քարտուղար։ Այնուհետև պարտիական աշխատանք է տարել սոցիալիզմի կառուցման շրջանում՝ Մագնիտագորսկի—Կուզնեցկի շինարարությունում։*

ՊԱՐՍԱՄՅԱՆ Վ. Ա., ՊՈՂՈՍՅԱՆ Ս. Պ. ԵՎ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Շ. Ռ.—Հայ ժողովրդի պատմություն։ *Դասագիրք 9—10-րդ դասարանների համար։ Ե., «Լույս» հրատ. 1966, 345 էջ։*

*Դասագրքում հակիրճ շարադրված են հայ ժողովրդի բազմադարյան պայքարի և հաղթանակի պատմությունը, սկսած հայ ժողովրդի կազմավորման շրջանից (XII դար մ. թ. ա.) մինչև 1965 թվականը։*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՐՍՏԱՑՎԱԾ ՄԵՂՐ

*Բուլղարիայի սննդի ինստիտուտի գիտնականները մշակել են մեղվակաթի ավելացումով հարստացված մեղրի արտադրության տեխնոլոգիա։ Մեղվակաթը բարձրացնում է մարդու ներվային համակարգի տոնուսը, բացում ախորժակը և նպաստում հանգիստ քնին։*

## ՀԱՑԱՀԱՏԻԿԻ ՆԵՅԼՈՆԵ ՇՏԵՄԱՐԱՆ

*Հնդկաստանում սկսել են կառուցել հացահատիկի նոր տիպի շտեմարաններ, ավելի քան 500 տոննա տարողությամբ։ Հացահատիկի շտեմարանի նեյլոնային պատերը կարեր չունեն։ Այն լցվում է հացահատիկով պնևմատիկ սարքի օգնությամբ և օդի ավելցուկի հանումից հետո հերմետիկ ձևով ծածկվում։ Այդպիսի անթափանցիկ գնդում հացահատիկը պահպանվում է շատ երկար. իսկ ինչ վերաբերում է վնասատուներին, ապա նրանք ոչնչանում են թթվածնի պակասությունից։*

## ԱՎՏՈՀՐԹԻՌ

*Ամերիկացի Վոլտ Արֆոնսը նախագծել է «Վինգֆուտ էքսպրես» մեքենա, որը իրենից ներկայացնում է ավտոհրթիռ։ Մեքենան կշռում է երեք տոննա և շարժման մեջ է դրվում 28800 ձիաուժ մոտորի միջոցով։ Արգելակային սարքը, ինչպես հրթիռային ինքնաթիռներինը, ունի արգելակային պարաշյուտ։ Ավտոհրթիռի անիվները՝ 87 սմ բարձրությամբ, միացված են հատուկ ղողերով։ Մեքենան մեկ ժամում զարգացնում է մինչև 1360 կիլոմետր արագություն։*

## ԳԵՂԵՑԻԿ ՃԵՆԱՊԱԿԻ

*Բոլորովին պարտադիր չէ, որ ոսկրալյուրը օգտագործեն միայն որպես պարարտանյութ։ Այդ սկզբունքով Լենինգրադի ճենապակու գործարանում սկսել են յուրացնել ոսկրային ճենապակու թողարկումը՝ ֆոսֆորային թթու կալցիումի հիման վրա։ Այդպիսի ապակին աչքի է ընկնում զարմանալի սպիտակությամբ և թափանցիկությամբ։*

## ԱԼՅՈՒՄԻՆԵ ԳԱԶԱՄՈՒՂ

*Կանադայում, առաջին անգամ համաշխարհային պրակտիկայում, փորձարկվել են ալյումինե խողովակներ՝ գազամուղի համար։ Ամեն մի խողովակի տրամագիծը 7 դյույմ է, երկարությունը՝ 12 մետր։ Դրանց զոդումը կատարվում է ավտոմատ կերպով՝ արգոն եղանակով։ Ալյումինե խողովակների հիմնական առավելությունը բարձր դիմացկունությունն է կոռոզիայի նկատմամբ, թեթևությունը և երկար տարածությունների վրա տեղափոխվելու հեշտությունը։*

## ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ ՄԻԿՐՈԱՎՏՈԲՈՒՍ

*Հյուսիսային Դոնեցկի ավտոտրեստի մեխանիկական գործարանը սկսել է թողարկել պլաստմասսայից միկրոավտոբուսներ։ Դրանք նախատեսված են բժշկական աշխատողների, արշավային լաբորատորիաների, մեծ նորակառույցներում շարժական դիսպետչերական կետերի, գեոլոգների, գյուղատնտեսության աշխատողների համար։ Մոտորի հզորությունը 75 ձիաուժ է, առավել արագությունը՝ 120 կմ ժամ։*

## ՏՐԱՄՎԱՅ—ՌԵՍՏՈՐԱՆ

*Արևմտյան Գերմանիայի Դույսբուրգ քաղաքում փորձնական կարգով թողարկել են տրամվայ-ռեստորան։ Այստեղ, աշխատանքի շտապելիս, կարելի է նախաճաշել, իսկ տուն վերադառնալիս՝ ընթրել։ Եթե աշխատանքի ժամին գործով ուզում ես որևէ տեղ գնալ, ապա տրամվայում կարելի է կոֆե խմել։*